ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՆԱԳԻՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ



Հ. Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ԳԵՂԱՄԱ ԼԵՌՆԵՐԻ ԺԱՅՌԱՊԱՏԿԵՐՆԵՐԸ

АКАДЕМИЯ НАУК АРМЯНСКОЙ ССР
ИНСТИТУТ АРХЕОЛОГИИ И ЭТНОГРАФИИ

# АРХЕОЛОГИЧЕСКИЕ ПАМЯТНИКИ АРМЕНИИ

## 11

## НАСКАЛЬНЫЕ ИЗОБРАЖЕНИЯ

ВЫПУСК
III

А. А. МАРТИРОСЯН

# НАСКАЛЬНЫЕ ИЗОБРАЖЕНИЯ ГЕГАМСКИХ ГОР

ИЗДАТЕЛЬСТВО АН АРМЯНСКОЙ ССР
ЕРЕВАН 1981

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ
ՀՆԱԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԱԶԳԱԳՐՈՒԹՅԱՆ ԻՆՍՏԻՏՈՒՏ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՀՆԱԳԻՏԱԿԱՆ ՀՈՒՇԱՐՁԱՆՆԵՐԸ

## 11

## ԺԱՅՌԱՊԱՏԿԵՐՆԵՐ

ՊՐԱԿ
III

Հ. Ա. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ

# ԳԵՂԱՄԱ ԼԵՌՆԵՐԻ ԺԱՅՌԱՊԱՏԿԵՐՆԵՐԸ

ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՀ ԳԱ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
ԵՐԵՎԱՆ 1981

902.6(C43) Ինդեքս ԳՄԴ 63.4(2Հ)
Մ394

Տպագրվում է ՀՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի
գիտական խորհրդի որոշմամբ



Պրակի խմբագիր՝
բանասիրական գիտությունների դոկտոր
Ս. Բ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Գիրքը հրատարակության են երաշխավորել գրախոսներ՝ պատմական գիտությունների դոկտոր Ս. Ա. ԵՍԱՅԱՆԸ և պատմական գիտությունների թեկնածու Է. Վ. ԽԱՆԶԱԴՅԱՆԸ:

Ժայռապատկերների ընդօրինակումը՝
Ա. Օ. ԱՍԱՏՐՅԱՆԻ

THE ARCHAEOLOGICAL MONUMENTS AND SPECIMENS OF ARMENIA

11

H. A. MARTIROSSIAN

THE ROCK-CARVINGS OF THE GHEGHAM MOUNTAIRANGE

YEREVAN 1981

Մարտիրոսյան, Հ. Ա.

Մ394 *Գեղամա լեռների ժայռապատկերները (Խմբ. կոլեգիա Բ. Ն. Առաքելյան և ուրիշ.։ Խմբ. Ս. Բ. Հարությունյան։ —Եր.։ ՀՍՍՀ ԳԱ հրատ., 1981.—127 էջ, նկ. 93 (Հայաստանի հնագիտ. հուշարձանները։ Ժայռապատկերներ / ՀՍՍՀ ԳԱ հնագիտ. և ազգագր. ին-տ։ Հ. 11։ Պր. 3)։*

Աշխատությունն ընդգրկում է Գեղամա լեռներում 1969—1971 թթ. հայտնաբերված և ընդօրինակված ժայռապատկերների մի քանի նշանակալից խմբեր, որոնցով ներկայացվում է ուշ նեոլիթ-երկաթեդարյան ժամանակների նախնադարյան արվեստը: Այս և հարակից նյութերի հիման վրա ուսումնասիրվում են ժայռանկարների կերտման տեխնիկան և ոճական առանձնահատկությունները, դասակարգման և թվագրման խնդիրները, ժայռապատկերների ներքին բովանդակությունը և նրանց կարևոր նշանակությունը նախնադարյան տնտեսության ու կենցաղի, կրոնաառասպելաբանական աշխարհայացքի և հավատալիքների լուսաբանման հարցերում:

Մ $\frac{0507000000}{708(02)—81}$ 49—78

902.6(C43)
ԳՄԴ 63.4(2Հ)

## ՀԵՂԻՆԱԿԻ ԿՈՂՄԻՑ

Հայաստանի նախնադարյան ժայռապատկերների նախնական ուսումնասիրությունը ցույց տվեց, որ դրանք տոհմացեղային հասարակության պատմության անաղարտ, անփոխարինելի և առաջնակարգ աղբյուրներ են, որոնք իրենց թվացող պարզունակության մեջ պահպանել են հազարամյակներ առաջ անցած-գնացած սերունդների կենսագործունեության, հասարակական-արտադրական կյանքի, երկրագործ-անասնապահների գաղափարաբանության, հին լեգենդների, առասպելների խորախորհուրդ ու նվիրական գաղտնիքները: Էնեոլիթ-երկաթեդարյան մեր ժայռապատկերներն իրենց ինքնատիպ, երբեմն գեղարվեստական կատարելության հասցված կոմպոզիցիաներում և նրանց ուղեկցող խորհրդանշան-գաղափարագրերի մեջ պահպանել են բավականաչափ ստույգ տեղեկություններ մարդու կողմից բնական երևույթների և օրինաչափությունների ճանաչման ու օգտագործման վերաբերյալ, օրինաչափություններ, որոնք ընկած էին ոչ միայն մարդու կենսաբանական զարգացման ու հարատևման, այլ նաև արտադրող տնտեսության կազմավորման և մարդկային հասարակության վերընթաց զարգացման հիմքում: Չէ՞ որ մարդկային հասարակության զարգացման պատմությունը, առաջին հերթին, բնության օրինաչափությունները ճանաչելու և դրանք օգտագործելու պատմությունն է. ըստ այդմ, որքա՛ն ավելի են ճանաչվում և օգտագործվում այդ օրինաչափությունները, այնքան ավելի զարգացած է հասարակությունը: Հենց այս առումով էլ ժայռապատկերներն անգնահատելի ծառայություն են մատուցում նախնադարյան հասարակության տարբեր փուլերի սոցիալ-տնտեսական զարգացման մակարդակը որոշելու տեսակետից: Էլ չենք խոսում այն մասին, որ ժայռանկարի զարգացումն Հայաստանում նախապատրաստեց ծագումը նախնական գրերի, որոնք իբրև գրության սիստեմ լիովին ձևավորվեցին ուրարտական թագավորության պայմաններում (մ. թ. ա. IX—VIդդ.) և պատմամշակութային որոշակի դեր խաղացին վաղ հայկական ժամանակաշրջանում, ընդհուպ մինչև մաշտոցյան գրերի գյուտը: Ահա այս հանգամանքներով է պայմանավորված ժայռապատկերների նկատմամբ եղած հետաքրքրությունը, նրա՛նց աստիճանաբար ընդլայնվող և խորացող ուսումնասիրությունը ոչ միայն Հայաստանում, այլև աշխարհի բոլոր այն երկրներում, ուր ժայռապատկերներ կան կամ հայտնաբերվում են:

Գեղամա լեռների ժայռապատկերներին նվիրված ներկա պրակը առաջին պրակի[1] շարունակությունն է և ընդգրկում է 1969—1971 թվականներին ՀՍՍՀ ԳԱ հնագիտության և ազգագրության ինստիտուտի արշավախմբի կողմից[2] Փոքր և Մեծ Պայտասար, Ջիարաթ, Շեյխի Չինգիլ և այլ գագաթների

[1] «Գեղամա լեռների ժայռապատկերները», Հայաստանի հնագիտական հուշարձաններ, գիրք 6, պր. 1, Երևան, 1972։

[2] Արշավախմբի աշխատանքներին մասնակցել են Հ. Ա. Մարտիրոսյանը (արշ. պետ), Ռ. Մ. Թորոսյանը, Հ. Ռ. Իսրայելյանը, Ս. Կ. Մեժլումյանը (գիտական աշխատակիցներ, և վաղամեռիկ նկարիչ Ա. Ասատրյանը (Ավետ Ասատուր)։

տորոտներում հայտնաբերված ու ուսումնասիրված բացառիկ հարուստ ու նշանակալից պատկերախմբերի նյութերը, որոնք վերաբերում են մ.թ.ա. V–I հազ. (նկ. 1—2):

Աշխատության IV գլուխը («Ժայռանկարը պատմահնագիտական ուսումնասիրության հավաստի աղբյուր է») շարադրել է կենսաբանական գիտ. թեկնածու Ս. Կ. Մեժլումյանը, իսկ VI գլխի «Արև աստվածություն» և VII գլխի «Երկվորյակներ» կենդանակամարի պատկերը և նշանագիրը բաժինները՝ պատմ. գիտ. թեկնածու Հ. Ռ. Իսրայելյանը[3]:

---

[3] *Գրքի հեղինակ՝ պրոֆ. Հ. Մարտիրոսյանի վերահաս մահվան պատճառով աշխատությունը վերջնական հրատարակության են պատրաստել պատմ. գիտ. թեկնածու Հ. Իսրայելյանը և հեղինակի դուստր, արևելագետ Ա. Մարտիրոսյանը* (խմբ.):

## ԳԼՈՒԽ ԱՌԱՋԻՆ

# ԺԱՅՌԱՆԿԱՐՆԵՐԻ ԿԱՏԱՐՄԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ ԵՎ ՈՃԱՅԻՆ ԱՌԱՆՁՆԱՀԱՏԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

*Ժայռապատկերների արվեստը ուշ նախնադարյան Հայաստանի հոգևոր կյանքի ամենանշանակալից երևույթներից է։ Իբրև նեոլիթյան հեղափոխության գերագույն արգասիքներից մեկը, նա արտահայտում է մարդու վերափոխված վերաբերմունքը բնության նկատմամբ և իրականության բարդ, բազմակողմանի, փոխադարձորեն կապակցված երևույթների ավելի խոր ընկալումը։ Մարդկանց, մարդկային խմբերի գործունեությունն այդ շրջանում դառնում է արվեստի կենտրոնական թեման, և դրա ձևավորման անհրաժեշտությունը կյանքի է կոչում պատկերների պայմանականություն, խիստ ոճավորում, պատմողական բնույթ, առանձին կերպարների սյուժետային ենթակայություն, զարգացած կոմպոզիցիա ստեղծելու ռեալ փորձեր[1]։*

*Գոյատևման շուրջ չորսհազարամյա ժամանակաընթացքում, այդ արվեստը մշտական շարժման ու փոփոխությունների մեջ անդրադարձնում է պատմական զարգացման տարբեր փուլերի առանձնահատկությունները, կատարման տեխնիկայի ու ոճերի բազմազանությունը, նախնադարյան նկարիչների հարյուրավոր սերունդների անհատական ճաշակը, ձիրքը, տաղանդն ու կարողությունները, և իր ամբողջության մեջ ներկայանում է մեզ իբրև բարդ ու «անլուծելի շղթաներով» կապակցված մի ֆենոմեն, որն ըստ ամենայնի արժանի է քննական մանրակրկիտ վերլուծության, նախ և առաջ հուշարձանախմբերի գիտական խմբավորման ու դասակարգման, ապա թվագրման ու մոտավոր մեկնաբանման առումներով։*

*Ժայռապատկերների ուսումնասիրության ներկա փուլում հնարավոր է դիտել ու հաստատել նրանց տեխնիկական, ոճային ու ժամանակագրական մի քանի հիմնական, ընդհանուր առանձնահատկություններ միայն, որոնք, այնուամենայնիվ, կարող են վստահելի հիմք ծառայել ապագա ուսումնասիրությունների համար։*

*Արշավախմբի կողմից Հայաստանում ուսումնասիրված ու դիտված հուշարձանախմբերից ամենահինը գտնվում է Գեղամա լեռների Մեծ Պայտասար գագաթի ստորոտին (նկ. 1—2)։ Այս խմբի ժայռապատկերները փորագրված են (ծեծված) որձաքարի հսկա վեմերի վրա, ունեն խոշոր չափեր, ոչ խոր և ոչ հստակ փորագրություն։ Ցավոք, հողմահարման և փորագրման տեխնիկայի անկատարության հետևանքով, նշված խմբի պատկերները հազիվ են նշմարվում, ենթակա չեն ընդօրինակման և քննության։ Նկատվում է միայն, որ դրանց կատարման տեխնիկան շատ նման է ավելի ուշ ժամանակներում կիրառվածին։ Հավանական է, որ այդ խումբը վերաբերում է վաղ նեոլիթյան ժամանակներին (մ.թ.ա. VII—V հազ.) և հանդիսանում է ստորև քննարկվելիք պատկերների հավանական տեխնիկական նախատիպը։*

*Գեղամա լեռների ժայռաքանդակների տեխնիկական առանձնահատկությունները հստակորեն դիտվում են նույն Մեծ Պայտասարի ժամանակագրական հաջորդ խմբում (մ.թ.ա. V—IV հազ.) և նրանից ծայր առնող բոլոր այլ հուշարձաններում։ Սրանց մեջ մեկուսի, խմբային, թե կոմպոզիցիոն պատկերներն ամենուրեք փորագրված են որձաքարե ժայռաբեկորների վրա՝ ձեռքի քարե թակիչների և վանակատե կտրիչների օգնությամբ։*

*Ամենատարբեր չափերի (0,5—8 քմ) ու ձևերի քարե այդ «կտավները» ունեն համեմատաբար ողորկ, փայլուն, բայց անհավասար մակերես և նկարազարդումից առաջ լրացուցիչ մշակման չեն ենթարկվել։ Պատկերները սովորաբար տեղադրված են վեմի մակերեսին, սակայն հաճախ այդ*

[1] „Всеобщая история искусства", М., т. I, 1956, стр. 28—32.

նպատակով օգտագործվել են նաև կողային հարթությունները։ Պատահում է նաև, որ մարդու կամ կենդանու նույն պատկերը քանդակված է տարբեր հարթությունների վրա։ Մեծ կոմպոզիցիաներն արվում էին հսկա ժայռաբեկորների բոլոր հարթությունների վրա։ Պատկերների քանակը մեկ կոմպոզիցիայում երբեմն հասնում է 60—70-ի։ Նրանց մեծությունը կախված է յուրաքանչյուր առանձին պատկերներին վերագրվող նշանակությունից, քարի չափերից, զարգացման այս կամ այն փուլում ընդունված մասշտաբային չափանիշներից և բազում այլ հանգամանքներից։ Քարի մուգ փայլուն ֆոնի վրա պատկերը վերջնականապես ձևավորվում էր ծեծելու եղանակով, որը կատարվում էր թակիչի բանող ծայրի հարյուրավոր կամ հազարավոր համաչափ զարկերի միջոցով։ Պատկերի մակերեսն այդպիսով ծածկվում էր հազարավոր մանր փոսիկներով կամ րծերով, կորցնում էր քարի բնական ողորկությունը, պատկերների եզրագծերը մանր ատամիկների տեսք էին ստանում։ Ինքը՝ պատկերը խորանում էր քարի մակերեսից մի քանի միլիմետրով։ Բացառիկ դեպքերում ակոսային եղանակով արված պատկերների խորությունը հասնում էր 1—2 սմ-ի։ Պատկերների խորությունը միանգամայն բավարար էր նրանց պահպանության, երկարակեցության և գունային տպավորություն ստեղծելու համար։ Քարի ֆոնը միշտ ողորկ ու փայլուն էր լինում, մինչդեռ պատկերը համեմատաբար անփայլ, գունաթափ և թակիչի բանող մասի փոսիկներից առաջացած անհավասար մակերեսով (Նկ. 3—7)։

Ամբողջովին փոսիկներով լցված և ակոսային եղանակով քանդակելու տեխնիկան մինչև վերջ էլ պահպանեց իր նշանակությունը, ժամանակի ընթացքում ենթարկվելով աննկատելի փոփոխությունների։ Աշխատատար պրոցեսների կրճատման, մեծ կոմպոզիցիաներ ստեղծելու նպատակով զգալիորեն փոքրացվեցին պատկերների չափերը, կանոնավորվեցին, սլացիկ ձևեր ստացան եզրագծերը, գեղեցիկ, ուղիղ ու ավելի խոր դարձան ակոսները, գտնվեցին նոր համաչափություններ, ակոսավոր պատկերների քանակը ավելացավ և այլն։ Այս ամենի հետ բնականորեն փոփոխվում, կատարելագործվում էին աշխատանքի գործիքները՝ քարե թակիչներն ու վանակատե կտրիչները։ Նախնադարյան մեծ արվեստի կերտողներին հաջողվում էր խիստ պայմանականությամբ ու ոճավորմամբ հասնել մեծ արտահայտչականության, դինամիզմի, էքսպրեսիայի, որսալ ամենատարբեր կենդանիներին բնորոշ առանձնահատկությունները, ստեղծել սլացիկ, գրագետ, բարդ կոմպոզիցիաներ՝ պատկերների որոշակի դասավորությամբ, բարդ գործողությունների պատկերմամբ, նկարի համաչափություններով, քարի հարթության վրա զետեղված պատկերների հորիզոնական կամ ուղղահայաց բազմաշար դասավորությամբ։

Պարզապես անհնարին էր հաղթահարել այս բոլոր բարդությունները միայն ու միայն կետ-հարվածային տեխնիկայի կիրառմամբ։ Տրամաբանությունը ստիպում էր փնտրել ու գտնել լրացուցիչ տեխնիկական հնարանքներ, որոնց զուգակցման եղանակով հնարավոր լիներ հասնել այդպիսի կատարելության։ Երկարամյա մանրազնին պրպտումներից հետո հաջողվեց բացահայտել նախնադարյան նկարիչների տեխնիկագեղագիտական գլխավոր «հնարանքը»։

Պարզվեց, որ պատկերների վերին շերտի «ծեծված» մակերեսի տակ թաքնված է գծանկար-էսքիզը, որն ընկած էր թե կոմպոզիցիոն մտահղացման, թե կառուցվածքի, թե պատկերների ոճական արտաբերման հիմքում։ Այդպիսի մի ժայռանկար գտնվեց Փոքր Պայտասարի արևելյան ձորակում (Նկ. 8)։ Փոքր չափի (55—65սմ) սեղանաձև մի քարի վրա համարձակ, վարժ ու արագ ձեռքով, ամբողջական բարակ գծերով, վանակատի սուր կտրիչով նկարված էին 11 այծեր՝ երկար ոտքերով, ուղղահայաց, բարձրադիր՝ վերին մասում կեռ եղջյուրներով, իրանի երկար, հորիզոնական գծերով (ըստ ոճի մ.թ.ա. II հազ.)։ Էսքիզի վրա սկսվել էր որոշ ֆիգուրների ներքին մասերի լրացուցիչ մշակումը թակիչի կետահարվածային (փոսիկավոր) տեխնիկայով, պատկերները վերջնականապես եզրագծելու և ավարտելու նպատակով։ Բարեբախտաբար աշխատանքը թերավարտ էր և միայն դրա շնորհիվ հնարավոր եղավ հաստատել գծանկար-էսքիզների գոյությունը։

Նույն Փոքր Պայտասարի հարավային երկրորդ ձորակում մ.թ.ա. II հազ. առաջին կեսի պատկերախմբում հայտնաբերվեց երկրորդ թերավարտ ժայռանկարը, որը ներկայացնում է գծային տեխնիկայով կատարված այծի պատկեր։ Կենդանու իրանը պատված է բազմաթիվ բարակ գծերով, սկսված է կետահարվածային մշակումը, բայց մնացել է կիսավարտ (Նկ. 9)։

Այս նույն պատկերախմբում առկա է շատ հետաքրքիր, թերավարտ որսի տեսարան՝ կաղմըված այծերի, շան, որսորդի պատկերներից (Նկ. 10)։ Դրանցից ավարտված է միայն այծապատկերը՝ կետհարվածային մշակմամբ, մնացածները ներկայացված են գծային տեխնիկայով։ Այծերից մեկի իրանը պատված է թեք գծերով,

մյուսի գլխին առկա է գծանկար բարակ ցանց։ Սրանից վերև գծագրված են փոքրիկ շան, աղեղի ու եռանկյունասլաք նետի պատկերներ։ Նկարիչը չի հասցրել միակցել որսորդին, որի թերավարտ պատկերը շատ ուշագրավ է տեխնիկական իմաստով։ Որսորդի գլուխն ու իրանը կազմված են նրբագիծ ուղղանկյուններով, գրեթե ավարտված է գլխի ու ձախ թևի կետ-հարվածային մշակումը, աջը, սակայն, ներկայացված է մի բարակ, կեռ գծով։ Որսորդի թիկունքի ետևում կետ-հարվածային տեխնիկայով տրված են ինչ-որ այլ մանրամասներ ևս։

Նույն տեխնիկայով մշակված մի այլ ժայռանկար հայտնի դարձավ Մեծ Պայտասարից հարավ-արևելք, 800—1000 մ տարածության վրա, ուշ բրոնզեդարյան ժայռանկարների շարքում (նկ. 11)։ Թե կենդանու, թե մարդու պատկերները լրիվին մշակված են կետ-հարվածային տեխնիկայով։ Որսորդը զիմավոր է և զգեստավորված, զինված է նետով ու լայնալիճ աղեղով։ Սակայն այստեղ էլ նկարիչը չի հասցրել կետ-հարվածային տեխնիկայով մշակել որսորդի աղեղն ու նետը, որի ծայրապանակը եռանկյունաձև է, շատ բնորոշ մ. թ.ա. X դարի մետաղյա նետասլաքներին։ Չեն ավարտված նաև կենդանու ճիրանները, որոնք փորված են ուղիղ, սուր գծերի ձևով։ Տեսարանում առկա երկրորդ որսորդի պատկերը կետ-հարվածային տեխնիկայով մշակված է մինչև գոտկատեղը, նրա աղեղը դարձյալ միայն գծագրված է։ Երկրորդ որսորդի թիկնամասում նույնպես գծագրված աղեղներ կան։

Այդ խմբում առկա է նույն ժամանակաշրջանի մարդակերպ մի պատկեր ևս (նկ. 12), կլորավուն իրանով, ուսերից բուսած գերապրուկային թևելուստներով։ Նրա մատներն ու գլխի ցից մազերը ներկայացված են վերընթաց սուր գծերով։ Գծային տեխնիկայով են կատարված նաև պատկերի դիմաց գտնվող աղեղն ու նետը, որը նույնպես ավարտվում է բնորոշ եռանկյունի սլաքով։

Գծաէսքիզային և կետ-հարվածային տեխնիկայի համադրմամբ կատարված մի քանի կոմպոզիցիաներ կան Ջիրաթ գագաթի պատկերախմբում, որոնք նկարագրվածներից տարբերվում են իրենց շերտավոր բարդումներով և առանձին քննարկման կենթարկվեն։

Այսպիսով, Գեղամա լեռների (և ողջ Հայաստանի) ժայռապատկերների գերակշռող մեծամասնությունը կատարվում էին գծաէսքիզային և կետ-հարվածային տեխնիկայի համատեղ կիրառմամբ, մ. թ.ա. V հազ. սկսած մինչև I հազ. սկզբները։

Զուտ գծային տեխնիկայի կիրառումն ավելի բնորոշ էր վաղ երկաթի դարաշրջանին, սակայն այն համատարած չդարձավ։ Ջիրաթ գագաթից հարավ-արևմուտք ֆիքսացված են ավելի քան քսան ժայռապատկեր, որոնք կատարված են օբսիդիանե կտրիչի միջոցով, նուրբ, հազիվ նշմարելի գծերով, երբեմն նման ճատրակի տախտակներին, երբեմն էլ կացարանների հատակագծերին (նկ. 13—14)։ Սակայն երկրաչափական այս պատկերների հետ միասին, նույն Ջիրաթում, հանդիպում են միևնույն տեխնիկայով կատարված հետաքրքիր տեսարաններ։ Դրանցից մեկի մեջ հազիվ նշմարելի գծագրությամբ պատկերված են հետիոտն, հեծյալ մարդկանց ու կենդանիների ծայրաստիճան ոճավորված պայմանական-պատկերագրական բնույթի պատկերներ և մի հըսկա կենաց ծառ (նկ. 15)։ Գծաէսքիզային և կետ-հարվածային տեխնիկայի կիրառումը համատարած ու հարատև էր ողջ Հայկական լեռնաշխարհի պատկերագրությանը։ Այն, ըստ երևույթին, կիրառվում էր նախնադարյան շատ ժողովուրդների կողմից, աշխարհի տարբեր մասերում։ Բայց միշտ չէ, որ այդ երևույթը հնարավոր է բացահայտել ու ապացուցել անգամ լավ ուսումնասիրված հուշարձանախմբերում։

Այս է ժայռապատկերների կատարման տեխնիկան՝ ամենահիմնական ու ընդհանուր գծերով։ Իր թվացող պարզունակության մեջ այդ տեխնիկան ուներ բազմաթիվ այլ գաղտնիքներ ու նրբություններ, պահանջում էր մեծ փորձ, հմտություն, քարի տեսակի ու հատկանիշների իմացություն։ Այս բոլորը լիովին կարելի է ուսումնասիրել միայն փորձառական եղանակով։ Այդուամենայնիվ, նկարագրված տեխնիկան իր պարզությամբ հանդերձ բավականաչափ ընդհանրական էր և հնարավորություն էր ընձեռում ժամանակի ընթացքում ստեղծել ոճերի այնպիսի ճոխություն ու բազմազանություն, որպիսին դժվար է գտնել նույնիսկ ժամանակակից արվեստում։ Ոճավորումը Հայաստանի ժայռարվեստում կիրառվում էր ամենուրեք, ծայրից ծայր, տասնյակ կենդանիների, մարդկանց, աստվածների, իրերի ու առարկաների կերպավորման մեջ։ Ավելին, ժամանակագրական որոշակի հատվածի սահմաններում հանդես են գալիս նույն պատկերի մի քանի տարբեր ոճավորումներ։

Սույն աշխատության մեջ կատարվում է ոճական մասնակի քննություն, այնքանով, որքանով, այն կարող է օժանդակել նյութի դասակարգմանն ու ժամանակագրական վերլուծությանը։

Ձևաոճական փոփոխություններն ամենից ավելի պարզ ու հստակ դիտվում են այծերի, ցլերի ու մարդկանց պատկերներում, որոնք կազմում

են Հայաստանի նախնադարյան ժայռապատկերների ամենաբնորոշ և հաճախադեպ տարրերը։ Ըստ այդմ դիտվում է և տեխնիկայի աստիճանական կատարելագործում ժամանակի որոշակի հատվածների մեջ։ Կենդանապատկերը ժամանակագրական ու ոճական զարգացման համեմատությամբ դիտելիս երևան է գալիս նյութի դասակարգման որոշակի օրինաչափություն։

Ոճ Ա—Ա ոճի այծապատկերը հանդիպում է Հայաստանի հնագույն ժայռանկարներում, որոնք, ինչպես ստորև կտեսնենք, վերաբերում են ուշ նեոլիթ-էնեոլիթյան ժամանակաշրջանին։ Հուշարձանների այս խմբում այծապատկերը, կամ ինչպես ընդունված է ասել «իծագիրը», հեռու է կատարելությունից, զուրկ է համաչափությունից և բնորոշ մանրամասների շեշտումից։ Պատկերը չափից ավելի երկար է (60—80 սմ) ու ցածրադիր (30—40 սմ) և այդ համամասնությունների համապատասխան օժտված է կարճ դնրապրուկային ոտքերով և երկար մեջքի վրա փռված ու նրա ուղիղ, հասու գծին զուգահեռ եղջյուրներով։

Պատկերը կազմված է լայն, ոչ խոր ակոսների միջոցով և լրացուցիչ ներքին մշակման չի ենթարկված։ Սա իծանկարի հնագույն և միակ ձևն է (աղ. I, շարք I)։

Ոճ $Ա_1$—Պատմական զարգացման հաջորդ փուլում (մ.թ.ա. III հազ.) հանդես է գալիս «իծագրի» մի քանի տիպ, մի քանի ոճ, սակայն ամենից առաջ խիստ կատարելագործվում, բարելավվում և ընդհանուր տարածում է գտնում Ա ոճի պատկերը։ Խորացվում և նրբացվում է ակոսեզրագիծը, խիստ փոփոխության են ենթարկվում չափերն ու համաչափությունները (երկարությունը՝ 25—30 սմ, բարձրությունը՝ 20—25 սմ), պատկերը համապատասխանաբար օժտվում է նոր բնորոշ հատկանիշներով՝ ոտքերը դառնում են ավելի երկարուկ ու գեղեցիկ, եղջյուրները կտրվում են մեջքից, հզորանում մեկ կամ երկու զույգ ճյուղերով ու դառնում կամարաձև, իրանը քառանկյունի ձև է ընդունում, գլուխն անջատվում է իրանից։ Այս ոճի պատկերը ամենատարածվածն էր (մ.թ.ա. III հազ.), սակայն դրա հետ մեկտեղ հանդես են գալիս երկրաչափական բնույթի ավելի ոճավորված ու պարզեցված բազմաթիվ այլ պատկերներ (աղ. I, շարք II—III)։

Ոճ $Ա_2$—Հիմնականում շարունակում է $Ա_1$ ոճի մ.թ.ա. III հազ. «իծագրի» ոճական առանձնահատկությունները, սակայն պատկերը դառնում է ավելի սլացիկ և քառանկյունի, ոտքերը՝ երկար ու նուրբ, ձևավորվում է գլուխը և այլ մանրամասներ, մ.թ.ա. III հազ. կամարաձև մեջքին հենվող եղջյուրները կտրվում են իրանից, դառնում ավելի ուղղահայաց և միայն վերին մասում կորանում։ Այս ոճը բնորոշ է մ.թ.ա. II հազ. պատկերներին (աղ. I, շարք IV—V)։

Ոճ $Ա_3$—Մ.թ.ա. II հազ. վերջին և I հազ. առաջին կեսին տեղի է ունենում $Ա_2$ ոճի կատարելագործում։ Այծի զույգ եղջյուրները փոխարինվում են մեկով, չորս ոտքերը՝ երկուսով, իրանի մասը բարակում է. մռութը շեշտվում (աղ. I, շարք V—VI)։

Ոճ Բ—Այծապատկեր փորագրելու նոր ոճը (ոճ Բ) սկսվում է գծանկարով։ Նախապես գծագրվում է պատկերը՝ սուր կտրիչով, այնուհետև գծերը ակոսիկների են վերածվում «ծեծման» եղանակով, քարե թակիչներով, որոնք տարբերվում են Ա և $Ա_1$ ոճերի թակումներից, բանող ծայրերի նրբությամբ և ընդհանրապես գործիքի փոքր չափերով։ Ոճի ձևավորումը կատարվում է տեսական, մեթոդիկ բացառումների եղանակով։ Բ ոճի այծապատկերների իրանը կազմվում է սուր անկյուններով իրար հարող երկու եռանկյունիներից, որոնց ստորին անկյուններում դեռևս պահպանվում են դերապրուկային գծային վերջույթները, իսկ վերին ծայրերում՝ գերապրուկ դարձած պոզերն առանց գլխի և պոչիկը[2]։ Բ ոճի պատկերների տարբերակները շատ են։ Մի քանի դեպքերում այս եռանկյունաչափական պատկերն ունի գլուխ, պոզեր, մեկ ոտք և պոչ, այնուհետև կից եռանկյունիների ծայրերին մնում է որևէ մի էլեմենտ՝ եղջյուր, սրուն կամ գլուխ։ Վերջապես մնում են իրար կից երկու եռանկյունիներ միայն, որոնք հաճախ արտաբերվում են զուտ գծային եղանակով։ Սրա հիման վրա էլ առաջ է գալիս այծապատկերը, որը դառնում է նշանագրի հիմք։ Բ ոճի ֆիգուրները բնորոշ են Հայաստանի մ.թ.ա. III հազ. բոլոր ժայռապատկերների համար և բավականաչափ հաճախ հանդիպում են Գեղամա լեռների ժայռապատկերների տարբեր խմբերում (աղ. I, շարք VII—VIII)։

Եռանկյունաչափ այս ոճը որոշ առումով ընդհանուր է և կիրառվում է նախնադարյան արվեստի տարբեր բնագավառներում՝ բավականաչափ երկար ժամանակի ընթացքում մարդկային ու կենդանական ամենատարբեր պատկերներ արտաբերելիս։ Այս ոճը բնորոշ է նախ և առաջ մ.թ.ա. III հազ. խեցեղենի պաշտամունքային զարգա-

[2] Տե՛ս Հ. Մարտիրոսյան, Հ. Իսրայելյան, Գեղամա լեռների ժայռապատկերները, Հայաստանի հնագիտական հուշարձանները, պրակ 6, նկ. 150, 152, 203, 204, 284, 304 և Հ. Ա. Մարտիրոսյան, Ժայռապատկերների դասակարգման մի քանի նախնական տվյալներ, «Լրաբեր» (հաս. գիտ.), 1970, № 9, աղ. III, նկ. 30։ Հ. Ա. Մարտիրոսյան, Հայաստանի նախնադարյան ժայռագրերը և նրանց ուրարտահայկական կրկնակները, Երևան, 1973, աղ. V, նկ. 7։

նախշերի համար և հնարավոր է, որ այդտեղից է անցել ժայռապատկերներին և մետաղե առարկաներին։

Մարդկային ֆիգուրները պատկերվում են այս ոճով ուշ բրոնզի և վաղ երկաթի ժամանակներում։

Ոճ Գ—Նվազ տարածված ոճ է, որոշ առումով կապվում է նախորդի հետ, շատ բնորոշ է մ.թ.ա. III հազ. երկրորդ կեսի և II հազ. սկզբների կամ առաջին կեսի պատկերագրությանը։ Պատկերը ներկայացվում է քառանկյունի կողային խորություններով, որ, ըստ էության, նույն կից եռանկյունիների սկզբունքն է։ Դրանց միջոցով շեշտվում են քառանկյունու չորս անկյունները։ Սրանց տակ ներկայացվում են կենդանու վերջավորությունները։ Նման պատկերի ամբողջ մակերեսը կազմող գլուխը կամ մռութը լավ շեշտված է։ Այս ոճի պատկերներն իրենց նմանակներն ունեն Շամիրամ գյուղի մ.թ.ա. I հազ. տուֆե կրոմլեխաքարերի վրա (աղ. I, շարք IX)։

Նշված ոճերից յուրաքանչյուրն ունի հարյուրավոր տարբերակներ՝ կատարված անհատական որոշակի ճաշակի ու կարողությունների համապատասխան։

Ոճական մի շարք խմբերով և ոճաբանական բազմաթիվ առանձնահատկություններով են հանդես գալիս Հայաստանի և մասնավորապես Գեղամա լեռների բոլոր մնացած կենդանապատկերները։ Ցլապատկերներն, օրինակ, բաժանվում են չորս հիմնական ոճի (աղ. II).

ա) Վայրի ցուլերի (զուբրերի) պատկերներ, կատարված լիակոնտուր տեխնիկայով, փոքր գլխով ու եղջյուրներով, բնորոշ սապատով և մռութով (աղ. II, շարք I—II)։

բ) Վայրի հզոր ցուլերի խումբ, որ պատկերվում է պրոֆիլի խոշոր չափերով, հսկա եղջյուրներով, որսորդներով շրջափակված, կատաղի տեսքով, լարված իրանով (աղ. II, շարք III—IV)։

գ) Ընտելացված ցուլեր (եզներ), որ պատկերվում են ստատիկ վիճակում, վերին աստիճանի ոճավորված (իրանի ձողը, երկու ոտք, երկու պոզ), հաճախ սայլին լծված կամ ֆունկցիոնալ այլ դիրքերում (աղ. II, շարք V)։

դ) Պաշտվող ցուլերի պատկերներ ճկված կամ զիգզագաձև իրանով, փոքր գլխով, լողակների նմանվող վերջույթներով (աղ. II, շարք VI)։

ե) «Դ» ոճի մի այլ տարատեսակ՝ իրանից անջատվող և մանրամասն գծագրվող գլխով։ Պատկերն ամբողջությամբ կրկնում է նույն Գեղամա լեռների վիշապների վրա քանդակված ռելիեֆ ցլապատկերները։ Այս հիմնական խմբերի տասնյակ տարատեսակներ կան, որոնք անհնար է մեկ-մեկ նկարագրել (աղ. II, շարք VII—VIII)։

Այծերի ու ցլերի նման տարբեր ոճով են արտաբերվում եղջերուներն ու շները, գիշատիչների մի քանի տեսակները, թռչունները և մարդիկ։

Անհրաժեշտ է այստեղ համառոտակի բնութագրել մարդու, մարդակերպ ոգիների՝ աստվածների պատկերման տարբեր ոճերն ու ոճական տարբերակները, որոնց ներքին իմաստը դեռևս մանրազնին ուսումնասիրված չէ (աղ. III)։

Ոճ Ա—Մարդու ամենատարածված, ամենահին, բոլոր ժամանակներին բնորոշ պատկերը. շատ պարզ ու հասարակ մի ֆիգուր է՝ կազմված իրանի և վզի ուղղահայաց ձողից, որ ավարտվում է գլխի շրջանաձև գոգավորությամբ և աջից ու ձախից ճյուղավորվող չորս վերջույթներով. դրանցից վերին երկուսը կազմում են պատկերի թևերը, իսկ ներքևինները՝ ոտքերը։ Հաճախ ոտքերի արանքում պատկերվում է սեռական հատկանիշը (ոճ Ա, շարք 1)։ Այս հիմնական պատկերը ժայռանկար կոմպոզիցիաներում հանդես է գալիս բազմաթիվ տարբերակներով՝ մերկանդամ, զգեստավորված, դիմակավորված, զինված ու անզեն, ամենաբազմազան դիրքերում և գործողությունների մեջ և դրանց համապատասխան վերջույթների դասավորությունը փոխած (Ոճ Ա, շարք 2—4, Ոճ $Ա_1$, շարք 1)։ Նեոլիթ-էնեոլիթյան շրջանի նկարագրված մարդու պատկերները խոշոր ու կոպիտ են, նրանց երկարությունը հասնում է 1 մ-ի կամ անցնում դրանից։ Սրանց մեջ հստակորեն զանազանվում են տղամարդկանց, կանանց, երեխաների պատկերները, ինչպես նաև պտղաբերող, կախարդող, հմայող ոգիների կամ աստվածների պատկերները, որոնք ունեն խոշոր չափեր, ընդգծված վերջույթներ, առնանդամներ և հատուկ կեցվածքներ (Ոճ Դ, Ե)։

Ոճ Դ, Ե—Պտղաբերող աստվածները կամ ոգիները ծագում են անմիջականորեն Ա ոճից. սակայն սովորական մարդկային կերպարներից տարբերելու համար պատկերվում են խոշոր չափերով, մարմնի ընդգծված մասերով, առանձնահատուկ դիրքով ու կեցվածքով և իբրև կանոն՝ երկնային լուսատուների՝ արևի, լուսնի, խաչի, ճանկախաչի կամ նրանց փոխարինող կենդանապատկերների հետ։ Այս ոճի պատկերները տարածած թևերի ու ոտների վրա հաճախ երկար ու ճառագայթաձև մատներ ունեն. իբրև կանոն, հանդես են գալիս պպզած դիրքում՝ խիստ շեշտված առնանդամով։ Կան այնպիսի տարբերակներ, որտեղ այդ ոգիների արական և իգական զուգակիցները հանդես են գալիս միասին կամ մի քանի արական պատկերներ նույն կոմպոզիցիայում։ Կան ուշագրավ տարբերակներ, որտեղ այդ պատկերները բոլոր կողմերից առնված են ճառագայթ-

ների մեջ և մի տեսակ «հրաշուլքի» երևույթ են ներկայացնում։ Այս բոլոր պատկերները կապված են արևի, սեռական ընդգծված հատկանիշի, երկրի, ծառի, պտղի, սերնդի, պտղաբերման սիմվոլներ հանդիսացող կենդանատեսակների հետ և մարմնավորում են պտղաբերման աստվածության գաղափարն ու պաշտամունքը։

ՈՃ Ա, շարք 2—Այս ենթաոճի մարդակերպ պատկերները գրեթե չեն տարբերվում վերը նկարագրած ենթաոճի պատկերներից, եթե նկատի չունենանք, որ Սյունյաց և Գեղամա լեռներում, Արագածում և այլուր դրանք հանդես են գալիս բացառապես կանգնած և թևերը վեր մեկնած դիրքով, որ աղոթքի կամ հմայական սրբազան արարողության կեցվածք է հիշեցնում։ Ելնելով կոմպոզիցիաներում նրանց գրաված դիրքից, ֆունկցիայից, շրջապատից և մի շարք այլ հանգամանքներից, կարելի է ենթադրել, որ դրանք ոչ թե պտղաբերության, այլ ավելի շուտ կենդանիներին հովանավորող ոգիներ կամ աստվածներ են (ՈՃ Դ, Ե) (աղ. III, շ. IX—XI)։

Նկարագրված հիմնական ոճից ու նրա ենթաոճերից բացի, Հայաստանի ժայռապատկերներում հանդիպում են նաև ոչ նվազ տարածված մի քանի այլ ոճեր։ Դրանցից կարևորները երկուսն են, որոնք նույնպես ունեն իրենց բազում տարբերակները (ՈՃ $Ա_1$, Բ և Գ)։

ՈՃ $Ա_1$—Ներկայացնում է մարդու պարզունակ պատկեր՝ բազում տարբերակներով։ Պատկերի իրանն ու գլուխը պատկերվում են հաճախ մեծ կամ փոքր ձվաձև գծերով, ներքևում ավելացրած ոտքերով և ուսերի մակարդակից՝ թևերով, երբեմն մարդու իրանն ու գլուխը պատկերվում են իրար կից մեծ ու փոքր ձվաձև գծերով, որոնց ավելացվում են ոտքերն ու սեռական հատկանիշը։ Հաճախ ներքևի ձվածիրը շատ երկարուկ է և ենթադրում է իր մեջ նաև իրանի ստորին վերջավորությունները։ Այսպիսի դեպքերում գլուխը շատ փոքր է լինում, և մի գծով պատկերվում են թևերը, որոնք հատում են կլորավուն իրանի վերին մասը։ Այս պատկերի շատ հատկանշական տարբերակների վրա գլուխը բացառված է, օվալի ներքնամասը բաց է, և պատկերը վեր է ածվում կամարի՝ մեջտեղից հատված թեք կամ ուղիղ գծով։ Այնուհետև վերանում է նաև միջտեղի հատող գիծը, և մնում է սոսկ կամարը (աղ. III, շարք V—VI)։

ՈՃ Բ—Մարդու խաչաձև պատկեր է, որի ոտքերը եռանկյունու, կիսված եռանկյան, կիսաշրջանի և լրիվ շրջանագծի ձև ունեն, իսկ թևերն ու ոտքերը՝ իրանի ուղղահայաց ձողը հատող զույգ գծերի։

Ինչպես տեսնում ենք, Հայաստանի նախնադարյան արվեստում, մանավանդ ժայռապատկերների մեջ անչափ շատ են մարդկային պատկերները, որոնք հանդես են գալիս մեկուսի կամ խմբովին, ամենատարբեր կապակցությունների մեջ՝ աղեղնավորված և պարաններով զինված, հմայող, կախարդող որսորդների, խաշնարածների, գառնարած մանչուկների, ծառերին երկրպագող էակների դերում, ծիսական արարողությունների՝ պարերի մեջ, երկնանշանների, անդրշիրիմյան հուշարձանների զուգորդությամբ և բազում այլ պարագաներում։ Հասկանալի է, որ տարբեր հանգամանքներում ներկայացվող և անընդհատ կրկնվող մարդապատկերների առկայությունն արվեստի հուշարձաններում շեշտում, ընդգծում է մարդու դերը բարգացող հասարակական կյանքում, նրա ակտիվ, հասարակայնորեն անհրաժեշտ ներգործությունը բնության ուժերի վրա։ Բացի այդ, տարբեր ձևի ու ոճի մարդապատկերները հաճախ շեշտում են հասարակության սոցիալական աստիճանավորման մեջ նրանց զբաղեցրած տեղը և վերջին հաշվով հասարակության սոցիալական կառուցվածքը բրոնզի դարաշրջանում։

Մենք արդեն նշեցինք, որ մարդակերպ պատկերների մի զգալի մասը ներկայացնում է պտղաբերության արևային աստվածների կամ ոգիների, կենդանիներին հովանավորող աստվածների, ամպրոպ-կայծակի-մարդանման աստվածների պատկերներ։ Բացի այդ, հաճախ են հանդիպում նախնիների պարզունակ մարդկային պատկերներ, որոնք հանդես են գալիս աստղանշանների և արևանշանների միջավայրում։ Նշված բոլոր կարգերը մտնում են, այսպես կոչված, կրոնապաշտամունքային հիերարխիայի աստիճանավանդակի մեջ։ Սակայն հասկանալի է, որ ժայռանկարներում պատկերված բազմահազար զինված մարդկային կերպարները ներկայացնում են շարքային տոհմիկների այն հսկա զանգվածը, որն ապրում էր ի հաշիվ զարգացող անասնապահության, երկրագործության, որսի և արհեստների։ Տոհմացեղային համայնքի հիմքում ընկած սոցիալական այս խոշոր խավից զատ, նախնադարյան արվեստի հուշարձաններում տեղ են գտել նաև սոցիալական ավելի բարձր խավերի ներկայացուցիչներ։ Այսպես, կիրառական արվեստի վերը թվարկած հուշարձանների մեջ առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում Թազաքենդի խիստ վնասված բրոնզե գոտին, որը պատկանում է մ.թ.ա. II—I հազ. սահմանագծին։ Գրաֆիկական և սյուժետային առումներով այն կապվում է Գեղամա լեռների վերը հիշատակված երկու պատկերների հետ։ Գծային պատկերն այստեղ հասցված է պատկերագրական պարզության։ Գոտու մասամբ պահ-

պանված ձախ մասում ուղղահայաց երկու շարքի մեջ հանդես են գալիս մարդկային երկու խոշոր պատկերներ՝ կանգնած երկու ծառերի դիմաց։ Պատկերագրական առանձնահատկություններով դրանք նույնությամբ կրկնում են Գեղամա լեռների մեկուսի պատկերը, չափերով էլ փոքր-ինչ ցածր են ծառից։ Այս հանդամանքը ընդգծում է պատկերած էակին վերագրվող խոշոր նշանակությունն ու դերը, որը կապված է ինչ-որ կարևոր կրոնական-պաշտամունքային ծեսերի ղեկավարման հետ։ Ծառի դիմաց կանգնած մարդկային կերպարների կարևոր դերն ընդգծված է նաև Գեղամա լեռների երկու այլ ժայռապատկերների մեջ, որոնցից մեկում մարդը հեծյալ է և կրկնապատիկ խոշոր մյուսներից, իսկ մյուսում՝ հետիոտն է, բայց նույնպես շատ խոշոր։ Եթե հին արևելյան և, մանավանդ, ուրարտական պատկերագրական համանման նյութերի տեսակետից դիտելու լինենք այս ժայռապատկերները, ապա կտեսնենք, որ կենաց ծառի հետ պատկերվում են բացառապես թևավոր ոգիները, քրմապետն ու թագավորը։ Ցլերի և առանձնապես մարդկանց պատկերների ոճաբանական հակիրճ քննարկումը ցույց է տալիս, որ ոճերի առաջացումն ու զարգացումը զուտ արվեստագիտական, մշտական երևույթ չէր։ Հարատև այդ պրոցեսը կապված էր ոչ միայն պատկերատեսակների ֆունկցիոնալ նշանակության, կոմպոզիցիոն ենթակայության, այլև պատկերվող ֆիգուրների կրոնապաշտամունքային, հասարակական կամ սոցիալական դերի հետ, որպիսիք ավելի ու ավելի էին ընդգծվում ժայռապատկերներում՝ արտադրական-հասարակական ու հոգևոր կյանքի զարգացմանը համընթաց։

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ԺԱՅՌԱՊԱՏԿԵՐՆԵՐԻ ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅԱՆ ԽՆԴԻՐԸ

*Ժայռապատկերների կատարման տեխնիկայի ոճաբանության վերլուծությունը մեծապես օգնում է հուշարձանախմբերի գիտական դասակարգմանը, սակայն տակավին բավարար հիմքեր չի տալիս նրանց բացարձակ կամ համեմատական թվագրության համար։ Խնդրին մերձենալու համար անհրաժեշտ է առնվազն հաստատել պատկերախմբերի և ոճերի վերը առաջադրած պատմական հաջորդականությունը և որոշել նրանց գրաված տեղը ժամանակագրական սանդղակի մեջ։ Բարեբախտաբար, արշավախմբի աշխատանքների ընթացքում հայտնաբերվեցին մի շարք այնպիսի ժայռաբեկորներ, որոնց հին, խունացած, գրեթե անհետացած պատկերները հարյուրամյակներ կամ հազարամյակներ անց ծածկըվել էին նորերով կամ լրացվելով, փոխել իրենց նախնական տեսքն ու իմաստը։ Մի խոսքով, մեր ժայռապատկերներն ունեն իրենց ներքին շերտագրությունը, որով կարելի է վերջնականապես ճշտել գոնե դրանց հաջորդականությունը։*

*Այժմ արդեն անհնար է շփոթել հինը նորի հետ, թեև երբեք չի պատահում, որ միևնույն ժայռաբեկորի վրա հաջորդաբար, մեր ցանկացած ձևով ներկայացված լինեն մ.թ.ա. IV, III, II և I հազարամյակների համատեղ շերտերը։ Այդ լրացումներն ու փոփոխությունները կատարվել են տարբեր հաջորդականությամբ՝ մի դեպքում իրար են հաջորդում IV—III հազ., մյուս դեպքում V—IV և II հազ. նկարները, մյուս դեպքում նույն հազարամյակի տարբեր փուլերի պատկերները, երրորդ դեպքում մ.թ.ա. IV հազ. պատկերները լրացվում են շուրջ 3000 տարի անց։ Այդ կերպ թեպետ երբեմն օրինաչափությունը խախտվում է, այդուամենայնիվ, գերազանց մեծամասնությամբ մ.թ.ա. V—IV, III—II հազ. պատկերները օրինաչափորեն հաջորդում են միմյանց։ Սա նախնադարյան նկարիչների եռանդուն գործունեության արդյունք է և կապված է ժայռանկարային արվեստի ծաղկման բրոնզեդարյան փուլի հետ։ Մ.թ.ա. I հազ. սկզբներին, վաղ երկաթի փուլում, Հայաստանի ժայռարվեստն անկում է ապրում և դրանով է բացատրվում այն հանգամանքը, որ նշված փուլի նկարիչները գերադասում էին լրացնել հին ժայռապատկերները։*

*Դիտելով ժայռապատկերների մանրամասներն օրվա տարբեր պահերին, արշավախմբի աշխատակիցներին հաջողվեց միևնույն քարի մակերեսին, թվացող միևնույն կոմպոզիցիայի մեջ բացահայտել տարբեր ժամանակներում, տարբեր ձևով, ոճով ու տեխնիկայով իրար վրա, կամ իրար մեջ ագուցված, տարբեր մտահղացումներով կատարված կոմպոզիցիաներ կամ կենդանապատկերների փոփոխման նպատակով նրանց մանրամասների վրա կատարված բազմաբնույթ հավելումներ։ Դրանք եկան պարզելու և հաստատելու ոճատեխնիկական հայեցակետից դիտված ժամանակագրական երանգների հաջորդականությունը։ Այդ երևույթը մի քանի անգամ դիտվեց ժամանակագրական պարզ փոփոխումների մեջ, երբ մ.թ.ա. V—IV հազ. ժայռանկարը հավելված էր մ.թ.ա. III հազ. պատկերներով, մ.թ.ա. III հազ.՝ II-ով և II-ը՝ առաջինով։*

*Այդ կարգի կոմպոզիցիաների մեջ ամենակարևորներից մեկը ներկայացված է Գեղամա լեռների հնագույն (V—IV հազ.) ժայռախմբում (նկ. 16), որի վրա Ա ոճի հնագույն իծագրի, հսկա ցուլի և որսորդական աստծո՝ ներքին շերտի հոյակապ կոմպոզիցիայի մեջ, մանրակերտ ու նուրբ պատկերներով ստեղծված է մ.թ.ա. III հազ. որսորդական մի ուշագրավ կոմպոզիցիա։ Այստեղ հին կենդանապատկերների իրանին կամ վերջույթներին եղջյուրներ, ոտքեր, պոչ կամ մռութ ավելացնելով, մ.թ.ա. III հազ. հնարամիտ նկարիչները ստացել են Ա$_1$ ոճի երկու «իծագիր» պատկեր. երրորդ այծը հավելված է ազատ տարածության վրա։ Որսորդության աստծո՝ բացված*

զորևդ ոտքերի արանքում պատկերված է որսի շուն։ Ներքևի ձախակողմյան այծի ոտքերի տակ երկու մանրանկար խաչաձև ֆիգուրներ կան, որ սովորաբար մարդու պայմանական պիկտոգրաֆիկ պատկերներ են։ Պիկտոգրաֆիկ մի պատկեր էլ դրված է ներքին շարքի այծերի արանքում՝ թևերը վեր մեկնած բնորոշ դիրքով։ Այս պատկերը կազմված է իրանի բարակ ուղղաձիգ ձողով, որը վերին մասում երկճեղքվում է ու վերածվում թևերի։ Կոմպոզիցիայի կենտրոնում, նախկին ցլապատկերի տակ ավելացված է մի որսորդ, որի մարմինը կազմված է նույնպես ուղղաձիգ մի ձողով, սակայն, ի տարբերություն առաջին որսորդի, իրանի ձողը երկճեղքվում է ներքևում և դառնում ոտքեր։ Իրանի վերին մասում խաչաձևվող ձողով պատկերված են մարդու թևերը, որոնցով նա բռնել է իր նետն ու աղեղը։

V—IV հազ. մյուս պատկերները ևս ունեն բազմաթիվ «հավելումներ», սակայն դրանք կատարված են ավելի ուշ փուլերում։

Ավելի բազմաթիվ են մ.թ.ա. III—II հազ. շերտագրական հավելումները։

Նկ. 17. Անցման շրջանի (մ.թ.ա. IV հազ. վերջ և III-ի առաջին կես) այդպիսի մի շքեղ կոմպոզիցիա հայտնի է Ջիարաթի շրջակայքից։ Դա որսի տեսարան է, որի կենտրոնում զետեղված են մ.թ.ա. IV հազ. Ա ոճի խոշոր այծեր, նրանցից ներքև՝ օղապարանը օղակած որսորդ, իսկ կողքերին՝ շներ, այծեր և այլ թռչուններ։ Կեռպոչ շներից մեկը պատկերված է մ.թ.ա. III հազ. խեցեղենին բնորոշ եռանկյունաչափական ոճով։ Տեսարանը ամբողջովին մշակված է կետ-հարվածային տեխնիկայով։ Հետագայում խոշոր այծերի ֆիգուրների վրա մետաղական կտրիչի օգնությամբ մանր և խոր գծիկներով փորագրված են երեք այծի թերավարտ պատկեր և այլ պատկերների մասեր, որոնք իրենց կատարելությամբ, սլացիկ ձևերով, ոճաբանական առանձնահատկություններով համոզիչ զուգահեռներ ունեն Շամիրամի ռելիեֆ պատկերների մեջ և կարող են վերագրվել վաղ երկաթի դարաշրջանին՝ մ.թ.ա. VIII—VII դդ.։ Երկաթեդարյան նույն տեխնիկայով կատարված հավելումներ ունի նաև Մեծ Պայտասարի մ.թ.ա. III հազ. որսի հետաքրքրաշարժ տեսարաններից մեկը, որին մետաղե հատիչով ավելացված են այծերի և մարդկանց պատկերներ[1]։ Դրանք նույնպես ոճական զուգահեռներ ունեն Շամիրամի կրոմլեխների ռելիեֆ քանդակներում։

Սակայն, մ.թ.ա. III հազ. պատկերները լրացված կամ խաթարված են մեծ մասամբ մ.թ.ա. II հազ. վերջին քառորդի շերտերով։ Մի խոշոր ժայռաբեկորի վրա լավ երևում են III հազ. երկու այծերի եղջյուրներ, մնացած մակերեսը զբաղեցնում է որսի գեղեցիկ մի տեսարան, ուր զգեստավորված ու զինված որսորդը շների օգնությամբ հետապնդում է արու եղջերուների ու այծերի հոտը[2] (Նկ. 18)։

Մի այլ դեպքում (Նկ. 19) պատկերված է մ.թ.ա. III հազ. այծապատկեր, վերևից ու ներքևից լրացված II հազ. վերջին քառորդի եղջերուների, ցուլի և առյուծի պատկերներով։

Վերջապես, Ջիարաթի շրջակայքում կա մի երկշերտ ժայռապատկեր, որի մեջ իրար են լրացնում մոտավորապես II հազ. կեսերի և I հազ. սկզբների պատկերներ։ Այդտեղ մ.թ.ա. II հազ. ժայռաբեկորի վրա քանդակված և կետ-հարվածային եղանակով ամբողջովին ավարտված է եղեւ երկարոտն, սլացիկ այծի երկրաչափական մի պատկեր։ Նոր ժամանակների նկարիչը հին ժայռանկարը էսքիզագծային տեխնիկայով համալրել է մի քանի պատկերներով և ստացել որսի տեսարան ներկայացնող մի կոմպոզիցիա։ Նա ստորին շերտի այծի գավակին ուղղել է մի նետ, փորի ու ետին վերջույթների տակ գրել է նետ ու աղեղ և ցանց, մեջքի վրա ավելացրել է կանգնած այծի մի պատկեր՝ քառանկյունի գեղեցիկ իրանով, դուրս ցցված կրծքով, զույգ ոտքերով, բարձր գալարուն եղջյուրներով։ Այծի մարմինը պատված է հորիզոնական թեք գծերով։ Կոմպոզիցիան այնպես է համակցված, որ նետերը ուղղված են թե հին, թե նոր շերտերի կենդանիների վրա (Նկ. 20)։

Ժայռապատկերների վերը դիտված ներքին շերտագրությունը կասկած չի թողնում ո՛չ նրանց հարատևության, ո՛չ նրանց հաջորդականության, ո՛չ էլ տարբեր ոճերի տարժամանակյա հարակցության կամ էլ ժամանակագրական զուգորդության նկատմամբ։ Սրանք որոշակի կռվաններ են հուշարձանների թվագրման խնդրին ընդհուպ մոտենալու տեսակետից։ «Շերտային» ժայռապատկերներ հանդիպում են նախնադարյան շատ հուշարձաններում, այդ թվում նաև Քամոնիկայի (Իտալական Ալպեր) էնեոլիթ-երկաթեդարյան հուշարձաններում, որոնք թե ժամանակագրական, թե տեխնիկական ու ոճական առանձնահատկություններով մոտենում են մեր հուշարձաններին[3]։

«Շերտային» և «ոչ շերտային» պատկերախմբերը Գեղամա լեռներում և այլուր կապված

---

[1] Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Ռ. Իսրայելյան, Գեղամա լեռների ժայռապատկերները, նկ. 234։

[2] Նույն տեղում, նկ. 180։

[3] E. Anati, Evoluzione e stile nell Arte Rupestre Camnua, Brescia, 1975.

չեն համաժամանակյա բնակավայրերի մշակութային շերտերի հետ և չեն ուղեկցվում նյութական արտադրության այնպիսի առարկաներով, որոնք վերջնական չափանիշ հադիսանային ժամանակագրական սանդղակի համար։ Այս հանգամանքը ստիպում է բավարարվել հուշարձանների ընձեռած ներքին հնարավորություններով՝ ձևերի, ոճերի, տեխնիկական առանձնահատկությունների, համեմատական նյութերի ժամանակագրական կոմպլեքս վերլուծության մեթոդով։

Փորձենք դիտել պատկերախմբերի թվագրման հնարավորությունները և նրանց ներքին ժամանակագրական առնչակցությունները՝ նշված հատկանիշների տեսանկյունից։

## ՈՒՇ ՆԵՈԼԻԹ-ԷՆԵՈԼԻԹՅԱՆ ՊԱՏԿԵՐԱԽՈՒՄԲ (Մ.Թ.Ա. V—IV ՀԱԶ.)

Այս խումբը, որ գտնվում է Մեծ Պայտասարի արևելյան լանջին, Մահմար գետակի ափին, Ջիրարաթի դիմաց, հնագույնն է Հայաստանում հայտնի հուշարձանների մեջ։ Պատկերներն այստեղ ունեն երկրաչափական ձևեր, աչքի են ընկնում համեմատաբար մեծ չափերով (մարդկային և կենդանական առանձին պատկերների երկարությունը հասնում կամ անցնում է մեկ մետրից), ակոսապատկերների կոպտությամբ և անկատարությամբ, ակոսների լայնությամբ, կոմպոզիցիայի ոչ բազմաքանակ պատկերներով, որոշակի պարզությամբ և կերպարների համեմատաբար ստատիկ վիճակով, միանգամայն բնորոշ են Ա ոճի մեկուսի զույգ այծերի կամ դրանց փոքրիկ խմբերի պատկերներին, որոնք շեշտված ժամանակագրական երանգ ունեն։

Մեծ հետաքրքրություն են ներկայացնում ուշ ներմուծումներից զերծ, անաղարտ կոմպոզիցիոն նկարները, որոնք ներկայացնում են չորս-հինգ պատկերից բաղկացած որսորդական պարզ տեսարաններ։

Այս վաղ շրջանի որսորդական մի քանի տեսարաններում հանդես են գալիս արդեն ոգիների, աստվածների և երկնային մարմինների պատկերներ, որոնք ընդգծում են որսորդական հավատալիքների կապը գերբնական ուժերի և տիեզերական պատկերացումների հետ։ Դրանցից մեկում ինքը՝ որսի աստվածն է պարանել այծին (աղ. 31, նկ. 2), մյուսի մեջ՝ նետ ու աղեղով զինված որսորդը պատկերված է կատաղի, վազող ցլի, խիստ ոճավորված այծի և երկնային ոգու հսկա պատկերներին համատեղ։ Ոգի կոչվածի ոտքերը չռված են, առնանդամն՝ ընդգծված, կողերը՝ ցից, թևերը՝ վեր պարզած, գլխի և թևերի արանքում ունի շըրջանակներ, որոնք, անկասկած, երկնային մարմիններ են։ Կոմպոզիցիան ունի ուշ շրջանի հավելումներ, տարբեր ոճի այծանկարներ, որոնք, սակայն, չեն խաթարում նախնական արվեստի այդ հոյակապ նմուշի իմաստն ու բովանդակությունը (աղ. 67, նկ. 1)։ Սրեք այլ համանման ժայռանկարներում որսորդներին հովանավորող ոգիները կամ աստվածները նույնպես հանդես են դալիս երկնային մարմինների ու կենդանիների միջավայրում, լայն տարածած թևերով, ճառագայթաձև բացված հսկա մատներով, երբեմն խիստ ընդգծված առնանդամով։

Մեծ Պայտասարի քննարկվող պատկերախմբի ժամանակագրական վերլուծության համար առանձնապես հետաքրքիր են արեգակնային ու կայծակնային աստվածների շատ խոշոր ու բնորոշ պատկերները (աղ. 67, նկ. 2, աղ. 78, նկ. 3), որոնց մեջ մարդակերպ այդ հզոր էակները հանդես են գալիս եռյակով կամ մեկուսի, ճանկախաչի կամ Ա ոճի այծապատկերների հետ միասին, կանգնած դիրքով, ճառագայթաձև մատներով, թևերը կողքի պարզած կամ արմունկները վեր ծալած, երբեմն էլ պարզապես հրացոլքի երևույթով։

Այս պատկերները բավական համոզիչ զուգահեռներ ունեն վաղ երկրագործական բնակավայրերի նեոլիթ-էնեոլիթյան շերտերից հայտնի հուշարձաններում, որոնք մշակութային տերիտորիալ առումներով անմիջական առնչակցության մեջ են եղել Հայաստանի հետ։ Դրանցից առաջինը Իմիրիս Գորայի վաղ երկրագործական (մ.թ.ա. V հազ.) բնակավայրն է, որ գտնվելով Հայկական ՍՍՀ հյուսիսային սահմանի վրա, իր հուշարձանախմբերով կազմում է հարավ-անդրկովկասյան և հայաստանյան ընդհանուր մշակույթի օջախներից մեկը։ Նրա 4—1-ին հորիզոններում եղած քարե գործիքների և խեցեղենի շատ հարուստ կոմպլեքսի մեջ առկա է կիսագնդաձև թասի մի բեկոր, որը զարդարված է վերադիր ռելիեֆ մարդակերպ պատկերով։ Այն պահպանվել է կիսով չափ և նրա տուկից վերև իր նրբիրանով, ուղիղ մեջքով, գլխի ձևով, ծալած արմունկներով, վեր պարզած բազուկներով չի տարբերվում Գեղամա լեռների բնորոշ պատկերներից։ Հետաքրքիր է, որ նշված հորիզոններում առկա է կանացի մի արձանիկ, որի նմանները հայտնաբերված են նաև կից, չշերտագրված հորիզոններում, գունազարդ խեցու առաջին նմուշների հետ միասին։ Իմիրիս Գորայի 4—1-ին հորիզոնները նախնական թվագրման են ենթարկվել ռադիո-կարբոնի մեթոդով 4350 + 20[4] և որոշ գա-

[4] «Отчет Квемо-картлинской археологической экспедиции (1965—1971 гг.)», Тбилиси, 1975, стр. 203—221, рис. 51, 5.

դափար են առլիս Մեծ Պայտասարի ավագ պատկերախմբի ստորին ժամանակագրական սահմանի մասին։

Համեմատական նյութ ընձեռող երկրորդ հուշարձանը Յանիկ-Թեփեն է, որ գտնվում է Կապուտան լճից ոչ հեռու, հյուսիս-արևմտյան Իրանում և մտնում է Հասանլուի ուշ էնեոլիթյան ժամանակաշրջանի հուշարձանների տարածքի մեջ։ Իրանա-հայաստանյան մշակույթի ներթափանցումներն այս տեղավայրում շատ ազդեցիկ էին նեոլիթյան ժամանակներից ի վեր, իսկ մ.թ.ա. IV հազ. այն բռնագրավվեց Հայկական լեռնաշխարհի ցեղախմբերի կողմից, և նրա հուշարձանների մի զգալի մասը ծածկվեց, այսպես կոչված, «Քուռ-արաքսյան» մշակույթի բնակավայրերով։

Յանիկ-Թեփեի վերին շերտն իր հորիզոններով հայտնի է Հայաստանի III հազ. բնակավայրի մնացորդներով։ Այդ շերտի տակ ընկած է էնեոլիթյան մշակույթի մի բնակավայր, որի վերին հորիզոնները բնորոշվում են գունազարդ խեցեղենի շատ տիպական նմուշներով։ Դրանց մեջ առանձնակի հետաքրքրություն է ներկայացնում թասի մի բեկոր, որը վերին մասում ունի խոշոր զիգզագների գոտի, իսկ նրանից ներքև՝ մարդակերպ մի պատկեր։ Վերջինս, ցավոք, նույնպես պահպանվել է գոտկատեղից վեր, շատ նման է մարդակերպ մեր աստվածներին, մեջքն ու վիզը ուղիղ են, դեմքը կարծես դիմակավոր, թևերն արմունկներից ծալած, բազուկները վեր պարզած՝ ձեռքի չռված մատներով։ Դրանից ձախ՝ վերեւից ներքև ալիքաձև մի զարդ էլ կա, որ հիշեցնում է օձի իրան կամ կայծակի երևույթ, որ ամենուրեք ուղեկցում է նաև Գեղամա լեռների մարդակերպ էակներին[5]։ Արդյոք սա նույն կայծակի աստվածը չէ՞։ Յանիկ-Թեփեի խեցեղենի խմբում կա նաև մարդակերպ մի դեմք. նրա խոշոր, քառանկյունի աչքերը ագուցված են թափանցիկ վանակառով (օբսիդիան)։ Ամբողջ Արևելքում և Հայաստանում ընդունված էր առանձնապես շեշտել աստվածների աչքերը։ Վանակատե աչքերը ընդունված էին նաև Հայաստանի մ.թ.ա. III հազ. խեցեղենում։ Այնպես որ Յանիկ-Թեփեի դիմապատկերը, հավանաբար, նույնպես ներկայացնում էր որևէ աստվածություն։

Մարդակերպ աստվածները Մեծ Պայտասարի պատկերաքանդակներում արդեն ունեն կանոնիկ ձև և իրենց այդ կերպարը պահպանում են հազարամյակներ շարունակ, ընդհուպ մինչև I հազարամյակի սկզբները։ Սրանց թվագրման խնդրին յուրաքանչյուր դեպքում պետք է ունենալ առանձին մոտեցում։

Իրանական հիշյալ հուշարձանախումբը գտնըվում է Կապուտանի արևմտյան կողմում։ Նրա հակառակ ափի համաժամանակյա հուշարձանախմբերը մտնում են օբեյդյան մշակույթի մեջ և սերտորեն առնչվում են Արարատյան դաշտի Խաթունարխ-Թեղուտյան տիպի հուշարձաններին։ Յանիկ-Թեփեի էնեոլիթյան վերին հորիզոնները վերագրվում են մ.թ.ա. IV հազ. կեսերին։ Հավանական է ենթադրել, որ այս թվագրումը մոտ է մեր պատկերախմբի վերին ժամանակագրական գծին։ Հետևաբար, Մեծ Պայտասարի առաջին պատկերախմբին աղերսվող հուշարձանները պատկանում են մ.թ.ա. V և IV հազարամյակների միջև ընկած ժամանակահատվածին և մատնանշում, որ այդպիսի մի մոտավոր թվագրություն կարող է ունենալ և մեր պատկերների քննարկվող խումբը։ Մի կռվան ևս առավել համոզիչ է դարձնում այս ենթադրությունը։

Նախնադարյան որսորդները, հին քարե դարից սկսած, սովորություն ունեին կրոնահմայական պատկերների մոտ զանազան սրբազան արարողություններ կատարել և դրանց նվիրաբերել զոհեր։ Նվիրաբերվող առարկաների մեջ հաճախ լինում են քարե զենքեր ու գործիքներ, որոնցով մարդիկ որս էին անում կամ մշակում սպանված կենդանիների միսն ու մորթին։

Մեծ Պայտասարի ներկայացված խմբի հսկա ժայռաբեկորների մոտ և քարակարկառի մերձակայքում արշավախմբի աշխատակից Ռ. Մ. Թորոսյանը հայտնաբերեց օբսիդաքարե գործիքների մի բնորոշ խումբ, որի մեջ մտնում են մեծ, միջին և փոքր չափի դանականման գործիքներ՝ մշակված և բութ սայրերով, տձև, եռանկյունաձև, քառանկյունաձև, սրածայր և կոր եզրագծով կողային քերիչներ՝ երկսայրի կամ միակողմանի շքածումով (ռետուշով) (աղ. V) և օբսիդաքարի անմըշակ բեկորներ՝ սուր եզրերի օգտագործման որոշակի հետքերով։ Նշված գործիքներն իրենց համոզիչ զուգահեռներն ունեն Առաջավոր Ասիայի և Հայաստանի, մասնավորապես Արարատյան դաշտավայրի (Խաթունարխ, Թեղուտ) նորքարեդարյան նյութերի կոմպլեքսներում։

Այսպես, Մեծ Պայտասարի գործիքները (աղ. V) համապատասխանորեն համընկնում են Վ. Խաթունարխի՝ Էջմիածնի թանգարանում պահպանվող №№ 2468, 2450, 2522, 2591, 2455, 2488, 2523, 2505, 2526, 2517 գործիքներին, իսկ դրանցից երկուսը՝ նույն Արարատյան դաշտի փոքր-ինչ ավելի ուշ՝ էնեոլիթյան (մ. թ. ա. V հազ. վերջի և IV-ի առաջին կեսի) Թեղուտ բնակավայրի քարե

[5] C. Burney, Excavations at Yanık-Tepe, 1961, Iran v. XXIV, p. 137—139, pl. XLIII, fig. 9—12.

տարկաներին (Էջմիածնի թանգարան, ինվ. 2668)։ Միանգամայն օրինաչափ են մեր աղյուսակի նմուշների զուգահեռները[6] Կենտրոնական Անատոլիայի Չաթալ-Հույուք նեոլիթյան բնակավայրի երկրորդ և երրորդ շերտերում, որոնք ռադիո-ածխածնային մեթոդի օգնությամբ համապատասխանորեն թվագրվում են մ.թ.ա. 5797 + 79 և 5790 + 5807 + 94 թվականներով[7]։ Նման համադրությունների մեջ տեղ ունեն նաև Առաջավոր Ասիայի նեոլիթյան մի քանի հայտնի բնակավայրերի նյութեր, որոնք հաստատում են Մեծ Պայտասարի գործիքների նորքարեդարյան հասակը։ Այսպես, մեր գործիքներից մի քանիսը մոտավոր զուգահեռներ ունեն Կիլիկիայի Մերսին բնակավայրի XXIV—XXIII շերտերից[8] և Հյուսիսային Միջագետքի Թել-Հալաֆ բնակավայրից[9] հայտնաբերվածներին, որոնք կապված են միմյանց հետ և իրենց համապատասխան շերտերով վերագրվում են մ. թ. ա. V հազ.։ Դրանք նույնական են Անտիոքի դաշտի Ամուկյան շերտի նյութերի հետ և շատ են մերձենում Ջարմոյի VI հազ. գործիքներին[10]։ Այս համադրությունների մեջ խիստ ուշագրավ է այն փաստը, որ Չաթալ-Հույուքի նշված և այլ շերտերում հայտնի են դարձել նեոլիթյան հոյակապ սրբատեղիներ, որոնց կրոնապաշտամունքային որմնանկարները[11] զգալիորեն մոտենում են Գեղամա լեռների որոշակի ժայռագրերին թե՛ պատկերագրական և թե՛ կոմպոզիցիոն առումներով։ Պետք է ավելացնել, որ քարե այս գործիքները Վրաստանի արդեն հիշատակված V հազ. Իմիրիս Գորա հուշարձանում նույնպես ունեն իրենց մերձավոր զուգահեռները։ Վերը թվարկված Առաջավոր Ասիայի հուշարձաններից մի քանիսը պարզապես մտնում են հալաֆյան մշակույթի տարածքի մեջ։ Իսկ Արարատյան դաշտի Խաթունարխի և Թեղուտի նեոլիթ-էնեոլիթյան բնակավայրերն, անգամ ուսումնասիրության ներկա նախնական փուլում, ի հայտ են բերում շոշափելի աղերսներ այդ մշակույթի Ջագրոս-միջագետքյան հուշարձանների՝ մանավանդ Սինջարի հովտի Յարիմ-Թեփե բնակավայրի հետ, որը մանրակրկիտ ուսումնասիրության է ենթարկվում սովետական արշավախմբի կողմից[12]։ Հալաֆյան ժամանակաշրջանի (մ.թ.ա. V հազ.) Յարիմ-Թեփե բնակավայրում բացվել են Անդրկովկասի նեոլիթ-էնեոլիթյան մշակույթին հատուկ կացարանների սիստեմներ, նյութական մշակույթի բազում առընչակցվող առարկաներով ու գունազարդ խեցեղենի հիանալի ձևերով։ Դրանց մեջ, ի դեպ, քիչ չեն բեղոարյան այծերի, ջրային թռչունների, գիշատիչների պատկերներով զարդարված անոթները։ Սրանք մեր ժայռանկարների հետ կապվում են նույն կենդանատեսակների և երկնային մարմինները խորհրդանշող սիմվոլների առկայությամբ։ Միջագետքյան այս հուշարձանի նշանակությունը նեոլիթ-էնեոլիթյան մեր մշակույթի թվագրման ու մեկնաբանման խնդրում գնալով ավելի մեծ է դառնալու։

Առաջարկվող թվագրումը հաստատող վերը շարադրված բոլոր փաստարկներին ավելանում է նաև այն, կարևոր հանգամանքը, որ ոճական, պատկերագրական, կոմպոզիցիոն, տեխնիկական և մասշտաբային առումներով համանման նեոլիթյան ժայռանկարներով հարուստ են Փոքր և Առաջավոր Ասիայի՝ Հայաստանին կից մարզերը։ Դրանցից կարևորագույններն են՝ Թուրքիայի հարավ-արևելյան լեռնավայրերում 4000 մ բարձրության վրա տարածվող նեոլիթ-էնեոլիթյան ժայռանկարները[13], որոնք գրեթե լրիվին համապատասխանում են Մեծ Պայտասարի հնագույն նըմուշներին և վերջինների հետ նույն հարաբերությունն ունեցող Ագիամանի, Դեմիրկապեի և Դելբաբի[14] ժայռանկարները, որոնք տարածված են Միջագետքի հյուսիսային շրջաններում և հասնում Ասորիք, մինչև Պաղեստինի ծովեզրյա մասը[15]։

Մեծ Պայտասարի նեոլիթ-էնեոլիթյան ժայռապատկերների խումբը և նմանները Գեղամա լեռների այլևայլ հուշարձաններում աչքի չեն ընկնում բազմաքանակությամբ և լայն տարածմամբ, որ ապացույց է այս վայրերի ալպիական մարգագետինների յուրացման առաջին քայլերի։ Ակնհայտ է, որ նեոլիթյան ժամանակներից սկսած, որսորդության, անասնապահության և երկրագործության զարգացմանն առնթեր, տնտեսական կարևոր նշանակություն ունեցող այս վայրերն հաստատապես իրացվում են ավելի ու

---

[6] J. Mellaart, Excavations at Çatal-Hüyük, AS, v: XIV, 1964, p. 107—108, pl. 48, fig: 5, 25, 26, v. XV, p. 106, pl. XXIV, fig. 27—26:

[7] Նույն տեղում։

[8] Garstang, Prehistoric Mersin, Oxford, 1953, fig. 29.

[9] Von Oppenheim, Tell-Halaf, Berlin, 1943, pl. XXXV, fig. 18—21.

[10] Braidwood, Excavations in the Plain of Antioch, 1960, Chicago, pl: 119, fig. 2, 3.

[11] J. Mellaart, Earliest Civilizations of the Near-East, fig. 81, p. 97—98, fig. 50, p. 102.

[12] N. G. Merpert, R. M. Munchaev, Early Agricultural Settlements in the Sinjar Plain, Northern Iran, „Iraq", v. XXXV, 1973, p. 93—113, pl. XLVI—XLVII.

[13] N. Freh, Felszeichnungen, Türk Tarih Kurumu, Belleten, Ankara, 1957, v. XXI, fig. 84, p. 261—263.

[14] H. Bossert, Altsyrien, Tübingen, 1957, fig. 686—693, p. 44 etc.

[15] J. Mellaart, նշվ. աշխ., նկ. 47։

ավելի լայն չափերով։ Համապատասխանորեն մեծ տարածում են ստանում նաև լեռնային սրբատեղիները, որոնք ստեղծվում էին բաց երկնքի տակ՝ վերը նկարագրված պատկերախմբերի ձևով։

## ՎԱՂ ԲՐՈՆԶԵԴԱՐՅԱՆ ԽՈՒՄԲ (Մ.Թ.Ա. III ՀԱԶ.)

*Մեծ Պայտասարի ժայռանկարների զանազան խմբերում որոշակիորեն զատվում են նաև մ.թ.ա. III հազ. հուշարձանները։ Սրանք արդեն ի հայտ են բերում մի շարք գծեր ու առանձնահատկություններ, որոնք բնորոշ չեն նախորդ ժամանակաշրջանին և իրենց հետագա զարգացումն են ապրում բրոնզի հաջորդ փուլերում ու վաղ երկաթի դարաշրջանում։ Ամենից առաջ անհետանում են Ա ոճի այծապատկերները և լրովին փոխարինվում Ա$_1$ ոճով։ Կենդանական ու մարդկային պատկերները կրկնակի, եռակի, քառակի փոքրանալով, ընդունում են ավելի բարեկազմ ու շարժուն ձևեր, թեև պատկերագրման երկրաչափական ոճը շարունակում է մնալ հիմնականը։ Փոխվում են կենդանիների եղջյուրների դծադրությունները, նրանց վրա երևում են տարիքը չեշտող բշտիկներ, շատ են հանդիպում կապկպած ոտքերով այծանկարներ, մեծապես ավելանում է կենդանական ու մարդկային պատկերների քանակը, բարդանում, ավելի պատճառաբանված են դառնում կոմպոզիցիաները և վերջապես հանդես են գալիս խիստ ոճավորված պատկերներ, որոնք ստույգ ձևով կրկնում են մ.թ.ա. III հազ. սև փայլեցված խեցեղենի զարդամոտիվները (աղ. IV, նկ. 4—6)։ Միմիայն մ.թ.ա. III հազ. մեջ ներգծվող խեցեղենի դեկորատիվ մոտիվներն են դառնում նշված փուլի արվեստի հուշարձանների թվագրման ստույգ չափանիշները։*

*Այսպես, աղ. 62, նկ. 3 ժայռանկարի մեջ աչքի է դարնում Բ ոճի երկու հակադիր եռանկյունիներով կազմված կենդանու պատկերը, որը մերձ համապատասխանություններ ունի „Շենգավիթի[16] և համաժամանակյա այլ հուշարձանների խեցեղենի ներբագիծ փորագիր զարդերի հետ։ Խեցեղենի կենդանապատկերներում առանձնապես կարևոր նշանակություն ունեն միջանկյալ ոճի մի քանի «իծանկարներ»[17], որոնք երկուստեք մոտ են այծերի ժայռանկարային երկրաչափական ու եռանկյունաչափական ձևերին, բայց ստույգ չեն կրկնվում նրանցից և ոչ մեկի մեջ։ Հաջորդ ժայռանկարն (աղ. 9, նկ. 1) իր երեք գիշատիչների իրանների պլաստիկ ձևերով, վերջավորությունների և պոչի կառուցվածքով շատ է մոտենում նույն III հազ. խեցեղենի եռանկյունաչափական պատկերներին[18]։*

*Քննարկվող խմբի ժայռանկարների թվագրության համար չափանշային արժեք ունեն նաև թռչունների ոճավորված այն պատկերները, որոնք բնորոշ են միմիայն մ.թ.ա. III հազ. կիրառական արվեստի առարկաներին։ Այս տեսակետից հետաքրքիր է աղ. IV, նկ. 7 ժայռանկարը, որն ունի երեք պատկեր՝ այծ, թռչուն և օձ։ Թռչունը կտուցով բռնել է օձին։ Վերջին մոտիվը նույնությամբ կրկնվում է Հայկական լեռնաշխարհի, Անդրկովկասի և Առաջավոր Ասիայի կից շրջանների խեցեղենի վրա[19]։ Թռչունը բնորոշվում է եռանկյունի իրանով, ուժեղ, հաստ ոտով կամ ոտքերով, ոլոր գլխով։ Այս տիպի պատկերները շատ են մ. թ. ա. III—I հազ. և առանձին վերլուծության են ենթարկվելու ստորև։*

*Վաղ բրոնզեդարին բնորոշ հուշարձաններով հարուստ են նաև Փոքր Պայտասարի գագաթից հարավ, հարավ-արևելք, հարավ-արևմուտք ընկած երեք պատկերախմբերը, որոնք հանգամանորեն ուսումնասիրվել են 1969 թ. ընթացքում։ Այստեղ որսի տեսարաններում, իբրև կանոն, հանդես են գալիս շները (աղ. 15, նկ. 4, աղ. 33, նկ. 2), որսը պատկերող կոմպոզիցիաները դառնում են խիստ բազմապատկեր, էությամբ բազմազան և պատճառաբանված։ Դրանցից շատերը վկայում են կիսաքոչվորական անասնապահության ձևավորման ու համեմատաբար բարձր զարգացման մասին։ Ըստ այդմ, մեծ հետաքրքրություն է ներկայացնում այն հանգամանքը, որ այստեղ հաճախակի ներկայացված սայլերը բոլորն էլ քառանիվ են և խիստ բնորոշ դաշտային-երկրագործական մշակույթներին (աղ. 2, նկ. 1, 2)։ Դա ավելի քան հավանական է դարձնում մեր այն ենթադրությունը, որ լեռնային այս սրբատեղիները ժամանակին պատկանել են Արարատյան դաշտի բնակիչներին, որոնք հավասարապես բարձր մակարդակի են հասցրել և՛ անասնապահությունը, և՛ երկրագործությունը։*

*Հատկանշական է, որ թվարկած ժայռապատկերների մեջ, ինչպես և նույն քարերի վրա, նույն ժամանակամիջոցում, միևնույն ոճական ու տեխ-*

---

16 Ս. Սարդարյան, նշվ. աշխ., աղ. IX, նկ. 1։

17 Նույն տեղում, աղ. LX, նկ. 2 և մանավանդ C. Burney, Excavations at Yanik-Tepe, „Iraq", v. XXIII, 1961, pl. LXXV.

18 Է. Վ. Խանզադյան, Հայկական լեռնաշխարհի մշակույթը մ. թ. ա. 3-րդ հազարամյակում, Երևան, 1967, նկ. 25, աղ. XII, նկ. 2, ինչպես նաև՝ Ս. Սարդարյան, նշվ. աշխ., աղ. LXXI, նկ. 1։ Э. В. Ханзадян, Раннебронзовое поселение близ селения Аревик, СА, 1964, № 4, рис. I, 3—5.

19 C. Burney, նշվ. աշխ., „Iraq", XXIII, pl: LXXI, fig. 14, pl. XX, fig. 7—13.

նիկական առանձնահատկություններով քանդակված պատկերներում (աղ. 68, նկ. 2) շատ հաճախ են հանդիպում մ.թ.ա. III հազ. խեցեղենին բնորոշ եռանկյունաչափական այն կենդանապատկերները, որոնց մասին խոսվեց վերևում։ Փոքր Պայտասարի այդ տիպի պատկերներից մեկում երկիրը բեղմնավորող արեգակնային աստվածների կամ ոգիների շրջակայքում սովորական $Ա_1$ ոճի այծերի հետ ներկայացված են նաև խիստ ոճավորված երկրաչափական այծապատկերներ, որոնք կրկնում են III հազ. խեցեղենի զարդամոտիվները։ Այլ պատկերների մեջ զանազանվում են խաչաձև միջուկ և երեք ճառագայթ ունեցող արևի սկավառակը, ցուլը, թռչունը և մի քանի թևատարած մարդուկներ։ Ժայռապատկերն ունի նաև մ.թ.ա. II հազ. հավելումներ, որոնք գլխիվայր շրջված եղնիկների և այծերի պատկերներ են (աղ. 69)։

Մ.թ.ա. III հազ. հնագիտական նյութերի վերջին հրատարակությունների հիման վրա այժմ կարելի է ժամանակագրական որոշ երանգներ դիտել նաև մեր ժայռանկարների եռանկյունաչափական (ոճ Բ) ձևեր ունեցող կենդանապատկերներում։ Խնդիրն այն է, որ սրանց զուգահեռները խեցեղենի մեջ հանդիպում են գերազանցապես հուշարձանների շենգավիթյան խմբում, որի շինարարական չորս շերտերը, երբեմն բնորոշ-գունազարդ անոթներով, վերաբերում են, մեր կարծիքով, մ.թ.ա. III հազ. կեսերին[20]։ Այժմ այդ տեսակետը որոշ չափով հաստատվում է Արևմտյան Հայաստանի Խարբերդի շրջանի Պուլուր (Բլուր) բազմաշերտ բնակավայրի պեղումներով[21]։ Թեև հուշարձանն ունի տեղական ցայտուն առանձնահատկություններ, սակայն նյութական արտադրության և արվեստի առարկաների (օջախներ, արձանիկներ, խեցեղենի դեկորներ, գունազարդ խեցեղեն և այլն) տիպաբանական հատկանիշներով այն սերտորեն առնչվում է Արևելահայաստանի մի շարք հուշարձանների հետ։ Այս նյութերի մեջ առանձնապես ուշագրավ են 7—8-րդ շերտերում հայտնաբերված գունազարդ անոթները, որոնցից մեկը զարդարված է կարմիր թռչնապատկերներով, իսկ մյուսը՝ դարձյալ կարմիր այծապատկերներով։ Այս վերջինները եռանկյունաչափական մեր պատկերների նման ունեն սրածայր եռանկյունիներից միակցված իրաններ՝ մեջը թեք գծերով լցուն, մեջքին կորացող կամարաձև եղջյուրներ և դարձյալ նույնպես թեք գծերով լցուն գերապրուկային վերջավորություններ։ Պուլուրի 8-րդ շերտը թվագրված է ռադիոկարբոնի մեթոդով 2420 ± 200 (2470)։ Նշված ոճի պատկերները 8-րդ շերտից ներքև չեն հանդիպում։ Ըստ երևույթին, դրանք ավելի բնորոշ են մ.թ.ա. III հազ. երկրորդ կեսին։ Հնարավոր է, որ ժամանակագրական այդ երանգը ընդհանրություն ունի նաև ժայռապատկերների հետ։ Ժամանակագրական մի այլ երանգ ունեն քառանկյունաձև, ներճկված կողերով (իրանը կեա-հարվածային եղանակով մշակված) այծապատկերները (ոճ Գ, աղ. 68, նկ. 2, աղ. 20, նկ. 1, աղ. 29, աղ. 3, նկ. 1—2, աղ. 74, նկ. 2, աղ. 69), որոնք սակավ բնորոշ են մ. թ. ա. III հազ. մշակույթին և ձևական առումով հարում են մ.թ.ա. II հազ. սկզբներից գունազարդ խեցեղենի եռանկյունաչափական սև պատկերներին, բայց ունեն գերապրուկային հավելումներ և գունազարդի պատկերներից ավելի հին են։

Գ ոճի այծապատկեր ունեցող ժայռանկարները հավանորեն պետք է վերագրվեն մ.թ.ա. III հազ. վերջին քառորդին։

## Մ. Թ. Ա. II ՀԱԶ. ԱՌԱՋԻՆ ԿԵՍԻ ՊԱՏԿԵՐԱԽՈՒՄԲ

Մեծ ու Փոքր Պայտասարի գագաթների պատկերախմբերում առայժմ կարելի է հստակորեն տարբերազատել նաև մ.թ.ա. II հազ. առաջին կեսին պատկանող ժայռագրերը։ Սակայն պատկերագրական, ոճական և մանրամասների արտահայտման որոշակի առանձնահատկությունների հիման վրա նշված ժամանակաշրջանին, անկասկած, կարելի է վերագրել մի քանի տասնյակ կոմպոզիցիաներ։ Այս խմբում իսպառ բացակայում են Ա և $Ա_1$, Բ, Գ ոճերի եռանկյունաչափական այծապատկերները (եթե նրանք նշանագրեր չեն), կենդանապատկերներն ընդհանրապես ընդունում են երկարուկ ձևեր՝ մեջքի կորությամբ կամ ներճկվածությամբ, վիզն ու գլուխը առանձնացվում են իրանից։ Պրոֆիլով ներկայացված որսորդների աջ թևը կազմում է կիսաշրջան, իսկ ձգված նետը՝ նրա շարունակությունը։ Այծերի եղջյուրները ավանդական կիսաշրջանի փոխարեն ավելի ուղղաձիգ են դառնում։ Կոմպոզիցիաներում համեմատաբար հաճախ են հանդիպում պոզերի լայն բացվածք ունեցող եղջերուների ու երկարիրան, կեռպոչ շների և թռչունների պատկերներ, որոնք կրկնում են մ.թ.ա. II հազ. առաջին կեսի գունազարդ խեցեղենի զարդամոտիվները։ Պատկերներից շատերն այս կոմպոզիցիաների մեջ պահպանում են մ.թ.ա. III հազ. ավանդական ձևերը և փորագրվում նոր

---

[20] А. А. Мартиросян, Армения в эпоху бронзы и раннего железа, Ереван, 1964, стр. 26.

[21] H. Koşay, Pulur Excavations, 1968—1970, Keban project, Ankara, 1976, p. 129—131, fig. 7—8, cat. 82, 109, 110, 124, 180, 185, p. 229—230.

ոճի պատկերների հետ միասին։ Այս խմբում էլ մեծ տեղ են գրավում ավանդական որսի տեսարանները։ Դրանցից մեկում (աղ. IV, նկ. 10) շան պատկերը գրեթե նույնությամբ համապատասխանում է Մարտունու շրջանի Ներքին Գետաշեն գյուղի գունազարդ անոթի շների պատկերին (աղ. VI), որոնք նույնական կոմպոզիցիայի մեջ հետապնդում են վազող այծերին ու եղջերուներին (աղ. VI)[22]։ Գունազարդ խեցեղենի այս տիպը թվագրվում է մ.թ.ա. XVIII—XVII դարերով։ Մյուս տեսարանում պատկերված նետահարող որսորդը, այծերը, շներն ու եղջերուն նույնպես մոտենում են Գետաշենի օրինակին թե՛ պատկերագրական առումով, թե՛ ընդհանուր դինամիկայով (աղ. IV, նկ. 8)։ Երրորդ տեսարանում մեծ արու եղջերուին հետապնդում են աղեղնավոր որսորդն ու շունը, որը նույնպես պատկանում է նշված գետաշենյան օրինակին (աղ. IV, նկ. 9)։ Եղջերուների որսը ներկայացնող հաջորդ տեսարանն (աղ. 57, նկ. 1) ավելի հարուստ է և հետաքրքիր։ Այստեղ փորագրված երեք եղջերուներն էլ ընդհանրություններ ունեն Գետաշենի պատկերների հետ՝ եղջյուրների, գլխի, իրանի և այլ մանրամասների գծագրության մեջ։ Հինգ աղեղնավոր որսորդներից երեքը շրջապատել են արու եղջերուին, երկուսը՝ էգին, իսկ ձագուկն ազատ է մնացել։ Աղեղնավորների աջ և ձախ թևերը մեկ ընդհանրացված հորիզոնական գիծ կամ ձվածիր օղակ են կազմում։ Մեկ այլ դեպքում թևերն ու աղեղը երկու հակադիր կիսաշրջաններից են բաղկացած։ Կիսակլոր աղեղները փոքր չափեր ունեն։ Գետաշենյան պատկերներին հար և նման երկու եղջերուներ էլ կան հինգերորդ ժայռանկարում. եղջերուներից մեկին և այծին հետապնդում են ընձառյուծներ։ Ձախից վրա հասած որսորդը նետահարելով գազաններից մեկին, ձգտում է փրկել եղջերուին (աղ. 39, նկ. 1)։ Նման տեսարանները մեծ տեղ են բռնում Գեղամա լեռների նաև այլ սրբատեղիներում։

Այս խմբում ներկայացված են նաև տեսարաններ, որոնք անմիջապես չեն կապվում որսի հետ։ Բերենք դրանցից մի քանիսը։ Աղ. IV, նկ. 11—12 ժայռագրերում միաշար կամ երկշար դասավորությամբ պատկերված են եղջերուի, շան, այծի, ջրային թռչունների պատկերներ, որոնք պարզապես քիչ են տարբերվում գետաշենյան և գունազարդ խեցեղենի այլ տիպերի նմուշներից, ինչպես նաև այծերի ավանդական գծապատկերներ, որոնք ծայր են առնում III հազ. և այդուհետև հանդիպում բոլոր պատկերախմբերում (աղ. IV, նկ. 1, 13)։ Երկու տարբեր ոճերով կատարված այծերի փոքրիկ հոտ է ներկայացված նաև աղ. IV, նկ. 15 պատկերում։ Սրանց մի մասն ունի մ.թ.ա. III հազ. գծապատկեր՝ այծերի ձևերը մեջքի երկարությամբ տարածված կիսաշրջանաձև եղջյուրներով, առանց գլխի, վզի և այլ մանրամասների շեշտվածության։ Մյուս երեք այծերի վիզը, մռութը, եղջյուրները և պոչերը խիստ շեշտված են և նման Գետաշենի հիմնօրինակին։

Մ.թ.ա. II հազ. առաջին կեսի ժայռապատկերների ժամանակագրական առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ սրանց մեջ իսպառ վերանում է մ.թ.ա. III հազ. կանոնիկ թռչնապատկերը՝ սուրանկյան կամ հավասարանիստ եռանկյան ձևի իրանով։ Այս շրջանի թռչունները լրիվին չեն կորցնում իրանի եռանկյուն ձևը, սակայն եռանկյունին ավելի տափականում է և հիմքի (փորի) մասում որոշ չափով կորանում։ Թռչունի գլուխն ու վիզը ավելի են մոտենում բնորդին, ոտքերը հավաքվում, ծալվում են փորի տակ կամ լրիվ փակվում. պատկերն ընդունում է ջրային թռչունի՝ բադի կամ սագի տեսք, որոնց պատկերներով լի է միջին բրոնզեդարյան գունազարդ խեցեղենը[23]։ Ինչպես ժայռանկարներում, այնպես էլ գունազարդ խեցեղենի դեկորներում այս թռչունները հանդես են գալիս «երկնակամարում», հաճախ երկնային մարմինների երկրաչափական սիմվոլների հետ։ Ժայռանկարների II հազ. թռչունների մեջ կան շատ գեղեցիկները, բացված, երկարած ոտքերով ու մատների բնորոշ արտահայտությամբ, որոնք ավելի նման են վիշապաքարերի վրա երբեմն հանդիպող նրանց գեղեցիկ պատկերներին։ Ընդհանրապես II հազ. թռչնապատկերներին շատ բնորոշ են քիչ ոճավորված կամ ոճավորումից բոլորովին զերծ ճախրող թռչունների հիանալի նմուշներ (աղ. VII նկ. 2, 3, 6)։

Այս շրջանի պատկերների մեջ կա համադրության ևս մի եզր։ Խոսքը վերաբերում է ոճավորում ունեցող պաշտամունքային ցլապատկերների տիպերից մեկին, որը շատ բնորոշ է Գեղամա լեռների ժայռապատկերներին և օգտագործվում է ժամանակագրական համեմատաբար կարճ հատվածում։ Ցլապատկերների այդ խումբը բնորոշվում է իրանի անջատ, ընդհանրացված խոշոր ակոսային փորագրությամբ և առանձնապես գլխի

[22] Ա. Ա. Քալանթարյան, Ժ. Դ. Խաչատրյան, Հնագիտական հազվագյուտ հայտնագործություն Սևանի ավազանից, «Լրաբեր», 1969, № 4, էջ 75—77։ Կենդանաբան Մեժլումյանի կարծիքով սրանք ընձառյուծներ են, որ շատ նման են շների։

[23] Հ. Ա. Մարտիրոսյան, Հայաստանի նախնադարյան նշանագրեր, Երևան, 1973, աղ. I, նկ. 18, աղ. XIV, սյուն. 1, նկ. 2 բ։

ոճավոր ձևավորումով, որի մեջ շեշտված գծերով առանձնացվում են կենդանու ճակատն ու մռութը, խոշոր աչքերը, ականջները և բերանը, որից երբեմըն ջուր է հոսում։ Կենդանու մարմինը սովորաբար ներկայացվում է պրոֆիլով, իսկ գլուխը՝ անֆաս։ Մարմնի, գլխի և վերջույթների բնորոշ ձևերով այս կենդանապատկերները լրիվին կրկնվում են նույն Գեղամա սարերի Թոխմախան լճի վիշապաքարերի վրա[24]։ Այս պատկերները կազմում են մ.թ.ա. II հազ. առաջին կեսի վերին ժամանակագրական սահմանը և բոլորովին չեն հանդիպում ուշ բրոնզեդարյան (մ.թ.ա. II հազ. երկրորդ կես) պատկերախմբերում (աղ. VII, նկ. 1, 4, 5)։

## ՈՒՇ ԲՐՈՆԶԵԴԱՐՅԱՆ ՊԱՏԿԵՐԱԽՈՒՄԲ (Մ. Թ. Ա. XIV—X ԴԴ.)

Արդեն առիթ է եղել նշելու, որ մ.թ.ա. II հազ. երկրորդ կեսի ուշ բրոնզեդարյան պատկերները Գեղամա լեռներում կազմում են ժամանակագրական տեսակետից հստակորեն առանձնացվող խմբեր։ Դրանք պատկերագրական, ոճական, կոմպոզիցիոն և բազմաթիվ այլ ընդհանրություններ ունեն մոտավորապես մ.թ.ա. XIV—X դդ.՝ Լճաշենի, Տոլորսի, Արթիկի արձանիկների, խեցեղենի գծապատկերների, Ղարաբաղի, Գետաբեկի և Սովետական Հայաստանի բազմաթիվ այլ վայրերի բրոնզե գոտիների սյուժեների հետ։ Այս խմբերում առանձնապես աչքի են զարնում դիմակավորված ու զգեստավորված որսորդների «ծանրաշարժ», լիակոնտուր պատկերները, լայնալիճ, պարզ ու բարդ հսկա աղեղները, նեղ աղեղները, կենդանիների երկշար ու եռաշար դասավորությունը, խիստ ոճավորված ձևերը, մագիլավոր ֆանտաստիկ ընձառյուծների պլաստիկ նկարները, արևի, լուսնի, ամպրոպ-կայծակի ոգիների կամ աստվածների խիստ ոճավորված պատկերները, որսի բարդ տեսարանները և այլն[25]։

Մեծ և Փոքր Պայտասարի 1969—1970 թթ. ուսումնասիրված հուշարձանները հաստատում և խորացնում են մեր նախնական դիտողությունները։ Այդ տեսակետից առավել մեծ հետաքրքրություն են ներկայացնում անավարտ մնացած որսի տեսարանները, որոնց փորագրության տեխնիկան քննարկվեց վերևում։ Դրանցից մեկում (աղ. 47, նկ. 2) դիմակակիր, զգեստավորված և ոտնամաններով որսորդը նետահարում է ճողոպրող դիշատչին։ Կոմպոզիցիայում առկա են գծապատկերային աղեղներ, նետեր ու որսորդի մի այլ պատկեր։ Զգեստավոր որսորդի աղեղի ու նետի չափերը գերազանցում են իր պատկերին։ Աղեղի երկու ծայրերը կեռ են, լարը խիստ պրկված, նետասլաքը եռանկյունի է և համընկնում է XI—IX դդ. դամբարաններից հայտնաբերված բրոնզե նետասլաքներին, իսկ որսորդի պատկերն ամբողջությամբ՝ Լալվարի, Սևանի, Վրաստանի նույն ժամանակաշրջանի բրոնզե գոտիների որսորդների պատկերներին[26]։ Մնացած երեք աղեղները գծագրված են մետաղյա հատիչով, կարկինի օգնությամբ, որը հատուկ է պատկերազարդ բրոնզե գոտիներին և մ.թ.ա. I հազ. խեցեղենի դեկորներին, որի անավարտ նմուշները հանդիպում են Դվինի նախաուրարտական շերտերի նյութերում (մ.թ.ա. IX—VII դդ.)։

Նման տեխնիկայով ու ոճով են իրականացված Փ. Պայտասարի ևս երկու թերավարտ որսի տեսարաններ, որոնք ոճական զուգահեռներ ունեն Դիլիջանի կավե թասիկի (մ.թ.ա. I հազ. սկիզբ) որսորդական տեսարանի դեկորների հետ[27]։ Այս խմբի այծորսի տեսարաններից մեկում (աղ. 47, նկ. 1) աջից, որսորդի փոխարեն ներկայացված է այլ տիպի աղեղ։ Սա պատկանում է բարդ աղեղների տիպին՝ կենտրոնական մասում դուրս ճկված, ծայրերը տափակեցված և ամբողջությամբ կրկնում է բրոնզե գոտիների բարդ աղեղների տիպը։ Աղեղի և նետասլաքի եռանկյունի ձևը ճըշգրիտ զուգահեռներ ունի մ.թ.ա. X դ. նյութերի մեջ։

Այծորսի տեսարաններում դիտված ժամանակագրական երանգները հաստատվում են նաև եղջերուների որսին վերաբերող մի ամբողջ պատկերախմբի նյութերի քննարկմամբ։ Այս պատկերախմբերում եղջերուներին որսում են նետ ու աղեղի, պարանների օգնությամբ կամ պարզապես ձեռքով՝ բոլոր կողմերից շրջափակելով փոքրիկ հոտերը։ Այս պատկերների մեջ էլ հանդես են գալիս մ.թ.ա. II հազ. վերջերի և I-ի սկզբների նույն բարդ աղեղն (աղ. 40, նկ. 2) ու եռանկյունաձև նետասլաքները։ Այս խմբի եղջերուների պատկերները եղջյուրների ոճավորման ձևով բաժանվում են երկու որոշակի տիպի, որոնք բնորոշ են նշված ժամանակաշրջանի կիրառական արվեստի հուշարձաններում հանդիպող այդ կենդանապատկերին։ Երկու ոճերին էլ բնորոշ են եղջյուրի միակողմանի ճյուղավորման պատկերումը, սակայն մի դեպքում ճյուղերը կեռ են (աղ. 54, աղ. 55, նկ. 1) մյուս դեպքում՝ ուղիղ և թեք

[24] Н. Я. Марр, Я. И. Смирнов, Вишапы, Л., 1931.

[25] Б. Н. Аракелян, А. А. Мартиросян, Археологическое изучение Армении за годы Советской власти, СА, 1967, № 4, стр. 28—29.

[26] Б. Б. Пиотровский, Археология Закавказья, Л., 1949, табл. IX.

[27] А. А. Мартиросян, Армения в эпоху бронзы и раннего железа, Ереван, 1964, рис. 46.

գրված (աղ. 55, նկ. 2)։ Պատկերագրական և ոճական առումներով (աղ. 55, նկ. 1) եղջերուները կրկնում են Նոյեմբերյանի շրջանի «Հարսնաքարի» դամբարանադաշտում հայտնաբերված բրոնզե գոտու նույն կենդանու պատկերները[28]։ Ինչպես երևում է առանձին բեկորներից, այդ գոտու վրա էլ որսի տեսարան է պատկերված եղել։ Այդ երևում է լայնալիճ-բաղադրյալ ձևավոր աղեղից և եռանկյունաձև նետասլաքից, որոնք առկա են մի մանրամասնի վրա՝ որսորդի աջ թևի և իրանի վերին հատվածի հետ միասին։ Նույն տեսարանը նույն պատկերներով կրկնվում է Ա. Ա. Իվանովսկու կողմից հրատարակված բրոնզե գոտու վրա[29], որը նույնպես ծագում է պատմական Հայաստանի տարածքից։ Ժայռապատկերների ընդհանրությունները ուշ բրոնզեդարյան գոտիների հետ այնքան մեծ ու նշանակալից են, որ մնում է ենթադրել, թե վեմերի վրա փորագրողներն էլ մետաղագործ վարպետներ են եղել, որոնք առանձին համարում են ունեցել իրենց պաշտամունքային գործերը կերտելիս։ Նման ենթադրությունը կարելի է հաստատել նույնատիպ պատկերների բազմաթիվ կրկնություններով, ուր զգացվում է միևնույն վարպետի ձեռքը։ Այդպիսին է, օրինակ, աղ. 55, նկ. 1-ը, որի վրա ճշտությամբ կրկնվում են աղ. 54-ի եղջերուները՝ երկշար դասավորությամբ և մի մարգ, որ ուղղել է թևերը դեպի կենդանու մռութը։ Կենդանիների եղջյուրների վերևում գաղափարագիր նշան կա։ Կառուցվածքի ու ոճի տեսակետից այս եղջերուները շատ նման են նաև Լծենի բրոնզե մանրաքանդակ արձանիկներին, որոնք իրենց ամբողջ համալիրով թվագրվում են մ.թ.ա. XI—IX դարերով[30]։ Ինչպես նախորդ շրջաններում, այնպես էլ ուշ բրոնզի դարաշրջանում միշտ չէ, որ որսորդներն սպանում էին կենդանիներին։ Փոքր Պայտասարի ժայռանկարներից մեկի (աղ. 58, նկ. 2) կենտրոնում մի այծ և չորս եղջերու են պատկերված։ Նրանք ընկած են շուրջկալի մեջ։ Եղջերուները ներկայացված են նուրբ գծանկարով, նրանց եղջյուրները հիշեցնում են մասամբ Հաղպատի, մասամբ Քալաքենդի գոտիների և Շամիրամի կրոմլեխների պատկերները[31]։ Այստեղ առկա են եղջերուների պատկերման տարբեր ոճեր, որոնք բնորոշ են թե ժայռապատկերներին, թե բրոնզե գոտիներին։ Արվեստի այս երկու հուշարձաններում էլ առկա են համանման գաղափարագիր նշաններ, որոնք մեծ մասամբ կապ ունեն աստղային երկնքի հետ։

## ՎԱՂ ԵՐԿԱԹԵԴԱՐՅԱՆ ՊԱՏԿԵՐԱԽՈՒՄԲ (Մ.Թ.Ա. II ՀԱԶ. ՎԵՐՋ—I ՀԱԶ. ՍԿԻԶԲ)

Մեծ Պայտասարի ստորոտում ժայռանկարների մինչև այժմ չնկատված մի հետաքրքրաշարժ խումբ էլ կա, որ կապ չունի որսի, հմայության և այլ տեսարանների հետ։ Այս խմբի հսկա ժայռաբեկորների մակերեսներին քարե թակիչների օգնությամբ համաչափ շրջանակների (միջին տրամագիծը 17—22 սմ) խմբեր են փորագրված (աղ. VIII, նկ. 1)։ Հայաստանի այլ վայրերում նման շրջանակների հետ միասին կամ նրանց փոխարեն հանդես են գալիս հորիզոնական շարքերով դասավորված զուգավորություններ՝ մարդկային սխեմատիկ պատկերների հարևանությամբ։ Նախնադարյան պատկերագրության մեջ շրջանակներով միշտ էլ խորհրդանշվում են երկնային մարմինները, աստղաբույլերը կամ պարզապես աստղային երկինքը, իսկ նրանց հետ հանդես եկող մարդկային պատկերները ներկայացնում են նախնիների ուրվականները կամ ոգիները՝ երկնային մարմինների զուգորդությամբ։

Հին հայերի պատկերացմամբ ևս նախնիների ուրույն աշխարհը երկինքն էր, ուր նրանք համաստեղություններ էին դառնում և իրենց աստղային գոյությամբ հրաշագործ ազդեցություն գործում յուրայինների ճակատագրի վրա։ Որ Մեծ Պայտասարի «շրջանակավոր քարերը» իրոք կարող են կապված լինել նախնիների պաշտամունքի հետ, հաստատվում է Շամիրամ գյուղի վաղ երկաթեդարյան դամբարանների (կրոմլեխների) ուսումնասիրությամբ (աղ. VIII, նկ. 2)։ Սրանց շուրջանակի շարված քարերի մակերեսներին ևս ծեծված են տարբեր քանակի համաչափ շրջանակների խմբեր, որոնք չեն զանազանվում նախորդներից ո՛չ կատարման եղանակով, ո՛չ չափերով և ո՛չ էլ ձևով։ Դամբարանաքարերի վրա այս շրջանակները երբեմն փոխարինվում են զուգավորություններով և ուղեկցվում բազմաթիվ մարդկային և կենդանական ոճավորված պատկերներով (աղ. VIII, նկ. 3, 10, 12), որոնք բացահայտում են անդրշիրիմյան աշխարհի և աստղազարդ երկնքի կապը նախնադարյան պատկերացումներում։ Այդպիսին են նաև Գեղամա ժայռապատկերների ուշ ժամանակաշրջանի ոճերն ու տեսակները (աղ. VIII, նկ. 13, 15)։ Նախապես նշենք, որ Շամիրամում ուսումնասիրված դամբարանները տալիս

---

[28] Ս. Ս. Չիլինգարյան, *Հարսնաքարի հողերի դամբարանադաշտը*, «Լրաբեր» (հաս. գիտ.), 1969, № 10, աղ. 51։

[29] А. А. Ивановский, По Закавказью, Материалы по археологии Кавказа, VI, рис. 26.

[30] А. А. Мартиросян, Армения в эпоху бронзы..., стр. 150—153, рис. 61—62.

[31] *Տե՛ս* А. А. Мартиросян, *նշվ. աշխ., էջ 137, նկ. 57,* Ռ. Վիրխով, *Կովկասի անդը քաղաքակրթության մեջ, «Ազգագրական հանդես», Ա գիրք, 1895, նկար 15։ Շամիրամի՝ մեր կողմից հավաքված նման պատկերները տե՛ս ստորև։*

*րում ունի հազարավոր հուշարձանների համանման խմբեր ոչ միայն Գեղամա լեռներում, այլև Հայաստանի այլ վայրերում և այդ չափով դա ընդհանուր է Հայկական լեռնաշխարհի գոնե արևելյան մասի վերաբերյալ։ Սակայն այդ դասակարգումը այժմ մանրակրկիտ մշակման չի ենթարկված և ունի բազմաթիվ բաց կետեր, որովհետև նախնադարյան արվեստի զարգացումն Հայաստանում թռիչքաձև անցումներ չունի, այլ ընթացել է ավանդական-էվոլյուցիոն ճանապարհով։ Նոր ոճերի, պատկերագրական ձևերի անցումները չափազանց աննշան, սահուն և աննկատելի են, պատմական որևէ ժամանակաշրջանում առաջ եկած ոճերը պահպանվում են հազարամյակներ անընդհատ և կատարելագործվում դանդաղ, աննշան փոփոխություններով։*

## ԳԼՈՒԽ ԵՐԿՐՈՐԴ

# ՈՐՍՈՐԴԱԿԱՆ ՏԵՍԱՐԱՆՆԵՐԻ ՍՅՈՒԺԵՏԱՅԻՆ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆԸ

### ԵՐԹԵՎԵԿՈՒԹՅԱՆ ՄԻՋՈՑՆԵՐ ԵՎ ՄԵԿՈՒՍԻ ՊԱՏԿԵՐՆԵՐ

*Քննարկվելիք ժայռանկարների սյուժեները բովանդակում են ժամանակի նյութական ու հոգևոր կյանքի դրեթե բոլոր ասպարեզները, որով իսկ դառնում են արժեքավոր նախնադարի ուսումնասիրության համար։ Ժայռանկարների առաջացումն ու զարգացումը Գեղամա լեռների գագաթամերձ վայրերում անմիջականորեն կապված էր ալպյան արոտավայրերի իրացման և նրանց հարատև օգտագործման հետ։ Սրանք նոր զարգացող անասնապահության հզորագույն բազաներ էին իրենց զովաշունչ օդով, թարմ կանաչով, հրաբխային կոներում առաջացած լճերով, գետ ու գետակներով, լեռնային ջինջ աղբյուրներով։*

*Սակայն սրանց իրացումը վաղ անասնապահ-երկրագործների համար այնքան էլ դյուրին չէր։ Անհիշելի ժամանակներից, համենայն դեպս, վաղ հոլոցենից սկսած այս արոտավայրերը պատկանում էին վայրի կենդանիներին, հանդիսանում նրանց «պապենական տիրույթները» և դրանց տիրելու համար հարատև, անզիջում, իսկական պատերազմ էր պետք։ Կենդանիներին հարկավոր էին իրենց «տիրույթները», իսկ մարդիկ այլևս չէին կարող ապրել առանց անասնապահության։ Այդ պատճառով էլ քարեդարյան ժամանակներից սերված որսորդությունը էնեոլիթ-բրոնզեդարյան փուլերում ապրեց իր երկրորդ ծաղկումը, դարձավ ոչ միայն հանրային հոտը պաշտպանելու և աճեցնելու միջոց, այլև տնտեսության հիմնական ճյուղերից մեկը։ Որսորդությունը հասավ շատ բարձր մակարդակի, որսում էին մեկուսի և խմբերով, մահակների, նիզակների, պարանների, նետ ու աղեղի, ցանցերի, թակարդների օգնությամբ, շուրջկալներով, ջրաբերքի վայրերում և վերջապես շատ անգամ անգին ձևերով՝ անձնական հմտությամբ, ճարպկությամբ, կենդանիների սովորությունները և հատկությունները լավ ճանաչելու և օգտագործելու միջոցով։ Միշտ չէ, որ որսը վերջանում էր մարդու հաղթանակով, այն միշտ էլ եղել է ծանր ու վտանգավոր զբաղմունք։ Այդ պատճառով էլ որսորդ-անասնապահը հսկայական ուժ ու ժամանակ էր վատնում, հավարավոր պատկերներ փորագրում որձաքարի ապառաժ ժայռերի վրա, որպեսզի կրոնական արարողության կամ նմանողական սիմպատիկ հմայության օգնությամբ անիրականը իրական դարձներ՝ որսի մեջ հաջողություն ունենար։ Հենց սրանով է բացատրվում Գեղամա լեռների ու այլ վայրերի որսորդական տեսարանների առատությունն ու բազմազանությունը, դրանց հարատևումը հազարամյակների ընթացքում։*

*Գեղամա գագաթների դժվարին լեռնային կածանները քաջ ծանոթ էին վաղ նեոլիթյան առաջին որսորդ-անասնապահներին, սակայն առանձնապես բանուկ դարձան էնեոլիթ-վաղ բրոնզեդարյան շրջանում (մ.թ.ա. IV—III հազ.)։ Կիսաքոչվորական անասնապահության պայմաններում զգալի դեր էին կատարում զանազան կարգի փոխադրամիջոցները՝ գրաստն ու սայլերը, որոնք Առաջավոր Ասիայում, ինչպես նաև Հայաստանում երևացել են արդեն մ.թ.ա. III—I հազ.։ Մեր հեռավոր նախնիները ապառաժ ժայռերի վրա նկարել են բազմաթիվ սայլեր, որոնք այնքան օգնել են քոչվորին դժվարին կյանքում։*

Սայլեր—*Գեղամա լեռներում փորագրված սայլապատկերները, ամբողջությամբ վերցրած, թվագրվում են մ.թ.ա. III—I հազարամյակներով։ Նրանք պատկերվում են առանց լծկանի կամ եզներով, խիստ ոճավորված և բաժանվում են երեք հիմնական խմբերի։*

*Առաջին խումբն իր ձևով ու կառուցվածքով խիստ վաղնջական է. նրա ծագումը կարելի է վերագրել էնեոլիթյան ժամանակներին (IV հազ.) երբ Արևելքում երևացին առաջին պարզունակ փո-*

*խաղրամիջոցները, որոնք զուրկ էին նույնիսկ անիվներից, ունեին թեթև թափք, ուղիղ առեղ, լուծ և քարշ էին տրվում գերազանցապես եզների օգնությամբ։*

Աղ. 1, Նկ. 3—*Դրանցից առաջինը պատկանում է մ.թ.ա. III հազ., ունի կլորավուն քաշան, առեղ, լուծ և երկու խիստ ոճավորված եզներ։ Սայլի դիմաց պատկերված է նույնպես ոճավորված մարդակերպ մի պատկեր։*

Աղ. 1, Նկ. 2—*Երկրորդ քաշանը փորագրված է այծի ու հեծյալի պատկերների հետ միասին, ունի քառանկյունի լայնակի թափք, ուղիղ առեղ ու լուծ, ինչպես նաև զույգ եզներ։*

Աղ. 1, Նկ. 1—*Կա նաև եզներով լծված քաշանի երրորդ տիպը, որի համար շատ բնորոշ է եռանկյունաձև թափքը։ Այս քաշանի կողքին առկա են ուշ ժամանակի այծի (ոճ Ա$_2$) և հեծյալի պատկերներ։ Կարելի էր ենթադրել, որ նախնադարյան նկարիչները պարզապես մոռացել կամ չեն հասցրել փորագրել սայլի անիվները։ Սակայն անիվազուրկ քաշանները հանդիպում են նախնադարյան ցեղերի ու ժողովուրդների արվեստի բազում հուշարձաններում, նույն թվում նաև Հայաստանի ժայռապատկերներում և դրանով իսկ մատնանշում, որ բրոնզեդարյան Հայաստանում և այլուր հնագույն այդ փոխադրամիջոցը շարունակում էր հարատևել սայլերի արդեն բավականաչափ զարգացած տիպերի կողքին։ Վերը նկարագրված քառանկյունաձև տիպի քաշաններ հանդիպում են Սյունիքի (Ուղտասար) մ.թ.ա. II—I հազ. սահմանագլխի ժայռապատկերներում[1]։ Այստեղ առկա են նաև քաշանների փոքր-ինչ ավելի զարգացած տիպեր[2], որոնք իրենց զուգահեռներն ունեն աշխարհի բազում բրոնզեդարյան ժայռանկարներում։ Քառանկյունաձև նախնական տիպի քաշաններ հանդիպում են Կովկասի և հարավ ռուսաստանյան շրջանների ժայռանկարներում[3], իսկ Սյունյաց զարգացած տիպերը՝ նաև եվրոպական ժայռարվեստում[4]։ Հետաքրքիր է, որ Գեղամա լեռների մնացած բոլոր սայլատիպերն իրենց ձևերով ու կառուցվածքով ծագումնաբանորեն հիմնավորապես կապված են քաշանների վաղընջական խմբերի հետ, և նրանց զարգացումն ու փոփոխությունները արտահայտվում են միայն կարևոր տարրերի հավելումով։*

*Այդ առումով արտակարգ հետաքրքրություն է ներկայացնում մ.թ.ա. III հազ. քառանիվ սայլերի պատկերախումբը, որ հայտնաբերված է Փոքր Պայտասարի գագաթից քիչ հեռու՝ վաղ բրոնզեդարյան տիպական ժայռապատկերների խմբում։ Սրանք, անկասկած, դաշտային երկրագործական ցեղերի քառանիվ զարգացած փոխադրամիջոցներ են, սակայն իրենց տեսքով և գրաֆիկական արտահայտության ոճավորված ձևերով չեն տարբերվում հնագույն քաշաններից։*

Աղ. 2, Նկ. 1—2—*Սայլերից երկուսը ունեն նույն կլորավուն կամ ձվաձև թափքը, ուղիղ առեղն ու եզների նույնական պատկերները, մնացածների թափքերը երկարուկ, քառանկյունաձև են, միայն թափքի երկու կողքերից ավելացված են երկուական խուլ անիվներ, որպիսիք խիստ բնորոշ էին Հայաստանի բրոնզեդարին։ Սյունյաց սայլատեսակները, որ ներկայացված են բազում տիպերով, ենթատեսակներով, գրաֆիկական հստակ ձևերի մեջ, գրեթե չեն պարունակում Գեղամա լեռների քառանիվ սայլերի կրկնօրինակները և եթե նմաններն էլ կան, ապա ներկայացված են գրաֆիկական ավելի ուշ և հստակ ձևերով[5]։ Գեղամա լեռների դաշտային քառանիվ սայլերի այս հիմնական տեսակը հանդիպում է Ասիայի, Աֆրիկայի, Եվրոպայի ժայռապատկերներում, դարձյալ ավելի կատարելագործված ձևով։ Պակաս գործածական չէր նաև երկանիվ սայլը։ Այն ներկայացված է Գեղամա լեռների ժայռապատկերներում հիանալի մի նմուշով, առանց լծկանների, ունի երկու խուլ անիվ, որոնք առանցքի հետ միասին տեղադրված են թափքի ետին մասում։ Թափքը երկարուկ է, փայտյա զուգահեռ միջնորմներով ամրացված։ Նրա ետնամասում փայտյա ցցեր են ամրացված, կողքերից՝ բարձր ցանցկեն պահպանակներ՝ եռանկյունաձև առեղով։ Սայլի մոտ պատկերված են մի ուղտամարդ, այծ և պարան (աղ. 3, նկ. 2)։ Սայլի թափքը նույնպես ծագում է երկարուկ եռանկյունաձև քաշաններից, թեև խիստ կատարելագործված է։ Այդ տիպի քաշաններ ու սայլեր շատ են հանդիպում Ուղտասարի (մ.թ.ա. II—I հազ.) ժայռապատկերներում, սակայն վերջինները զուրկ են կողերի պահպանակներից և երբեմն էլ օժտված զարգացած ճառագայթավոր անիվներով։ Կառուցվածքային իր առանձնահատկություններով ու գլխավոր մասերի տիպերով Գեղամա լեռների նկարագրված սայլը միանգամայն համադրելի է Լճաշենի երկանիվ սայլատեսակներին՝ անիվնե-*

---

[1] Գ. Հ. Կարախանյան, Պ. Գ. Սաֆյան, *Սյունիքի ժայռապատկերները, Հայաստանի հնագիտական հուշարձաններ, 4, Երևան, 1970, աղ. 61, նկ. 2, աղ. 78, նկ. 4։*

[2] *Նույն տեղում, աղ. 52, նկ. 1. աղ. 96, նկ. 4։*

[3] A. Häusler, Sudrussische und Nordkaukasische Petrogliphen, Arbeiten aus dem Institut für Ur-und Fruhgeschichte..., Halle-Wittenberg, 1965, № 13, *աղ.* XI, *նկ. 1.*

[4] *Նույն տեղում, աղ. XI, նկ. 4։*

[5] Գր. Կարախանյան, Պ. Սաֆյան, *նշվ. աշխ. նկ. 223$_1$, 225$_2$, 226 և այլն։*

րի, թափքի, առեղի, կողային պահպանակների մանրամասներով[6]։ Կային նաև բաց տիպի երկանիվ սայլեր, որոնց թափքը նույնպես երկարուկ էր, քառանկյունաձև, առանցքը անիվների հետ ղըրված էր թափքի ետին մասում. ուներ երկար, ուղիղ առեղ։ Մի քանի այդպիսի սայլեր ներկայացված են Գեղամա լեռների ժայռապատկերներում,երբեմն եզներով լծված (աղ. 3, նկ. 1)։ Երկանիվ սայլերի կավե մոդելներ շատ են հանդիպում Հայաստանի մ. թ. ա. III հազ. բնակավայրերում, որ ցույց է տալիս նրանց զանգվածաբար օգտագործման հանգամանքը անասնապահության ու երկրագործության շեշտակի վերելքի այդ շրջանում։

**Աղ. 4** (մ.թ.ա. III հազ.), մի շատ հետաքըրքիր ժայռանկար է դա, որի վրա պատկերված են հինգ ավարտված և երկու անավարտ քառանիվ սայլեր, որոնք խմբված են իրար մոտ։ Կենտրոնական սայլին եզներ են լծված, մյուսները չունեն առեղ և լծկան։ Սայլերից երկուսի մոտ մարդիկ կան, մեկը՝ մահակով կամ ճիպոտով, մյուսը՝ վեր մեկնած թևերով՝ կարծես կենդանիներին քշելու պահին։

Քառանիվ սայլերի հիմնական տիպը կրկընվում է Գեղամա լեռների այլ պատկերախմբերում ևս, սակայն առանց որևէ նորության։

Քառանիվ սայլերը միանգամայն բնորոշ են դաշտային-երկրագործական մշակույթներին, և այդ հանգամանքը ավելի քան համոզիչ է դարձնում մեր այն պնդումը, թե լեռնային այս արոտատեղիները ժամանակին պատկանել են Արարատյան դաշտի բնակիչներին, որոնք հավասարապես բարձր մակարդակի են հասցրել և՛ անասնապահությունը, և՛ երկրագործությունը։ Հնէակենդանաբան Ս. Կ. Մեժլումյանի տվյալներով՝ Գեղամա լեռների ժայռապատկերներով ներկայացված ընտանի և վայրի կենդանիների գրեթե բոլոր տեսակների ոսկրային մնացորդները առկա են Արարատյան դաշտի մ.թ.ա. III հազ. պեղածո նյութերի մեջ։ Ժայռանկարներում կրկնվում են արարատյան բնակավայրերի խեցեղենի փորագիր կամ վերադիր կենդանատիպերը, իսկ Մեծ Պայտասարի քարե գործիքներն իրենց ամենամոտ զուգահեռներն ունեն Խաթունարխի և Թեղուտի նեոլիթ-էնեոլիթյան քարե գործիքների մեջ։ Ըստ որև կտեսնենք նաև, որ որսորդ-անասնապահական արտաքին տեսք ունեցող այս պատկերները լիովին ներծծված են նաև երկրագործական գաղափարաբանությամբ։

Սակայն, իհարկե, լեռնային արոտավայրերում, նույնիսկ տափարակում ապրողների հիմնական զբաղմունքը անասնապահությունն էր և դրանից ոչ պակաս նաև որսորդությունը, որ բխում էր հանրային հոտը պահպանելու և խաշնարածների համար սնունդ հայթայթելու անհրաժեշտությունից։

## ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ԵՎ ՄԱՐԴԿԱՅԻՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ

Հիշյալ հանգամանքը մատնանշող բազմաթիվ պատկերներ կան Գեղամա լեռների ժայռանկարների նորահայտ խմբում. ներկայացված են տարբեր ժամանակներում արված մեկուսի կամ խմբային կենդանական պատկերներ (աղ. 5—9), ոտքերը կամ պոզերը կապած խաչասերվող կենդանիներ (աղ. 10—11), շների հսկողությամբ արածող հոտեր (աղ. 12) և այլն, և այլն։

**Աղ. 13, նկ. 1**—Շան հսկողության տակ գտնըվող մի փոքրիկ հոտ է, որ կատարված է երկու տարբեր փուլերում. վերևից երկրորդ խոշոր այծը փորագրված է մ.թ.ա. IV հազ. վերջերին և III-ի սկզբներին, մնացած բոլոր պատկերները չեն անցնում II հազ. կեսից։

**Աղ. 13, նկ. 2**—Պատկանում է II հազարամյակին. կենդանիների խառը հոտ է՝ երկու այծ և տարբեր ոճերի երեք վայրի տուրեր, որոնցից մեկի վրա հարձակվել է շունը։

**Աղ. 14, նկ. 1**—Մ.թ.ա. II հազ. խառը կենդանիների խմբապատկեր է՝ չորս եղջերուով, չորս այծով և երեք անհասկանալի նշաններով։

**Աղ. 14, նկ. 2**—Այս խմբի վերջին պատկերը շատ տիպական է անասնապահության համար։ Երկու այծ եզրերին, երկու գեղեցիկ իշուկներ՝ մեջտեղում, ցցված մռութներով, կարծես հոտոտում են մարգագետնի բուրավետ խոտը։

**Աղ. 15**—Կան նաև մարդկային պատկերներ բոլորովին սխեմատիկ (նկ. 3) կամ խիստ զգեստավորված՝ բարձրաքիթ երկարաճիտ ոտնամաններով, տարօրինակ գլխանոցով, թռչնագլուխ դիմակով ու ձևավոր աղեղով (նկ. 1)։ Զգեստավորված, ձևավոր գլխանոցով մարդիկ ներկայացվում են հաճախ անզեն, ընդգծված առնանդամով (նկ. 2), երբեմն էլ դրանք պարզապես հովիվներ են, իրենց շների հետ միասին (նկ. 4)։

Այս բոլոր պատկերներում զգացվում է նոր կենդանիներ ընտելացնելու, հոտը աճեցնելու, վայրի գազաններից պաշտպանելու հոգսը, որ համընդհանուր էր ողջ նախնադարի համար։

Որսորդական տեսարանները Գեղամա լեռներում ծայր են առնում մ.թ.ա. V—IV հազ. ինչոր մի հատվածում, սակայն աշավելապույն չափով բազմանում ու բազդանում են մ.թ.ա. III

[6] Л. О. Мнацаканян, Древние повозки из курганов бронзового века на побережье оз. Севан, СА, 1960, № 2, стр. 139 и сл.

*հազ., կտրված քոչվոր անասնապահության կատարյալ ձևավորման և Գեղամա լեռների ալպյան արոտավայրերի զանգվածային իրացման հետ։ Դիտենք այժմ որսորդական տեսարանները ըստ ժամանակագրական խմբերի և նշանակության։*

## ՈՐՍՈՐԴԱԿԱՆ ՏԵՍԱՐԱՆՆԵՐ

*Մ.թ.ա. V—IV հազ. որսորդությանը վերաբերող հնագույն ժայռանկարները գտնվում են Մեծ Պայտասար գագաթի լանջին և ներկայացված են մեկուսի կամ խմբային այծապատկերներով քարակույտերի մեջ, երբեմն կրոնական երանգ ունեցող հիասքանչ կոմպոզիցիաների հարևանությամբ։ Այս խմբի որսորդական տեսարանները բնորոշվում են Ա ոճի այծապատկերներով, ֆիգուրների սակավությամբ, կոմպոզիցիայի պարզունակությամբ և կատարման տեխնիկայի կոպտությամբ։ Դրանցից երկուսի մեջ (աղ. 16, նկ. 2—3) առկա են մի որսորդ և մի այծ, որսորդները բռնել են այծերի պոչերից։ Երրորդ կոմպոզիցիայում ներկայացված են (աղ. 16, նկ. 1) մայր այծը, ուլը և դարձյալ եղջյուրներից բռնած որսորդը՝ շան հետ։*

*Կոմպոզիցիոն առումով և թվագրությամբ սրանց շատ մոտ է կանգնած մի այլ ժայռապատկեր (աղ. 16, նկ. 4—5), որտեղ, սակայն, որսը կատարվում է, կարծես, նետ ու աղեղի օգնությամբ։ Տեսարանի կենտրոնում գտնվող հսկա այծը օժտված է մ.թ.ա. V—IV հազ. ոճական բոլոր բնորոշ գծերով։ Նրան հետևող փոքրիկ այծը ունի նույն գծերը, եթե հաշվի չառնենք փոքր-ինչ բարձրագիր եղջյուրները, որոնք լիովին ձևավորվում են մ.թ.ա. III հազ. ոչ վաղ։*

*Կան որսորդական մի քանի տեսարաններ ևս, որոնք ժամանակագրական, ոճական ու կոմպոզիցիոն առումներով ավելի մոտ են IV—III հազ. եզրագծին, փոքր-ինչ ավելի զարգացած են ու բարդ, ունեն մ.թ.ա. III հազ. հավելումներ։ Դրանցից մեկում (աղ. 17, նկ. 1—2) որսորդը պատրաստվում է պարանել խոշոր այծերից մեկին։*

*Սրանցով հիմնականում ավարտվում են վաղ շրջանի որսորդական տեսարանները և ծայր առնում մ.թ.ա. III հազարամյակի մեծ ու հոյակապ պատկերախմբերը, որոնց մեջ մեծ թիվ են կազմում որսորդական տեսարանները։ Այդտեղ մարդիկ որս են անում անզեն ձեռքերով, երբեմն շների կամ հեպարդների օգնությամբ, երբեմն էլ՝ հմայանքով կամ կախարդանքով։ Այս երևույթի արմատները պետք է փնտրել խոր նախնադարում։ Ուշ նեոլիթ-էնեոլիթյան փուլում որսի այդ ձևն ըստ երևույթին բավականաչափ անհրաժեշտ էր ու կենսական, մանավանդ վայրի կենդանիների ընտելացման արվեստում։ Մարդիկ գաղտագողի, խմբերով կամ միայնակ դարանակալում էին կենդանուն, հարձակվում գերազանցապես արոտներում արածող կամ առուներից ու գետակներից ջուր խմող մանր եղջերավորների վրա։ Ահա այս երևույթն էր, որ շարունակվում էր ավանդաբար մ.թ.ա. III—II հազ., երբ հանրային հոտը բավականաչափ ստվար էր և ուներ բազմացման ներքին մեծ հնարավորություններ։ Ձեռքով որսալն այժմ այնքան էլ հարմար չէր, բայց սովորույթը շարունակում էր հարատևել։ Գուցե դա կարևոր էր խաչաձևման համար, որի գոյությունը դժվար ապացուցելի է, բայց միանգամայն հավանական։*

*Հիշատակված խմբի կոմպոզիցիաները շատ տարբեր են և ներկայացնում են գերազանցապես այծորսի տեսարաններ և վերաբերում, մեծ մասամբ, մ. թ. ա. III կամ II հազ. առաջին կեսին։ Դրանք սակավ են, հանդիպում են մ. թ. ա. II հազ. երկրորդ կեսին կամ I հազ. սկզբներին վերաբերող ժայռապատկերներում։*

## Մ.Թ.Ա. III ՀԱԶԱՐԱՄՅԱԿ

Աղ. 18, Նկ. 1—*Կոմպոզիցիոն առումով պարզունակ է և նմանվում է վաղ շրջանի պատկերներին։*

*Աղ. 18, նկ. 2—Երկու շարքի մեջ դասավորված են երկարոտն, կիսակամար եղջյուրներով երկու այծ, որոնց վերջույթները կապված են պարանով։ Ձախում որսորդի թերի պատկերն է, իսկ աջում՝ հարձակվող շունը։ Տեսարանի կենտրոնում երեք անընթեռնելի նշաններ կան։*

Աղ. 19, Նկ. 2— *Այծերի մի փոքրիկ հոտ է։ Կենտրոնում պատկերված է կենդանիներից ամենախոշորը, որի եղջյուրների արմատից բռնել է որսորդը։*

Աղ. 19, Նկ. 1—*(մ. թ. ա. III հազ. վերջ. և II-ի սկիզբ)։ Անզեն որսորդը գտնվում է կենտրոնում, բռնել է ամենամեծ այծի պոչից։ Ներքևի ձախ անկյունից որսորդին օգնում է շունը։*

Աղ. 20, Նկ. 1—*Մի շքեղ տեսարան է՝ կազմված 18 այծերի, մեկ եղջերուի, չորս հեպարդների, չորս որսորդների պատկերներից և երկու նշանագրերից։ Այծերը բնորոշ են II հազ. կեսի ոճին, սակայն տեսարանի վերին ձախ անկյունի ռոմբաձև պատկերը շատ նման է մ.թ.ա. III հազ. ծայր առած «այծ»-«փայլակ» նշանագրերի մի տարբերակին։ Չորս որսորդների պարզունակ, հակիրճ պատկերները տեղադրված են կոմպոզիցիայի երկայնքով մեկ՝ վերից վար։ Սրանցից*

առաջինը այծերի վրա է, արձակել երեք հեպարդների, որոնք ներկայացված են վազքի մեջ։ Որսորդներից երկուսը գտնվում են կենտրոնում, նրանցից մեկը փակել է այծի ճամփան, երկրորդը բռնել է եղջերուի եղջյուրից։ Վերջինիս վրա աջից հարձակվում է նաև չորրորդ հեպարդը։ Վերին ձախ անկյունում գտնվող որսկանը զինված է, մի քանի կենդանիների շրջապատում։ Կոմպոզիցիայի վերին անկյունում շրջանաձև մի նշան կա, որ առայժմ անընթեռնելի է։ Ժայռանկարի վերին մասում երկրաչափական երկու պատկեր կա, որոնց ինչ լինելը ևս բացահայտված չէ։

**Աղ. 20, Եկ. 2**—*Պատկերների մի զգալի մասը լրիվ չի փորագրված, դժվար է որոշել հուշարձանի թվագրումը, թերևս մ.թ.ա. III հազ.։ Պատկերված է այծերի հոտ, որի վրա հարձակվել են երկու անզեն որսորդ։ Սրանցից մեկը կանգնած է ձախում, վեր մեկնած թևերով, շան հետ։*

**Աղ. 21, Եկ. 1**—*Նույնքան շքեղ տեսարան է, որ պատկանում է մ.թ.ա. III հազ. վերջին և II-ի սկզբներին։ Սլացիկ, գեղեցիկ և ուժեղ այծերի հոտը ընկել է երեք հեպարդների և չորս որսորդների ծուղակի մեջ։ Որսորդներից ամենախոշորը զինված է նետ ու աղեղով, մյուսներն անզեն են. նրանցից մեկը պարզապես զսպում է հեպարդին։*

**Աղ. 21, Եկ. 2**—*Մ.թ.ա. III հազ. տիպիկ այծախումբ է, արու, էգ այծերով ու ուլերով։ Այծերից ամենախոշորը եղջյուրների արանքում խաչանշան ունի։ Նրա տակ զետեղված է մի գեղեցիկ եղջերու։ Անզեն որսորդը կտրել է կենդանիների ճամփան աջից, ձախից նրանց հետապնդում են հեպարդն ու երկու շներ։*

**Աղ. 22, Եկ. 1**—*Մ.թ.ա. II հազ. այծորսի մի պատկեր էլ կա, ուր ձախից ներկայացված է հարձակվող հեպարդը։ Որսորդը գտնվում է չորս այծերի կենտրոնում։*

**Աղ. 22, Եկ. 2**—*Խուճապահար այծերի մի հոտ է։*

**Աղ. 23, Եկ. 1**—*Մ.թ.ա. II հազ. այծորսի հոտ, երկու հեպարդի և երկու մարդու շրջապատում։ Հավանական է, որ սա էլ որսի տեսարան է։*

**Աղ. 23, Եկ. 2**—*Նույն տիպի՝ II հազ. պատկեր է։*

**Աղ. 24, Եկ. 2**—*Չորս այծերի և չորս մարդու պատկերներից կազմված մեծ կոմպոզիցիա։ Մարդկանցից յուրաքանչյուրը զբաղված է մի կենդանու որսով։ Ձախից առաջինը պարանել է ձախակողմյան, երկրորդը՝ կենտրոնական այծի ոտքերը։ Մյուս երկուսն անզեն ձեռքերով ուզում են բռնել մնացած երկու այծերին։*

**Աղ. 24, Եկ. 1**—*Այստեղ փորագրված են յոթ որսորդների պատկերներ՝ ձախ հատվածում, վայրի ցլին հետապնդելիս։ Ցլի ոտին կարծես պարան է նետված։ Որսորդներից երեքը զգեստավորված են, ունեն դիմակներ, թևերին՝ ճառագայթավոր զույգ վերջույթներ։ Տեսարանի աջ մասում պատկերված է երեք այծ, անհասկանալի մի քանի պատկերներ և մի նշանագիր, որը, հավանաբար, ամբողջական խոյի պատկեր է խորհրդանշում։*

Իրենց սյուժետային բովանդակությամբ մ.թ.ա. III հազ. ներկայացված պատկերախմբին շատ են մերձենում երկու որսորդական տեսարան ևս, որոնցից առաջինը «իծագրերի» ոճական առանձնահատկություններով կարող է վերագրվել մ.թ.ա. II հազ. առաջին կեսերին, իսկ II-ը՝ մ.թ.ա. I հազ. սկզբներին։ Դրանք հետևյալներն են.

**Աղ. 25** —*Որսորդները գտնվում են հոտի կենտրոնում՝ վերևում և ներքևում։ Վերին որսորդը փոքրամարմին է և խիստ ոճավորված։ Նա պարան է նետել աջակողմյան այծի պոզերին։ Ներքևի որսորդի պատկերը եռակի մեծ է առաջինից, անդամները հզոր, ոտքերի արանքում ունի խաչաձև փորվածք և տարածած թևեր։ Նրան ուղեկցում է շունը։ Կենտրոնի խոշոր այծի վրա, կարծես, պարան է նետված։*

**Աղ. 26, Եկ. 1**—*Այսպիսի պարզունակ կոմպոզիցիաներ կազմվում էին նաև ուշ ժամանակներում (մ.թ.ա. II հազ. վերջին կամ I-ի սկզբներին) և վերջինները տարբերվում էին միայն իրենց կենդանապատկերների ոճով։ Դրանցից մեկում որսորդը գտնվում է վերին այծի դիմաց և բռնել է նրա դունչը։*

Ավելի հետաքրքիր, բազմանշանակ ու ճոխ են մ.թ.ա. III հազ. որսորդական այն տեսարանները, որոնց մեջ որսը կատարվում է պարանի, նետ ու աղեղի և տեխնիկական այլ հարմարանքների միջոցով։ Անցնենք այդ խմբի համառոտ նկարագրմանը։

**Աղ. 26, Եկ. 2**—*Ժայռապատկերը բացառիկ է նրանով, որ կոմպոզիցիայի կենտրոնական մասում պատկերված հսկայամարմին այծն իր ոճական գծերով պատկանում է մ.թ.ա. IV հազ. և նրա հետ միահյուսվում է մարդակերպ մի պատկեր՝ ճառագայթաձև, հզոր վերջույթներով ու ձեռքին բռնած պարանով։ Նրա գլխավերևի երեք շրջանակները երկնային նշաններ են, որոնք ճառագայթաձև վերջույթների հետ միասին մատնանշում են պատկերի գերբնական, աստվածային էությունը։ Շատ հնարավոր է, որ այստեղ առկա է որսի կամ կենդանիների որևէ աստվածություն։ Մնացած այծերի ու որսորդների պատկերներն իրենց ոճական առանձնահատկություններով պատկանում են մ.թ.ա. IV—III հազ.։*

*նրանք գործում են առանձին-առանձին։ Այստեղ ուշ ժամանակների միջնորդություն ևս կա։ Այծի գլխից վեր, եղջյուրների հիմնամասում ավելացված է ձիու գլուխ, և պատկերն ամբողջությամբ հիշեցնում է ձիու վրա կանգնած որսորդի, ինչպիսիք բնորոշ են դառնում վաղ երկաթի դարաշրջանում։*

Աղ. 27—*Այծերի բազմանդամ հոտ, որի կենտրոնում տրկա են մայր այծը՝ մեջքին թառած ուլիկով և մի չորքոտանի՝ ոլորուն եղջյուրներով, ավելի նման խոյի։ Կոմպոզիցիայի ներքին աջ անկյունում պատկերված են մայր այծին հետապնդող շուն, պարանով կապոտված այծ, նետ ու աղեղի փոքր, բայց որոշակի նշան, ինչպես նաև որսորդ։ Վերջինս զինված է փոքրիկ աղեղով, կեցվածքը խիստ մարտական-հարձակողական է, գլխի երկու կողմերից ունի եղջյուրանման ելուստներ, որոնք, ըստ երևույթին, որսորդական դիմակի շարունակությունն են կազմում։ Կենտրոնում պատկերված բոլոր այծերն ունեն հզոր, մեջքի վրա կամարաձև տարածվող եղջյուրներ, որոնք միանգամայն բնորոշ են մ. թ. ա. III հազ. ժայռարվեստին։ Վերին ձախ անկյունում տրկա են ավելի սլացիկ, կիսակլոր եղջյուրներով այծապատկերներ, որոնք լայնորեն հայտնի են և տարածված մ. թ. ա. III հազ. վերջերից կամ II հազ. սկզբներից։*

Աղ. 28—*Երեք որսորդներ հետապնդում են ճողոպրող վայրի ցուլին։ Կենդանու դիմաց դըրնըվող որսորդը զգեստավորված է և զինված նետ ու աղեղով։ Պատկերի աջ եզրին թևատարած մի անղեն մարդ կարծես վազում է դեպի հիմնական գործողության վայրը։ Վերևում մի քանի մարդկային պատկերներ ներկայացված են արևի սկավառակի վրա։ Արևի շրջանակը կիսված է տրամագծով, ճառագայթներն ուղղված են դեպի ներքև, որ իրիկնամուտի կամ արևմուտքի նշան է։*

Աղ. 29—*Ընձառյուծների կամ հեպարդների հսկա մի ոհմակ շրջապատել է ձախում արածող մեծ ու փոքր այծերին։ Մի փոքրիկ այծիկ զետեղված է «կտավի» աջ անկյունում՝ չորս գազանների միջև։ Խոշոր այծերի մոտ կանգնած է մահակավոր մի մարդ, որը, կարծեք հետապնդել է այծերին, բայց ընկել գազանների ճանկը։ Նման ժայռանկարներով լի են նաև Սյունյաց լեռները։*

*Մեզ հետաքրքրող հաջորդ պատկերախումբը վերաբերում է մասամբ III և II հազ. սահմաններին և մի ամբողջություն է կազմում այն առումով, որ որսորդները գործում են բացառապես պարանների օգնությամբ։*

Աղ. 30—*Վարից վեր պատկերված են խոշոր խոյանշան, պարան նետող սրսորդ և շարժուն ու ցնղեցիկ այծ։ Այծի առաջին ոտքերը կապված են։ Պատկերը լրացված է դարձյալ մի քանի խոյագլուխ խոշոր նշաններով։*

Աղ. 31, Եկ. 1—*Այծերի միաշար հոտ է, որի մեջ տրկա են որսորդների ու շների պատկերներ։ Որսորդներից մեկը անղեն ձեռքերով բռնել է կենտրոնական այծի հզոր եղջյուրները, նրան հետևում է շունը։ Մի մեծ շուն հարձակվել է ձախակողմյան այծի վրա։ Սրանց դիմաց՝ ներքևում, կանգնած են որսի շունն ու որսորդը, որը ոլորած պատրաստի պարան ունի ձեռքին։*

Աղ. 31, Եկ. 2—*Այստեղ էլ որսորդը գործում է պարանի օգնությամբ։ Նրան հաջողվել է պարանը գցել կենտրոնական մայր այծի ոտքին։*

Աղ. 32—*Ժայռանկարը ժամանակագրական հավելումներ ունի։ Նրա վերին մասում փորագրված է մ.թ.ա. III հազ. բնորոշ որսի ամբողջական մի տեսարան՝ երկու այծով և երկու որսորդով։ Ձախակողմյան որսորդը, որը խիստ ոճավորված է, բռնել է այծի ղնչից և ջանում է պարանօղը գցել նրա գլուխը։ Հաջորդ այծի ետին ոտքերը կապված են, նրա դիմաց կանգնած է երկրորդ որսորդը, որի պատկերն ավելի իրական է, դիմակավոր, պարանօղով կամ աղեղով զինված։ Աջից նրան հետևում է մի եղնիկ, որը տրամաբանական կապի մեջ չէ ընդհանուր հորինվածքի հետ և իր ոճական գծերով ավելի բնորոշ է մ.թ.ա. I հազ.։ Ըստ երևույթին՝ գա ուշ շրջանի հավելում է։ Ժայռանկարի ստորին մասում, նկարագրված տեսարանից անջատ, փորագրված է այծ և անընթեռնելի մի պատկեր։ Իր սլացիկ ձևերով կենդանին միանգամայն բնորոշ է մ.թ.ա. II հազ. ժայռարվեստին։*

Աղ. 33, Եկ. 1—*Երկու որսորդ շրջափակել են մի այծի։ Ետևի որսորդը խիստ ոճավորված է։ Նախնադարյան նկարչին հաջողվել է վարպետությամբ վերարտադրել նրա դինամիկ պատկերը՝ ուղղահայաց գծով, ստորին մասում ճյուղավորված իրանով ու ոտքերով, առանց որևէ այլ մանրամասնությունների։ Դիմացից պատկերված որսորդը նրբիրան է, բարձրահասակ, կլոր գլխով, ճկված մեջքով, նա կարծես զգեստավորված է։ Նրա պարզած թևերի մեջ նետ ու աղեղ կա։ Ժայռանկարի երեք կետերում հավելված են խազավոր երկրաչափական պատկերներ, որոնք սովորաբար արվում էին իբրև փորագրության էսքիզներ։ Տվյալ դեպքում սրանք ուշ հավելումներ կարող են լինել։*

Աղ. 33, Եկ. 2—*Լակոնիկ տեսարան է և հորինվածքային առումով շատ հստակ։ Խոշոր, սլացիկ մարմնով այծը ծուղակն է ընկել. շունը սպառնում է կծոտել նրա մռութը, իսկ հետապըն-*

ղող որսորդը նետահարում է նրան։ Որսորդի աղեղը լայնալիճ է։

**Աղ. 34, Եկ. 1** —Այս տեսարանը իր հորինվածքով նման է նախորդին։ Պոչ-պոչի պատկերված երկու արու այծեր զետեղված են որսորդի և շան միջև։ Նրանցից վեր պատկերված է մի փոքր այծ։ Որսորդն ունի լարված փոքր աղեղ, իրանի, կեցվածքի և զգեստավորման նույն գծերը, ինչ նախորդը։ Հնարավոր է, որ այս երկու ժայռանկարները մի նկարչի գործ են։

**Աղ. 34, Եկ. 2**—II հազ. պատկեր է. փոքր աղեղով զինված որսորդը շան հետ միասին հետապնդում է երկու այծի։ Նրա լարված աղեղը ուղըղված է ուլի վրա։ Շունը պատկերված է ներքևում։

Հաջորդ չորս պատկերները ժամանակագրորեն և հորինվածքով միատարր չեն, ունեն տարբեր ժամանակների ու տարբեր ոճերի հավելումներ։

**Աղ. 35, Եկ. 1**—Պատկերված է արևի կամ լուսնի երկշրջանային ճառագայթավոր սկավառակ՝ երեք այծերի և որսորդի պատկերներով։ Բոլոր ֆիգուրները, բացի որսորդից, պատկանում են մ.թ.ա. III հազ.։ Որսորդի պատկերն ուշ ժամանակների հավելում է, նրա նետասլաքը պատկանում է մ.թ.ա. I հազ. սկզբին վերագրվող հայտնի զինատեսակներին։ Սրամտորեն ներմուծելով որսորդի պատկերը, ուշ ժամանակի նկարիչն ստեղծել է որսի տեսարան, որն սկզբնապես, երևի երկնային կենդանիների պատկեր է ներկայացրել։

**Աղ. 35, Եկ. 2**—Ունի բազմանդամ և տարբեր ժամանակների ներմուծումներ։ Նկարի վրա եղել են սկզբնապես իրարից անջատ երկու այծեր, որոնք ոճական գծերով ու կատարման տեխնիկայով կարող են վերագրվել մ.թ.ա. III հազ. վերջերին կամ II-ի սկզբներին։ Մ.թ.ա. II հազ. վերջերին կամ I-ի սկզբներին մի հմուտ նկարիչ այս երկու անջատ պատկերների շուրջ ստեղծել է որսի հետաքրքրաշարժ երկու տեսարան։ Ներքևում պատկերված այծին ավելացված են երկու որսորդ՝ իրենց զույգ շներով։ Որսորդը ներկայացված է կանթած թևերով, գոտկատեղի դաշույնով ու եռանկյունաձև գլխանոցով։ Գլխարկից վեր մի փոքրիկ շրջանակ է արված, գուցե իբրև երկնային բարեմաղթության նշան։ Վերջում զետեղված երկրորդ տեսարանի երկու որսորդներն իրենց տիպով ու ոճական գծերով չեն տարբերվում նկարագրածից, թեև սրանց գլխանոցները տարբեր են, և կիսադեմի մեջ դիմակները ստույգ զանազանվում են։ Սրանք ևս զգեստավորված են, ունեն ձևավոր տոնամաններ։ Այստեղ նույնպես շունը հաչելով հարձակվում է խոշոր այծի վրա։ Որսորդներից մեկը նետը լարել է կենդանու զավակին։ Այս կոմպոզիցիայում առկա է արևի կամ լուսնի փոքրիկ սկավառակ։ Նկարագրված տեսարաններն, ուրեմն, պետք է ենթադրել, որ վերջնականապես ձևավորվել են մ.թ.ա. II հազ. վերջերին կամ I հազ. սկզբներին, թեև դրանց երկու այծերը փորագրված են եղել շատ ավելի վաղ։

**Աղ. 36**—Գեղամա լեռներում համեմատաբար փոքր թիվ են կազմում ցլորսի տեսարանները։ Բիզոնների որսը եզակի օրինակով է ներկայացված, կենդանիներ, որոնք Հայաստանի հնէակենդանաբանական տվյալներով սկսում են անհետանալ արդեն մ.թ.ա. III հազ.։ Եթե ճիշտ են այս տվյալները, ապա սույն ժայռապատկերը պատկանում է նշված ժամանակաշրջանին։ Բիզոնների բնորոշ պատկերներ հանդիպում են Արևմըտյան Հայաստանում՝ Վանի շրջանում։ Նկարագրվող կոմպոզիցիայում երկու որսորդ շան հետ հետապնդում են երկու բիզոնի։ Նախնադարյան նկարիչը այս կենդանիների ուժն արտահայտել է նրանց գլխի ու կրծքի հզորությամբ, ներկայացնելով դրանք լայն ու հաստ փորվածքով, մինչդեռ կենդանիների աստիճանաբար բարակող իրանն ու պոչն ավելի շատ շեշտում են նրանց ճկունությունը։ Ձախակողմյան բիզոնին նետահարող որսորդը փորագրված է կիսով չափ՝ գլխավերևում բռնած աղեղով։ Աջակողմյան որսորդը պարանել է բիզոնի մռութը և սպառնում է ջախջախել նրա գանգը տապարատիպ զենքով, որը Հայաստանում հանդես է գալիս մ.թ.ա. III հազարամյակում։

**Աղ. 37, Եկ. 1**—Ի տարբերություն նախորդի, այստեղ ներկայացված են երեք վայրի ցուլ, չորս որսորդ և մեկ այծ։ Ձախ անկյունում գտնվող մարդը, որ անզեն է ու ճառագայթաձև մատներ ունի, տարածած թևերով քշում է երկու ցլերի։ Կենտրոնում զետեղված երեք մարդկանցից մեկը դեմքով շրջված է դեպի փոքրիկ այծը, մյուս երկուսը հետապնդում են ցլին, մեկը նույնպես հասցրել է բռնել նրա պոչից։ Դժվար է ասել՝ գա անասնապահական կենցաղային տեսարան է, թե որսորդական։ Համենայն դեպս, ցլապատկերների ոճը հիշեցնում է ընտանի կենդանիների։

**Աղ. 37, Եկ. 2**—Նույն բնույթն ունի հաջորդ պատկերը։ Այստեղ ներկայացված են մարդկային սխեմատիկ երկու պատկեր։ Թվում է, որ մեկը զինված է աղեղով, մյուսը՝ պարանով։ Երեք ցլեր շարժվում են սրանց կողմը։ Ցլերից երկուսը եղջյուրների արանքում կլոր փոսիկներ ունեն։ Սրանք, հավանաբար, երկնային նշաններ են։ Մի փոքրիկ ցլիկ և մի այծ զետեղված են հակառակ ուղղությամբ։

**Աղ. 38, նկ. 1**—*Եղջերուների որսը ներկայացնող խմբի ամենաղեղեցիկ ու ամենահին (մ.թ.ա. III հազ.) տեսարաններից մեկն է։ Կոմպոզիցիայի ձախ մասում իրար ետևից ներկայացված են երկու ցուլ, մի ազնիվ եղջերու և մի խոշոր արու այծ, որը գտնվում է անբնական ուղղաձիգ դիրքում՝ պոչի վրա։ Բոլոր կենդանիների պոզերը խոշոր են ու փարթամ, իրանը՝ սլացիկ, ամրակուռ։ Ստորին շարքում պատկերված է վազող շուն, որը շտապում է օգնել որսկաններին։ Աջ մասի պատկերները արտահայտում են տեսարանի հիմնական բովանդակությունը։ Աջից գործող խաչաձև պատկերներով մի քանի որսկաններ կանխել են կովկասյան ազնիվ եղջերուի փախուստը՝ պարանելով նրա գլուխն ու եղջյուրները։ Երկարոտն, սլացիկ իրանով արու կենդանին կամարաձև փարթամ պոզեր, բնորոշ պոչ ու մռութ ունի և իր մարմնի բոլոր ձևերով հիշեցնում է մ.թ.ա. II հազ. սկզբների փոքրասիական (Ալաջա-Հույուք) և II հազ. երկրորդ կեսի բուն հայաստանյան բրոնզե արձանիկները։ Որսկանները պետք է որ չորսը լինեն, սակայն առաջին պատկերի հավելումներն այնքան շատ են, որ այն դարձնում են անվերծանելի։*

## Մ.Թ.Ա. II ՀԱԶԱՐԱՄՅԱԿ

*Մ.թ.ա. II հազ. որսի տեսարաններով ժայռանկարները իրենց բովանդակությամբ չեն տարբերվում նախորդ հազարամյակի արվեստի հուշարձաններից։*

**Աղ. 38, նկ. 2**—*Այծորսի բազմապատկեր տեսարան է։ Ներկայացված են 22 այծ, յոթ մարդ, երկու շուն։ Վերևից ներքև շարքով կանգնած զինված ու անզեն որսորդները բաժանել են հոտի աջ մասը, նետահարում կամ ձեռքով բռնում են այծերին։ Երեք շներ փակել են կենդանիների փախուստի ճամփան։ Մարդկանցից յոթերորդը կանգնած է վերևում (ձախից), հմայագործի կեցվածքով։*

**Աղ. 39, նկ. 1**—*Ներկայացնում է կովկասյան ազնիվ եղջերուների և այծերի որսի տեսարան։ Նորությունն այն է, որ մ.թ.ա. II հազ. տեղաբնիկներն արագավազ եղջերուներին որսալու համար օգտագործում են ոչ թե շներին, այլ նույնքան կամ ավելի արագավազ հեպարդներին։ Սրանք որսորդության նպատակներով ընտելացվել են Հայաստանում մ.թ.ա. III հազ. սկսած[7] և օգտագործվել այնուհետև ուրարտական, վաղ հայկական և ուշ միջնադարյան ժամանակաշրջաններում[8]։ Երեք որսորդներից երկուսը հետապնդում են կենդանիներին հեպարդներով, երրորդը՝ տարածած թևերով փակել է եղջերուի գեմը։ Պատկերը լիովին կարելի է վերագրել մ.թ.ա. XIII—XI դդ. ըստ եղջերուների պատկերման ոճական առանձնահատկությունների, որոնք կրկնում են Լճաշենի, Արթիկի, Տոլորսի նշված ժամանակաշրջանի բրոնզե արձանիկների տիպերը։*

**Աղ. 40, նկ. 2**—*Կանգնած է մի մեծ եղջերու՝ փարթամ եղջյուրներով։ Ձևավոր աղեղով զինված մարդը նետահարում է նրան, իսկ զգեստավորված, պարանով որսորդը հմայողի կեցվածքով փակել է նրա առաջը։ Աղեղի, նետասլաքի ձևերով ու պատկերների ոճով այս հուշարձանը կարող է վերագրվել մ.թ.ա. XIII—X դարերին։*

**Աղ. 40, նկ. 1**—*Եղջերու, որի առջևի ոտքերը կարծես կապված են, ոտքերի տակ ընկած է այծ։ Եղջերուին հետապնդող որսորդը պարան է նետել նրա գավակին, իսկ աղեղը գցել է ուսին։*

**Աղ. 41**—*Որս հեպարդների օգնությամբ։ Փոքրիկ աղեղով զինված որսորդը հետապնդում է հինգ այծերի։ Սրանց վերևում երկու հեպարդներ կան, որոնք, հավանաբար, օգնում են որսորդին։*

**Աղ. 42** *(II հազ. երկրորդ կես)—Այծորսի տեսարան է։ Որսորդը մի ձեռքին աղեղ ունի, մյուսով՝ պարան է նետել։ Վերին աջակողմյան այծի գլխին նույնպես պարան է, ենթադրվում է նաև երկրորդ որսորդի գոյությունը։*

**Աղ. 43, նկ. 1**—*Երկու որսորդ որսապարանի մեջ են գցել երկու այծերի։ Նրանցից մեկը զինված է մահակով, մյուսը՝ բացի պարանից, ունի նաև նետ ու աղեղ։ Մարդակերպ երրորդ պատկերը իր շեշտված առնանդամով և տարածած թեվերից «ճառագայթող» վերջույթներով հիշեցնում է որսի աստվածությունը։*

**Աղ. 43, նկ. 2**—*Նետված երկար պարանի օգնությամբ որսորդը կանխել է կենդանու փախուստը, ապա մոտեցել նրան ու բռնել եղջյուրից, պարանն արձակելու մտադրությամբ։ Որսորդի պատկերը խիստ ոճավորված է, կրում է սրածայր գլխարկ։*

**Աղ. 44,** *1 (II հազ. երկրորդ կես)—Չորս այծերից երկուսի վրա որսորդները պարան են նետել։ Ներքևի աջակողմյան որսորդը զինված է նետ ու աղեղով և պարանով։ Վերևի՝ ձախակողմյան որսորդն արդեն նետել է պարանը ամենամեծ այծի պոզերին։ Նրա իրանն ու թևերը խաչաձև են, գլուխը՝ կլոր։ Կոմպոզիցիայի կենտրոնական մասում կան չվերծանվող պատկերներ և նշաններ։*

---

[7] А. А. Мартиросян, Аргиштихинили, Ереван, 1974, стр. 143.

[8] И. А. Орбели, Избранные труды, I, М., 1968, стр. 303.

**Աղ. 44, Եկ. 2**—*Պատկերված են մեջք-մեջքի, նետ ու աղեղով զինված երկու որսորդ։ Ձախակողմյան որսորդը նետահարում է, բայց այծ չի պատկերված, աջակողմյանը՝ ուղղել է նետը ճողոպրող այծի վրա, որն իր սլացիկ մարմնով և դնչով, իրանի վրա կորացող եղջյուրներով կարող է դասվել մ.թ.ա. II հազ. ոճական խմբում։*

**Աղ. 45, Եկ. 1**—*Պատկերված են երկու գեղեցիկ այծեր։ Նրանց դիմաց կանգնած է որսորդը՝ լայնալիճ աղեղը լարած։ Սրա գլխավերևում, հավանաբար, ուշ ժամանակներում (մ. թ. ա. I հազ. սկիզբ) փորագրվել է անզեն որսորդի պատկեր, որը ձեռքերով բռնել է ուլ։*

**Աղ. 45, Եկ. 2**—*Մեծ հետաքրքրություն է ներկայացնում հորինվածքի և իրադրության առումներով։ Այծորսի ելած յոթ որսորդներ հանդիպել են ներքևից կենդանիններ հետապնդող մի առյուծի։ Խումբը բաժանվել է երկու մասի, որսականներից երկուսը նետահարում են առյուծին, իսկ մնացած հինգը, իրենց շան հետ, շրջափակել են երեք այծերի։ Աջակողմյան զույգ որսորդներից մեկը, որ խիստ ոճավորված է, խաչի ձև ունի, աջ թևով բռնել է ճողոպրող այծի եղջյուրներից։ Կենտրոնում գտնվող որսորդը պարան է նետել մյուս այծի ոտքին։ Կիսով չափ փորագրված ուլիկը շուրջկալի մեջ է։ Որսն, ըստ ամենայնի, հաջող է ընթանում։ Կոմպոզիցիայում առկա են նաև ուղիղ, կոր, անկյունավոր և անավարտ ձվածիր նշաններ, որոնց գաղափարական իմաստըն անհայտ է։*

**Աղ. 46, Եկ. 1**—*Պատկանում է մ.թ.ա. II հազ. վերջին կամ առաջին հազարամյակի սկզբներին։ Բաղկացած է այծերի, որսորդների, ցուլի և շան պատկերներից։ Որսորդներից մեկը նետահարում է ձախակողմյան այծին, զինված է նաև նիզակով, մյուսը՝ պատկերված է այծի փորի տակ, խաչաձև իրանով, ձախ թևը դեպի կենդանու ոտքը մեկնած։ Նրա իրանի ներքո մի եռանկյունի կա, այծի գավակին՝ երկու շրջանակներ, որոնք, թերևս, երկնանշաններ են։ Սրանցից վեր պատկերված է հսկայամարմին մի ցուլ (կով), տեղում գամված, կարճ ոտքերով, մեջքի ու գավակի կորագծերով, մեծականջներով ու մռութով, բնորոշ պոչով։ Դիմացից ցլի վրա է հարձակվել որսորդի շունը։*

**Աղ. 46, Եկ. 2**—*Մ.թ.ա. II հազ. այծորսի վերջին տեսարանն է, հորինվածքի և ժամանակագրական առումներով այնքան էլ դյուրըմբռնելի չէ։ Պատկերի ձախ մասում փորագրված է ոճավորված, հսկայամարմին որսորդ՝ ձևավոր գլխանոցով, վեր մեկնած նետ ու աղեղը ուղղած փոքրիկ այծի վրա։ Կոմպոզիցիայի աջ մասում՝ ներքևից վեր պատկերված են տարբեր չափերի երեք այծ ու մի քանի անհասկանալի մարմիններ։ Դրանցից մեկի ետին վերջույթները փորագրված են որսորդի ոտքի վրա։ Այգ հանգամանքը հնարավորություն է տալիս ենթադրելու, որ ժայռանկարը փորված է տարբեր ժամանակներում և որ այծին նետահարող որսորդի պատկերներն ավելի ուշ շրջանի ներմուծություն են։*

## ԵՐԿԱԹԵԴԱՐՅԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ (Մ.Թ.Ա. X—VII ԴԴ.)

**Աղ. 47, Եկ. 1**—*Այս պատկերն ուշագրավ է մի քանի հանգամանքներով։ Տեսարանի ձախ մասում և կենտրոնում առկա են 4 խոյանշաններ, որոնք հավանաբար փոխարինում են ամբողջական խոյապատկերներին։ Կենտրոնում գտնվող արու և էգ այծերի խումբը երկու ծայրերից առնըված է «աքցանի» մեջ։ Ձախից նրանց հետապընդում է որսի հսկա շունը, աջից՝ ձևավոր, փոքր նետ ու աղեղը, որ փոխարինում է որսորդին։ Նետասլաքի ծայրը եռանկյունաձև է, տափակ, որով համապատասխանում է մ.թ.ա. X գ. հուշարձաններում հանդիպող նետասլաքներին։*

**Աղ. 47, Եկ. 2**—*Տեսարանի ձախ մասում պատկերված է ճողոպրող գիշատիչ՝ սուր ճիրաններով։ Նրան նետահարում է լայնալիճ աղեղով հսկա որսորդը։ Նա զգեստավորված է և կրում է դիմակ։ Նրան հետևում է երկրորդ որսորդի թերատ պատկերը, որը նույնպես լայնալիճ աղեղ ունի (գծապատկեր)՝ առանց նետասլաքի։ Վերին աջ անկյունում պատկերված են երկու աղեղ, որոնք ենթադրել են տալիս, որ գազանի դեմ գործել են միանգամից չորս որսորդ։*

**Աղ. 48, Եկ. 1**—*Նման է նախորդին։ Երեք որսորդ հետապնդում են մի հզոր գիշատչի։ Նրա մեջքի վերևում պատկերված վազող որսորդը գիշատչի վրա է նետել իր հսկա տապարը, իսկ ներքևի երկու որսորդները պարան են նետել կենդանու ոտքին։ Այս տեսարանի նշանակությունն ընդգծված է կենդանու և որսորդի խոշոր, շարժուն, պլաստիկ պատկերներով։ Տապարավոր որսորդի ոտքերը երկար են, իրարից շատ հեռու, ծնկները ծալված։ Հսկա տապարը նետված է օդի մեջ, սակայն դեռ չի հասել նպատակին։ Երկարիրան, ճկված մեջքով, ձուլված, ճկուն ոտքերով ու կեռ պոչով գիշատիչը սլացքի մեջ է։ Նրա հզոր պարանոցն ավարտվում է թռչնակերպ գլխով, որը սակայն երկու զույգ պոզեր կամ պոզեր ու երկար ականջներ ունի։ Կենդանու մագիլների փոխարեն զույգ օղակներ են արված, որ շատ են հանդիպում մ.թ.ա. II հազ. վերջերի և I հազ. սկզբների գոտիների վրա. դրանց ֆանտաստիկ կենդանապատկերները ևս օղակաձև վերջույթներ*

ունեն՝. Մարմնի ու գլխի ոճական որոշ առանձնահատկություններով Գեղամա լեռների այս դիցատիպը դարձյալ հիշեցնում է Քալաքենդի բրոնզե գոտիներից մեկի բազում անգղառյուծներին[10], ժայռանկարի աջ մասում որսկան շունը հետապնդում է այծերին։

Աղ. 48, նկ. 2—*Միայնակ որսորդը կանգնած է առյուծատիպ գազանի դեմ-դիմաց։*

Աղ. 49, նկ. 1—*Այծերի ու եղջերուների հոտի վրա հարձակվել են երկու որսորդ, որոնք զինված են նետ ու աղեղով և նետահարում են կենտրոնում փակված խոշոր եղջերուին՝ առջևից և ետևից։ Երկրորդ եղջերուն ընկրկում է։ Նախնադարյան նկարիչն այստեղ մեծ վարպետությամբ է վերարտադրել թե ընկրկող կենդանու, թե ընթացքից նետահարող մարդու պատկերները։ Կենտրոնական եղջերուի գլխավերևում փորագրված է պարանակապ կենդանու մի փոքրիկ պատկեր, որ հիշեցնում է եղջերուի ձագ։ Այծերը երեքն են, նրանցից մեկը՝ ուլիկի հետ։ Թե այծերի, թե եղջերուների պատկերները նման են մ.թ.ա. I հազ. սկզբների արվեստի հուշարձաններում հանդիպող համապատասխան պատկերներին։*

Աղ. 49, նկ. 2—*Երկու որսորդ հետապնդում են այծին։ Նրանք զինված են աղեղներով և ընթացքից նետահարում են, բայց ոչ ներքևում գտնվող կենդանուն։ Պատկերը աշխույժ է, արտահայտիչ ու դինամիկ։*

Աղ. 39, նկ. 2—*Ընդօրինակված ժայռապատկերը ներկայացնում է բավական հզոր վայրի կենդանիների խառը մի հոտ և կենտրոնում տեղադրված երկու որսորդների, որոնցից մեկը դիմակավոր է, վեր մեկնած թևերով, ձողաձև իրանով, իսկ մյուսը՝ ավելի հզոր է, ճկված ոտքերով, ընդգծված սեռական նշանով, վեր մեկնած թևերով։ Սրա աջ ձեռքում արձակված կարճ պարան կա, որը, սակայն, չի հասել նպատակին։ Կենդանիների մեջ զանազանվում են ցլերը, ձին, այծը, որոնք վերարտադրված են բավական անսովոր դիտակետերից։ Բացի այծից, որ հանդես է գալիս իր սովորական երկրաչափական պատկերի մեջ, մնացած կենդանիները օդից նկարահանված «հատակագծային» և կողային պրոֆիլների ձևերով են մեկնաբանված։ Ձիու պրոֆիլը ներկայացված է գլխիվայր, աջ կողքին պառկած՝ բնորոշ երկար-կորված վզով, անսովոր երկար գլխով ու ականջներով, բայց և բնորոշ մռութով։ Առջևի ոտքերն ուղիղ են, ետինն՝ ալիքաձև, անդամը մեծ, պոչը երկար։ Ձիու գլխի տակ մի անորոշ, բարդ պատկեր է արված։ Աջակողմյան ցուլը «հատակագծային», վերևից արված ուրվանկար ունի։ Նրա ետին վերջույթներն ալիքաձև են, առջևի ոտքերն ուղիղ և առաջ մեկնած. ոտքերի արանքում կիսադեմով ցույց է տրված երկար վիզը, բաց երախով գլուխը և մի եղջյուրը։ Ավելի հետաքրքիր է ձախում տեղադրված երկրորդ ցուլը, որը նույնպես ներկայացված է բարձրակետից, փորին պառկած դիրքով, կամարաձև վերջույթները վեր մեկնած, եղջյուրներով, հզոր գլխով ու բաց բերանով։ Իր այս ընդհանուր նկարագրով, գլխի ոճավորմամբ ու վերջույթների դիրքով կենդանին լիովին նման է նույն Գեղամա սարերի վիշապաքարերի վրա պատկերված ցլերին, և քանիցս կրկնվում են Գեղամա լեռների այլ ժայռանկարների վրա։ Այդ հանգամանքն էլ թույլ է տալիս նման հուշարձանները թվագրել մոտավորապես II հազ. կեսերով։*

## ԵՂՋԵՐՈՒՆԵՐԻ ՈՐՍ (Մ.Թ.Ա. II—I ՀԱԶ.)

*Բրոնզեդարյան ոչ հեռու անցյալում մեր լեռները լի էին ազնիվ եղջերուների հոտերով։ Նրանց որսով առանձնապես լայնորեն զբաղվում էին մ.թ.ա. II հազ. առաջին կեսից մինչև I հազ. սկզբները։ Համապատասխանորեն այդ ժամանակներին էլ վերաբերում են եղջերուների բազմաթիվ կերպավորումներն արվեստի հուշարձաններում՝ խեցեգործության ու քանդակագործության մեջ, ինչպես նաև ժայռարվեստում։ Այս խմբի բոլոր ժայռապատկերները բավականաչափ հասուն արվեստի գործեր են, աչքի են ընկնում գծերի նրբությամբ ու ճկունությամբ, կենդանիների բնորոշ գծերի ստույգ վերարտադրությամբ։ Այժմ ծանոթանանք հիշյալ կոմպոզիցիաներին առանձին-առանձին։*

Աղ. 50, նկ. 1—*Հեպարդների մի ոհմակ հարձակվել է այծի վրա։*

Աղ. 50, նկ. 2—*Անզեն, մարդկային հզոր մի կերպար վանում է հեպարդներին, նրա թևերի վերջույթները եռամատ-եռաճառագայթ են։ Հնարավոր է, որ սա կենդանիներին հովանավորող աստծուն է ներկայացնում։*

Աղ. 50, նկ. 3—*Պատկանում է մ.թ.ա. II հազ. առաջին կեսին։ Հինգ անզեն որսորդ մի հեպարդի հետ միասին զբաղված են այծերի և եղջերուների որսով։ Որսորդներից երեքը բռնել են երկու այծ, երկուսը՝ հետապնդում են մեկ ուրիշի։ Կոմպոզիցիայի վերին՝ կենտրոնական մասում ներկայացված է մի խոշոր այծ՝ իր ուլիկի հետ։ Նրա*

---

[9] *Այդպիսի մի գոտի հայտնի է Հայկական ՍՍՀ Վարդենիսի շրջանից, պահպանվում է Հայաստանի պետական պատմական թանգարանի ֆոնդերում։*

[10] Ռ. Վիրխով. *Կովկասի տեղը քաղաքակրթության մեջ, ԱՀ, Ա., 1895, Նկ. 15։*

դիմաց նետված պարան կա, պարան է նետված նաև եղջերուներից մեկի եղջյուրներին, սակայն իրենք՝ նետողները չեն երևում։ Ժայռանկարն ունի ուշ ժամանակի հավելումներ։ Դրանցից են՝ եռանկյունաձև, տափակ նետասլաքը, որ բնորոշ է մ.թ.ա. I հազ. սկզբներին և ենթադրել է տալիս հավելված որսորդի առկայությունը։ Կենտրոնական այծի եղջյուրների արանքում պատկերված է քառանիվ սայլակ, որի թափքն ու լծկանները ներկայացված են ուղղաձիգ գծերով։ Ժամանակագրական առումով սայլակը համապատասխանում է եռանկյունաձև նետասլաքին, սակայն սայլապատկերն իմաստաբանորեն չի ներառվում ոչ սյուժեի, ոչ էլ կոմպոզիցիայի մեջ։ Հեպարդի պատկերն, ինչպես միշտ, ճկուն է և կարծես ներկայացնում է այդ կենդանուն հարձակման-թռիչքի պահին, նրա ետին ոտքերը զսպանակի նման կծկված են, իսկ առջևինները՝ բացված։

**Աղ. 51**—*Երեք եղջերուներից, երկու այծից, երկու շնից (կամ հեպարդից) և երեք որսորդից բաղկացած կոմպոզիցիա է։ Խոշոր այծը փորագրված է եղել փոքր-ինչ ավելի վաղ, որսի տեսարանից անկախ։ Նրա զավակն ու եղջյուրները հետագայում ծածկվել են միասնական մտահղացմամբ ստեղծված տեսարանի կենդանապատկերներով։ Գործողությունն հիմնականում ծավալվում է «կտավի» կենտրոնական մասի երկու հորիզոններում։ Ձախում առկա երրորդ՝ մարդկային պատկերի իրանն ու տարածած թևերը խաչաձև են, և միայն գլխի փոքր-ինչ կլորացող մասն է, որ մատնում է նրա մարդ լինելու հանգամանքը։ Կոմպոզիցիայի աջից ու ձախից պատկերված են այծ, եղջերու և մի քանի անհասկանալի նշաններ։*

Այժմ անդրադառնանք հուշարձանի թվագրության հնարավորություններին։ Նախ նշենք, որ կոմպոզիցիայի երեք եղջերուներն իրանի, ոտքերի և եղջյուրների կազմությամբ լիովին համապատասխանում են Լճաշենի և Տոլորսի բրոնզե արձանիկներին[11], որոնք թվագրվում են մ.թ.ա. XIV—XIII դարերով։ Որսորդները միակերպ զգեստավորում ունեն և դրանով հանդերձ միանգամայն համապատասխանում են Լճաշենի, Կամոյի, Սամթավրոյի, Կեդաբեկի և Խաչբուլաղի գոտիների վրա պատկերված որսորդներին[12], գոտիներ, որոնք տարածվել են ողջ Անդրկովկասում մ.թ.ա. II հազ. վերջերին և I հազ. սկզբներին։ Ժայռանկարի որսորդները զինված են փոքր աղեղներով, որ միանգամայն բնորոշ են նշված շրջանի՝ Սևանի ավազանի և արևելյան Անդրկովկասի տարածքում և հանդիպում են ինչպես մ.թ.ա. XI դ. խեցեղենի զարդամոտիվներում, այնպես էլ նույն շրջանի գոտիների վրա։ Պատկերի մեջ դիպուկ է արտահայտված նաև երկրորդ որսորդի նետասլաքը, որն իր ձևով նման է X դարի դամբարաններում հայտնաբերվածներին և XI—X դդ. խեցեղենի զարդամոտիվներում պատկերվածներին։ Հուշարձանի թվագրումն, այսպիսով, ոչ մի կասկած չի թողնում, որ այն վերաբերում է մ.թ.ա. II հազ. վերջին քառորդին և հավանական է, որ ժայռանկարիչները նույն բրոնզե գոտիների փորագրողներն են եղել։

**Աղ. 52, նկ. 1**—*Կոմպոզիցիայի կենտրոնում պատկերված է գեղեցիկ, ազնիվ եղջերու՝ ետին ոտքերին նստած։ Նրան շրջապատել են անղեն որսորդներն ու շունը։*

**Աղ. 52, նկ. 2**—*Հսկա, փարթամ եղջյուրներով ազնիվ եղջերուն հետապնդվում է չորս որսորդների և շան կողմից։ Որսորդներից մեկը նետահարում է կենդանուն, մեկը՝ ձգտում է բռնել ետին ոտքից, սրան հետևում է շունը, երրորդ որսորդը, ներքևից, շտապում է օգնության։ Եղջերուից վերև կա չորրորդ որսորդը, որն արդեն բռնել է կենդանու եղջյուրից և ուզում է հարվածել նրան մահակով։ Կենդանու գավակին կա երկու նշան, իսկ քիչ վեր՝ մի այծիկ։*

**Աղ. 53**—*Ժամանակագրական առումով համապատասխանում է նախորդին, այստեղ նույն փոքր աղեղներն ու եռանկյունաձև տափակ նետասլաքներն են ներկայացված իբրև որսորդական զինատեսակներ։ Կոմպոզիցիան բաժանված է երկու մասի, ներքևում՝ երեք որսորդ շուրջկալել են մի խոշոր այծի, որի պատկերը խիստ ոճավորված է և միանգամայն ինքնատիպ։ Նրա մեջքը, գլուխը և պոչը արտահայտված են կեռ ծայրեր ունեցող հորիզոնական բարակ գծով, գլխամասում հավելված կորագիծ եղջյուրներով։ Կենդանու ոտքերը պատկերված են երկճեղքված երկու եռանկյունիներով։ Որսորդները զգեստավորված չեն, ունեն խիստ պլաստիկ ձևեր, պատկերը լի է ներքին դինամիզմով։ Նրանցից երկուսը նետահարում են կենդանուն, երրորդը՝ կողքի տարածած «ճառագայթող» թևերով կանխում է կենդանու փախուստը։ Կոմպոզիցիայի երկրորդ մասը նույնպես դինամիկ է ու հնարամիտ։ Այստեղ երեք որսորդ և երկու շուն շուրջկալել են եղջերուին։ Շներից մեկը կեռպոչ գամփռ է, մյուսը՝ նման է ձագի. որսորդներից մեկն իր վեր մեկնած փոքրատիպ զենքով նետահարում է կենդանուն։ Աջից*

---

[11] А. А. Мартиросян, Армения в эпоху бронзы, табл. VIII, 3; XIV; 8.

[12] Б. Б. Пиотровский, Археология Закавказья, Л-д, 1949, табл. IX., Հ. Ռ. Իսրայելյան, *Պաշտամունքն ու հավատալիքը ուշբրոնզեդարյան Հայաստանում*, Երևան, 1973, նկ. 25, 26, 69։

պատկերված է եռանկյունու մեջ առնված նույն ձևի մի նետասլաք, որ փոխարինում է երկրորդ որսորդին. ավելի աջ՝ պատկերված է անղեն, խաչաձև մարդկային մի պատկեր, փոքր-ինչ կորացող տարածված թևերով։

Աղ. 54—Տեսարանն աչքի է ընկնում նրբագեղությամբ և որոշակի համաչափությամբ։ Կոմպոզիցիայի կենտրոնական մասում դեմ-դիմաց փորագրված սլացիկ, փարթամ եղջյուրներով զույգ եղջերուներին պարանել է ներքևում պատկերված մի որսորդ։ Առանձնապես ընդգծված են նրա ուժեղ թևերը՝ հինգմատնյա «ճառագայթող» վերջույթներով։ Ճիշտ նույն տիպի մեկ այլ եղջերուի էլ պարանել է աջից երկրորդ որսորդը, որին հետևում է շունը։ Կենտրոնական եղջերուներից աջ ու ձախ տոկա են ցլի և որսորդի պատկերներ։ Որսորդը դեմքն ուղղել է դեպի ցուլը։ Սրա գլխավերևում յոթ շրջանակներից կազմված մի երկնանշան կա։ Որսորդի պատկերը մեծ է, աղեղը փոքր, նետասլաքը եռանկյունաձև՝ մ.թ.ա. I հազ. սկզբներին բնորոշ։ Կոմպոզիցիայի ձախ անկյունում պատկերված են մի խոշոր այծ և նրա եղջյուրներից բռնած, մինչև գոտկատեղը փորագրված մի մարդ։ Կենդանապատկերն իր ոճական հատկանիշներով և, հատկապես, վեր խոյացող փարթամ եղջյուրներով, կարող է դասվել մ. թ. ա. II հազ. I կեսի պատկերների շարքը, ուստի հնարավոր է, որ տվյալ քարի վրա զետեղված են ժամանակագրորեն տարբեր երկու կոմպոզիցիաներ։

Աղ. 55, Եկ. 1—Մի այլ դեպքում, նույն ձեռքով փորագրված երկու գեղեցիկ եղջերուներից մեկին պարանել է անզեն մի պատանի։

Աղ. 55, Եկ. 2—Զգեստավորված անզեն մի մարդ առաջնորդում է եղջերուին՝ վզին գցած պարանի օգնությամբ։

Աղ. 56, Եկ. 1—Մեկ կամ երկու պատանիներ հետևում են եղջերուին։ Այս երեք պատկերները և մի քանի նախկինում հրատարակվածներն այնպիսի տպավորություն են թողնում, որ մարդիկ գործ ունեն ընտելացվող կամ արդեն ընտելացած եղջերուների հետ։

Աղ. 56, Եկ. 2—Նույն XI—X դդ. դինամիկ մի պատկեր էլ ներկայացված է հաջորդ ժայռանկարում։ Որսորդները հետապնդում են սարն ի վեր ելնող չորս եղջերուի։ Աղեղնավոր որսորդը պարանել ու դետնել է վերջին արու եղջերուին, երկրորդը սպառնում է շշմեցնել նրան մահակի հարվածով։ Մի կողմից որսորդը պարանել է եղջերուին, մյուս կողմից նետահարում է փոքրամարմին այծին։ Նրա գլխի երկու կողմերում շրջանակներ կան, որոնց նշանակությունը պարզ չէ։ Որսորդի զենքը բնորոշ է մ.թ.ա. II հազ. վերջերին և I հազ. սկզբներին՝ Սևանի ավազանից Գանձակ տարածված զինատեսակներին։

Աղ. 57, Եկ. 1—Դարձյալ եղջերուի որս է պատկերված։ Եղջերուները երեքն են, բոլորն էլ սլացիկ իրանով, փարթամ եղջյուրներով։ Զույգ եղջերուների հետ պատկերված է նաև մի այծ։ Կենդանիների այս խումբն ընկել է չորս որսորդների ծուղակի մեջ։ Նրանք բոլորը զինված են նեղլիկ աղեղներով և նետահարում են եղջերուներից մեկին։ Որսորդներից մեկի գլխի երկու կողմերում մեկական շրջանակ է արված։

Աղ. 57, Եկ. 2—Երկու որսորդ հեռվից պարան են նետել փախչող եղջերուի եղջյուրներին։ Որսորդները «ճառագայթվող» վերջույթներով թևեր ունեն։

Աղ. 58, Եկ. 1—Որսորդը երեք շան հետ եղջերու է բռնում. նա պարանել է աջակողմյան եղջերուի պոզը, իսկ շները հարձակվում են նրա դիմաց կանգնած մյուս եղջերուի վրա։ Կտավի կենտրոնում պատկերված է խոշոր այծ, որի ոտքերին փորագրված է կեռպոչ շներից մեկը։ Պարզ երևում է, որ այծապատկերն այստեղ փորագրըված է եղել որսի տեսարանն ստեղծելուց առաջ։

Աղ. 58, Եկ. 3—II հազ. վերջերի ցլորսի մի փոքրիկ տեսարան է։ Պատկերված է հզոր, սլացիկ, ճողոպրող մի ցուլ՝ ցլիկի հետ միասին, վերին շարքում՝ լիովին զգեստավորված, ձևավոր աղեղով նետահարող մի որսորդ, որի երկու կողմերում փորագրված են սպանվող կենդանու և վազող շան կիսատ պատկերներ։ Ըստ այդմ, շունը որոշակիորեն հետապնդում է ցլին։

Աղ. 58, Եկ. 2—Ներկայացվող ժայռանկարը ամենաուշն է իր տեսակի մեջ և, հավանաբար, պատկանում է մ.թ.ա. II հազ. վերջերին կամ I հազ. սկզբներին։ Վայրի այծերի ու եղջերուների խառը հոտը ընկել է որսկանների ծուղակը։ Կենդանիների գծապատկերները կորցրել են արդեն իրենց վաղեմի ավանդական ոճական գծերից շատերը։ Նրանք պատկերված են բարակ, հորիզոնական, ուղղաձիգ ու թեք գծերով, փոքր պատկերներով, առանց մարմնի բնորոշ ձևերի ու մանրամասների։ Այս կենդանապատկերները բնորոշ են մ.թ.ա. II հազ. վերջերի և I հազ. սկզբների խեցեղենի զարդամոտիվներին, որոնք և կազմում են քննարկվող տիպի ժայռանկարների թվագրության

հիմքը։ Որսորդները նույնպես չունեն վաղեմի զգեստավորումն ու ոճական բազմազանությունը, թեև նրանցից միայն երկուսն են կրկնում իրար։ Կենտրոնական նախազը ոճական իր առանձնահատկություններով, պատկերագրման տեխնիկայով, եղջյուրների, վերջույթների, գլխի ձևերով խիստ զանազանվում է մնացյալներից և, ինչպես թվում է, փորագրվել է քարի մակերեսին՝ հիմնական կոմպոզիցիայից առնվազն հազար տարի առաջ։

Նկարագրված կամ մեկնաբանված որսորդական տեսարանների ուշադիր զննումը հնարավորություն է ընձեռում հանգելու մի քանի էական հետևությունների, որոնք Հայաստանի այլ ժայռապատկերների և հնագիտական հարուստ նյութերի համեմատական ուսումնասիրության մեջ պատմատնտեսական օրինաչափությունների բացահայտման և արտադրող տնտեսության խնդրի քննության մեջ նոր լուսաբանումներ են մտցնում։

Նախ և առաջ պարզ է դառնում, որ մեր հեռավոր նախնիների մոտ որսորդությունն ինքնանպատակ չի եղել, այլ ենթարկված լինելով անասնապահ-երկրագործական տնտեսության զարգացման ընդհանուր տենդենցներին, խիստ տարազատված բնույթ է կրել։ Այստեղից էլ՝ որսորդության բազմազան ձևերն ու եղանակները։ Պատկերների մեջ ամենից ավելի հաճախ են կիրառվում ձեռքով, պարանների, թակարդների, մահակի, փոսերի, ցանցերի օգնությամբ (աղ. 59, 60) կատարվող որսի ամենատարբեր ու հնարամիտ եղանակները։ Ինչպես երևում է, նախնադարյան որսորդները ձգտում էին պահպանել որսի կենդանիներին, նրանց միջոցով համալրել կամ ազնվացնել ընտանի կենդանիների հոտերը, նույնիսկ այն ժամանակ, երբ դրանք բավականաչափ ստվար են եղել։ Նետ ու աղեղի, նիզակների, տապարների օգնությամբ կատարվող որսը հետապնդում էր հանրային հոտը գիշատիչներից պահպանելու և մսեղեն սնունդ ստանալու նպատակ։ Հասկանալի է, որ անասնապահը խնայում էր ընտանի կենդանիներին, և նրա սնունդը կազմված էր գերազանցապես կաթնամթերքներից, երկրագործական բարիքներից և պտուղներից։

Վաղ շրջանի (մ.թ.ա. V—IV հազ.) ժայռապատկերների քննությունը թույլ է տալիս հաստատելու, որ Հայաստանում առաջին ընտելացված կենդանին բեզոարյան այծն է եղել։ Այս կենդանիների վայրի և ընտելացված հոտերի պատկերները մեծամասնություն են կազմում Հայաստանի բոլոր պատկերախմբերում, ճիշտ այնպես, ինչպես նրանց ոսկրային մնացորդները նեոլիթյան և էնեոլիթյան (համաժամանակյա) բնակավայրերում գերակշռում են մնացյալ բոլոր տեսակներին։ Գրեթե նույն ժամանակաշրջանում և նույն պայմաններում սկսվել էր վայրի տուռերի (ցուլերի և կովերի) ընտելացումը, որոնց պատկերները հանդիպում են գերազանցապես V—III հազ. ժայռանկարներում։ Հասկանալի է, որ նըշված կենդանիների որսն ու ընտելացումը սկսվել էր ավելի վաղ (մ.թ.ա. VII—VI հազ.), քան այդ պրոցեսը իր արտացոլումն է գտել ժամանակի արվեստի հուշարձաններում։

Անդրկովկասյան հնագիտության բոլոր տըվյալների համաձայն, մ.թ.ա. III հազ. սկզբներից խիստ զարգացում է ապրել ոչխարաբուծությունը, և հանրային հոտի զգալի մասը կազմել են ոչխարները։ Հայաստանի և մնացյալ երկրների ժայռանկարներում այս կարևոր պրոցեսը լիովին չի արտահայտվել, թեև խոյերի ու ոչխարների պատկերներ հանդիպում են ամենուրեք։ Այդ երևույթն ունի իր պատճառները։ Առաջինն այն է, որ արվեստի քննարկվող հուշարձանները պատկերում են գերազանցապես որսի տեսարաններ՝ կապված ալպյան բարձրադիր գոտիների հետ, որտեղ բնակվում էին վայրի այծերը և ոչ թե ոչխարները։ Երկրորդն այն է, որ մ.թ.ա. V հազ. սկսած նախնադարյան նկարիչներն ամենուրեք իբրև որսի ու ընտանի կենդանու, իբրև մանր եղջերավոր անասունի սիմվոլների պատկերում էին բեզոարյան գեղեցիկ, սլացիկ, կատարյալ այծերի, և ավանդության զորությամբ սրանք շարունակում էին պատկերվել նույնիսկ այն ժամանակ, երբ հանրային հոտի մեջ արդեն զգալի փոփոխություններ էին կատարվել։

Մ.թ.ա. III—I հազ. ժայռանկարները մատնանշում են, որ որսորդության երկրորդ ծաղկումը և անասնապահության բարձր զարգացումը հնարավոր էր միայն երկրագործության համեմատաբար բարձր զարգացման պայմաններում՝ երկրագործական մթերքների հավելումներով կենդանիների ձմեռային կերը ապահովելու միջոցով։ Սակայն անասնապահության ինտենսիվ աճը գերակշռում էր, ըստ երևույթին, երկրագործության մակարդակը, և անասունների անսահմանորեն աճող հոտերը ամառային ու ձմեռային թարմ կերի նորանոր բազաների խիստ կարիք ունեին։ Ըստ երևույթին հենց այս շրջանում է սկսվում և այնուհետև հազարամյակներ անընդհատ շարունակվում ձմեռային այնպիսի մարգագետինների օգտագործումը, ինչպիսիք են Մուղան-Ղարաբաղի դաշտը, Արաքսի միջին հոսանքները, Վանի երկրագործական օազիսները և այլն։

Սրանով է բացատրվում նաև այն հանգամանքը, որ վերջին երկու վայրերում նույնպես

ժայռանկարների հարուստ խմբեր են հայտնաբերվել։ Հետևելով անասունների հոտերին, մեր հեռավոր նախնիները յուրացնում էին նորանոր տարածություններ, որոնք միանգամայն պիտանի են և՛ անասնապահության, և՛ երկրագործության համար։ Հնարավոր է, որ տնտեսական այս մեծ թռիչքով են բացատրվում մ.թ.ա. III հազ. Հայկական լեռնաշխարհի ցեղերի հզոր արտագաղթի ալիքները և նրանց հայտնվելը Առաջավոր ու Փոքր Ասիայի քաղաքակիրթ այնպիսի շրջաններում, որոնք ընդամենը մի քանի հարյուրամյակ առաջ (մ.թ.ա. IV հազ. վերջերին) զբաղեցված էին առաջավորասիական մշակույթը կրող ցեղախմբերի ու ժողովուրդների կողմից։

## ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ԺԱՅՌԱՆԿԱՐԸ ՊԱՏՄԱԲՆԱԳԻՏԱԿԱՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՒԹՅԱՆ ՀԱՎԱՍՏԻ ԱՂԲՅՈՒՐ Է

*Նախորդ գլխում բերված ժայռանկարներն ըստինքյան արժեքավոր են իբրև արվեստի հուշարձաններ, որոնց մեջ քիչ չեն կատարելության հասցված, արվեստագիտական մեծ հետաքրքրություն ներկայացնող գործերը։ Այլ հարց է, թե այս պատկերները ինչ չափով են արտահայտում նախնադարյան ռեալ իրականությունը, որքա՞ն հավաստի են իբրև դիտական ուսումնասիրության աղբյուրներ և ինչ նպաստ են բերում ժամանակի էկոլոգիական պայմանների, կենդանական աշխարհի, անասնապահության, տնտեսական զբաղմունքների ուսումնասիրությանը։ Կարևորագույն այս հարցերին պատասխանելու համար անհրաժեշտ է անդրադառնալ նրանց հնէակենդանաբանական արժեքավորմանը։*

*Զգտելով հնարավորին չափ ճշգրիտ վերարտադրել կենդանու պատկերը, նախնադարյան վարպետը երբեմն հասնում էր արվեստի կատարելության, որի մեջ արտահայտվում էին ոչ միայն կենդանու արտաքին տեսքը, այլև ինչ-որ չափով նրա շարժուն-խաղացկուն վիճակը՝ վախեցած զգոնությունը, ճողոպրումը և այլն։*

*Ներկայացվող առարկայի բնորոշ հատկությունններն ընդգծելու կարողությունը թույլ է տալիս «սովորական» նկարի մեջ ոչ միայն ճանաչելու թռչունն ու կենդանին ընդհանրապես, այլև զանազանելու նրանց տեսակները (կարապ, սագ, կռունկ, սմբակավորներից՝ այծ, եղջերու, իշայծյամ և այլն) աղ. X։*

*Հենց դա էլ հնարավոր է դարձնում հաստատելու պատկերված բոլոր կենդանիների տեսակները, բացառությամբ այն դեպքերի, երբ պատկերը չափազանց ոճավորված է, կամ, եթե դրանք երևակայական էակներ են և իրենց մեջ կրում են տարբեր կենդանիների տարրեր։*

*Ժայռապատկերների կենդանիների մեջ գերակշռողը այծերն են, և դա պատահական չէ։*

*Հայտնի է, որ Հայաստանի լեռնային և նախալեռնային շրջաններում հազարամյակներ առաջ, մարդկանց հիմնական ավարը կազմում էին վայրի այծերը։ Դրանք տիպիկ լեռնային կենդանիներ էին, ապրում էին ժայռերի մեջ և խոր կիրճերում՝ զբաղեցնելով բարձր լեռների ալպիական գոտին։ Սակայն նրանք զբաղեցնում էին նաև ալպիական ցածրադիր վայրերը։ Այդ իրավիճակը լավ է արտահայտված Գեղամա լեռներում, որտեղ, ըստ երևույթին, բնակվել են բեզոարների հսկա զանգվածներ։*

*Ուշագրավ է այն փաստը, որ, սովորաբար, հատկապես միանկար պատկերներում ներկայացված են արուները, իսկ էգերը պատկերված են միայն մեծ կոմպոզիցիաներում՝ արուների կամ ձագուկների հետ միասին[1]։ Քիչ չեն այն տեսարաններն, ուր արտահայտված են այդ կենդանիների կյանքի և վարքի որոշ առանձնահատկություններ։*

*Այդպիսին են իրար ետևից վազող այծերը, նրանց ծառս եղած կեցվածքը, որը բնորոշ է կռվող տարեց արուներին[2]։*

*Հայտնի է, որ այծերն ու ոչխարները ամենավաղ ընտանի կենդանիներն են։ Թե նրանց վայրի տեսակները, թե ընտելացման բնական հնարավորությունները առկա էին նախնադարյան Հայաստանում։ Հնարավոր է նաև, որ բեզոարյան այծերը օգտագործվում էին նրանց խաչասերման՝ արյունը թարմացնելու և ընտանի ցեղերի ուժեղացման համար, քանի որ դրանց խաչասերումը տալիս է միանգամայն բեղուն սերունդ։*

---

[1] Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Ռ. Իսրայելյան, Գեղամա լեռների ժայռապատկերները, պրակ I, նկ. 234, 261, 283 և այլն։

[2] Նույն տեղում, նկ. 61, 178, 213, 247 և այլն։

ժայռապատկերներում պահպանված այս մանրամասնությունները՝ Սևանի ավազանի գրեթե բոլոր շրջաններից հավաքված այծերի մնացորդների հարուստ հավաքածուի և հնագիտական հուշարձաններում անփոփոխ տեսքով հանդիպող մնացորդների զուգորդության մեջ, թույլ են տալիս հաստատելու բեզոարյան այծերի տարածման հին շրջանը Հայաստանում (աղ. IX)։

Հեռավոր անցյալում բեզոարյան այծը զբաղեցնում էր Անդրկովկասի լեռնային բոլոր շրջանները։ Եղած տվյալների համաձայն, ներկայումս բեզոարյան այծեր չկան։ Վերջին բեզոարը Գեղամա լեռներում ոչնչացվել է 1947 թ.[3]։

Բոլոր պատկերների մեջ առաջին տեղը, եթե ոչ թվով, ապա արվեստի կատարմամբ պատկանում է եղջերուների փարթամ ֆիգուրներին։ Այդ պատկերների մեծ մասը հիացնում են իրենց իրական ձևերով, կենդանու արտաքին կազմվածքի մանրամասների ճիշտ վերարտադրությամբ։ Այստեղ միանգամից հանդիպում են մի քանի ոճի պատկերներ՝ «եղևնաձև», «երթիկաձև», որոնք, կարծես, նկարված են բնորդից։ Մանրամասն կանգ չառնելով եղջերուներ պատկերող բոլոր կոմպոզիցիաների վրա, նշենք միայն բացառիկ և հարուստ մի նկար, ուր, ամենայն հավանականությամբ, դովերգվում է քաջ որսորդը, որ միայնակ, շների ուղեկցությամբ, դուրս է եկել որսի՝ հիմնականում այծերի ու եղջերուների բազմության մեջ[4]։

Խիստ ուշագրավ է առանձին քարի վրա նըստած մարդու և նրա կողքին հանգիստ կանգնած եղջերուի ժայռանկարը։ Կարելի է կարծել, որ կոմպոզիցիան արտահայտում է երզջերուի արածելու մի հմայական տեսարան և վկայում եղջերաբուծության գոյության մասին։ Կոմպոզիցիաներում այդ կենդանուն չափազանց մեծ տեղ հատկացնելը պայմանավորված էր այն նշանավոր դերով, որ կատարում էր եղջերուն հեռավոր ժամանակների որսորդական կենցաղում, գուցե և, որպես ընտելացված կենդանի։ Հնարավոր է, որ եղջերուները պատկանել են սինանտրոպ ցեղին։

Այդ ամենի մասին վկայում են Սևանա լճի մերձափնյա նստվածքների առանձին հորիզոններում, դամբարաններում, ինչպես և առանց բացառության, հնագիտական բոլոր հուշարձաններում գտնված եղջերուների ոսկրային մնացորդները։ Մինչև վերջին ժամանակները այդ կենդանին ապրում էր Սևանի ավազանի անտառապատ շրջաններում, Հյուսիսային Հայաստանի անտառային բիոտոպներում և այլուր։

Կովկասյան ազնիվ եղջերուն տիպիկ անտառային կենդանի է, որն այժմ բոլորովին անհետացել է մեր կենդանական աշխարհից։

Բավական մեծ քանակություն ունեն շների պատկերները։ Այս պատկերների քննարկումը թույլ է տալիս առանձնացնելու շների երեք տեսակ՝ կարճ և ուղիղ պոչով, որ հիշեցնում է կովկասյան գելխեղդը, երկրորդը՝ ոլորված պոչով և ցից ականջներով, որը նման է հաչանի։ Եվ, վերջապես, երրորդ տեսակը, այսպես կոչված «բարակ»-ն է («թազի»)։ Շան այս տեսակը Հայաստանի ոչ մի շրջանում այժմ չի հանդիպում։ Գրականության մեջ պահպանվել են տվյալներ[5] այն մասին, որ ոչ հեռու անցյալում դրանք տարածված են եղել Սևանի ավազանի շրջաններում (հատկապես Բայազետում)։

Հետաքրքիր է, որ Սևանի ափերին և դամբարաններում հայտնաբերված շների ոսկրային մնացորդները պատկանում են երկու տարբեր ցեղերի. ոչ խոշոր շուն, որը ծագում է շնազգիների կենդանիներից մեկ ուրիշը՝ հայկական լեռնային ոչխարը (մուֆլոնը)։ Սրա պատկերները ժայռանկարներում հաղվագյուտ են[6]։ Հիմնականում աչքի են ընկնում իրենց եղջյուրներով։ Դրանք սու և ավելի խոշոր, որի նախնին դայլն է։

Գեղամա լեռների և Փամբակի լեռնաշղթայի ավելի ցածրադիր հարթավայրային մասերում, ոչ փոքր քանակությամբ, բնակվում էր սմբակավոր վորաբար մեծ են և գեղեցիկ, պարուրաձև ոլորված, երբեմն հսկայական ու ծանր, որոնց միջոցով նկարիչն ի հայտ է բերում մուֆլոնի յուրահատուկ ու տիպական գծեր։ Ծանր եղջյուրները ստիպում են կենդանուն գլուխը պահել բարձր ու փոքր-ինչ ետ թեքած, դրանով իսկ նրան տալով առանձնապես «հպարտ» կեցվածք։ Դրանով էլ, ըստ երևույթին, բացատրվում է մուֆլոնի, հատկապես եղջյուրների արտահայտչականությունը։ Մուֆլոնները լեռնային կենդանիներ են, որոնք սիրում են համեմատաբար հարթ ռելիեֆ։ Ճիշտ է, նրանք հանդիպում են ծովի մակերևույթից մինչև 5000 մ բարձրության վրա, սակայն ավելի կապված են ցածր մակարդակների հետ։

Լեռնային ոչխարի պատկերները հավասարապես չեն անցնում մեկ տասնյակից։ Քիչ ավելի ուշ՝ վայրի ոչխարների և այծերի նկարների մեջ

---

[3] К. М. Гаспарян, К кормовому режиму безоаровых коз на Урцском хребте, Известия АН Арм. ССР, т. XVII, № 2, 1964.

[4] Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Ի. Իսրայելյան, նշվ. աշխ., աղ. 180։

[5] Даль, К систематике волков Закавказья, ДАН, Арм. ССР, 14.

[6] Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Ի. Իսրայելյան, նշվ. աշխ., նկ. 55։

հանդիպում են նաև ընտելացված ոչխարների պատկերներ՝ դեր իրանով և ծավալուն փորով։ Եթե վայրի այծերի պատկերներում շեշտված են բարեկազմությունը, իրանի նրբությունն ու ուժը, ապա այստեղ առկա են մսային առավելությունները։

Հաճախակի կրկնվողներից են եղների և վայրի ցուլերի պատկերները։ Սրանք հանդես են գալիս ամենաբազմազան ձևերով՝ եղջյուրների բացվածքի ճիշտ կողմնորոշմամբ, մեծ, ծավալված եղջյուրներով, ինչպես նրա վայրի նախատիպերի մոտ, փոքր-ինչ ավելի չափավոր եղջյուրներով և, վերջապես, նկատելիորեն կարճ պողերով, ինչպիսիք են փոքրացած ընտանի եղները։

Տուրերի մնացորդներ հայտնաբերված են Սևանա լճի մերձափնյա նստվածքներում, ունեն 10000 տարվա հնություն և պատկանում են նրա վայրի տեսակին։

Շենգավթում, Կիրովականի և Լճաշենի համաժամանակյա հուշարձաններում արդեն, եղների այդ խոշոր տեսակը որոշակի հատկանիշներով կապված է նախնական վայրի տեսակի հետ և հանդիսանում է կապող, միջանկյալ օղակ։ Եվ, վերջապես, նույն Լճաշենի դամբարաններում գտնված ոսկորները պատկանում են ընտանի եղների խոշոր տեսակին, որը միայն եղջյուրներով է հիշեցնում իր վայրի նախնուն։

Դրանց հետ մեկտեղ քանակով շատ են ընտանի եղների պատկերները։ Դրանք պատկերված են հաճախ միայնակ և թոկով կապված, ունեն մեծ, բարձր եղջյուրներ, որոնք հիշեցնում են վայրի տեսակներին։ Այդ տիպի լծկանի բազմաքանակ մնացորդների հայտնաբերումը բրոնզի դարաշրջանի հուշարձաններում, դրանց առկայությունը ինչպես նախալեռնային և լեռնային շրջանների (Սևանա լճի ավազան, Կիրովական, Ստեփանավան, Շամշադին, Արթիկ, Նոյեմբերյան), այնպես էլ Արարատյան դաշտի հուշարձաններում (Շենգավիթ, Մեծամոր, Թեղուտ, Մոխրաբլուր) վկայում են այդ կենդանիների տարածումը Հայաստանի ամբողջ տարածքի վրա։ Անդրկովկասում վայրի տուրերի բրածո մնացորդներն իրենց տեսակների քանակով կարող են համեմատվել միայն դրանց այնպիսի կուտակման հետ, ինչպիսին է Հյուսիսային Հնդկաստանինը, որը համարվում է այդ ենթաընտանիքի բների ստեղծման հնագույն օջախը։ Սերտորեն կապված լինելով փաստացի նյութի հետ, մեր ժայռապատկերները թույլ են տալիս ամենահաստատուն ձևով առաջադրելու ընտանի խոշոր եղջերավոր անասունների ավտոխտոն ծագման թեզը, և Հայկական լեռնաշխարհը համարելու դրանց ընտելացման օջախներից մեկը։

Եթե Bos ցեղի ներկայացուցիչներն ունեն համատեղ, լայն տարածում, ապա զուբրը Անդրկովկասում․ հավանաբար միշտ էլ եղել է սակավաթիվ։

Վերջին 5—7 տարիների ընթացքում գտնված 10-ից ավելի տեսակների մնացորդների (հիմնականում Սևանի ավազանից և երևանյան քարեդարյան կայանից) ուսումնասիրությունները թույլ են տալիս եզրակացնելու, որ մեր մերձսևծովյան շրջանում երբևէ գոյություն ունեցող զուբրերը պատկանել են երկու տարբեր տեսակների։ Դրանցից երկարեղջյուր տեսակն է՝ «Bison bonasus major», որի մնացորդները հայտնաբերվել են ոսկրային ոսպնյակում[7], Աhկալա գյուղի մոտ և թվագրվում են 10—12000 տարվա հնությամբ[8]։ Դրանց մոտ է գտնվել նաև եղջյուրի վերին մասը, որը թվագրվում է բրոնզի դարաշրջանով։ Հետևաբար, այս տեսակը իր գոյությունը պահպանել է ավելի երկար, քանի որ երկրորդ ենթատեսակը (կովկասյան զուբրի կարճեղջյուր ձևը) պատկանում է բրոնզի ժամանակաշրջանին։ Նույնիսկ Թռուցիկ հայացքի դեպքում նկարներում[9] կարելի է տարբերել զուբրի երկարեղջյուր և կարճեղջյուր տեսակները։ Պատկերը կատարված է հոյակապ էքսպրեսիայով, դինամիկ ներքին ուժով, զուբրին շատ բնորոշ հարձակողական կեցվածքով։ Զուբրերի երկարեղջյուր տեսակը հաճախ հանդիպում է և Արևմտյան Հայաստանի ժայռապատկերներում՝ ավելի ռեալիստորեն վերարտադրված, և արտահայտում է զուբրերի վարքի ու կյանքի ինտիմ պահերը[10]։ Կարճեղջյուր զուբրերի բացակայությունն այստեղ առանձին բացատրություններ չի պահանջում, քանի որ այդ ենթատեսակի տարածումն ունի խիստ տեղական բնույթ։ Զուբրերի բազմաքանակ մնացորդների կապը ժայռապատկերների հետ վկայում է ոչ միայն նրանց գոյությունը հեռավոր անցյալում, այլև․ լայն տարածումը և դրանով իսկ հնարավորություն ընձեռում վերականգնելու այդ հոյակապ կենդանու՝ պլեյստոցենյան ֆաունայի հանգած վերապրուկի տարածման մինչև օրս անհայտ արեալը։

---

[7] В. И. Громов, Первобытный зубр (Bison priscus Boj) в СССР, Труды Института зоологии АН СССР, том II, вып. 2—3.

[8] Определения лаборатории радиоуглеродного метода в Киеве.

[9] Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Ռ. Իսրայելյան, նշվ. աշխ., էջ. 157—158։

[10] Muvaffak Uyanik, Prehistoric Research in the South-East Turkey, Türk Tarih Kurumu, Belleten, v. XXXII, № 125, 1968.

*Հատուկ հետաքրքրություն են ներկայացնում իշայծյամի պատկերները*[11]։

*Առաջին անգամ իշայծյամի մնացորդներ հայտնաբերվեցին պալեոլիթյան I քարայրում*[12] *(ատամներ, ֆալանգներ), իսկ ավելի ուշ՝ Հոկտեմբերյանի շրջանի Այրում գյուղի մոտ գտնվեց այդ կենդանու դրեթե մի ամբողջ եղջյուր։ Այսպիսով, հնարավոր դարձավ մնացորդային բեկորների հիման վրա, իշայծյամին հաստատապես «բնակեցնել» Հայաստանի տարածքում, ինչպես նաև որոշել ժամանակը և մեր ֆաունայի համար «նոր» կենդանու տարածման արեալը։*

*Մի քանի խոսք ուղտերի պատկերների մասին։ Աղ. X, 12 նկարում*[13] *պատկերված է միասապատ ուղտ։ 1936 թ. Յա. Ի. Խավեսոնի կողմից Սևանա լճի հարավային ափին հավաքված ոսկրային մնացորդների մեջ առանձնակի հետաքրքրություն են ներկայացնում միասապատ ուղտերի մնացորդները։*

*Ըստ ատամնաշարի ինդեքսի, այդ մնացորդները պատկանել են վայրի դրոմադերին։ Առայժմ սա միակ հիշատակությունն է նման հայտնագործման մասին։ Մեր նյութերում կա միայն անրակի ոսկրի մի բեկոր, որով անհնար է ճշտել նրա պատկանելությունը։ Ուղտերի մնացորդներ գտնվել են նաև Արգիշտիխինիլիի պեղումներից*[14]։

*Գալով գիշատիչ գազանների պատկերներին, հարկ է նշել, որ դրանք հանդիպում են բավական հաճախ՝ այծերի, եղջերուների և նույնիսկ ջրային թռչունների հետ միասին։ Քիչ չեն նաև գիշատիչների միայնակ պատկերները. դրանք հիմնականում ընձառյուծներ են։ Սրանց մարմինը երկարուկ ու ցածրադիր է, գլուխը՝ կլոր, ոչ մեծ, ինչպես բնորոշ է կատուների մեծ մասին։ Զարմացնում է մարմնի համաչափությունը և ընձառյուծին բնորոշ պոչի ձևը, որ գազանի իրանի կեսից երկար է։ Դժվար է գտնել մի պատկեր, որի վրա խախտված լինեն այս համաչափությունները։*

*Աղ. X, 9 նկարում ներկայացված ընձառյուծներն ունեն միանգամայն տարբեր «տրամադրություններ»։ Դեմ-դիմաց կանգնած չորս ընձառյուծների պատկերները հնարավորություն են տալիս մեկնաբանել իբրև որսատեղում արուների միջև ծագած կռիվ։ Հայտնի է, որ այդպիսի կռիվների ժամանակ արուները ճկում են մեջքը, բարձրացնում գավակը։*

*Ընձառյուծին պատկանող մնացորդները բըրածո հավաքածուներում հազվագյուտ են և սահմանափակվում են միայն ստորին ծնոտի ձախ ճյուղով և լրիվ ատամնաշարով*[15]։

*Ընձառյուծի տարածման արեալը համապատասխանում է վայրի ոչխարների տարածման շրջանին, իսկ գրականության մեջ մատնանշված նրա տարածման արեալի հյուսիսային սահմանը անցնում է Գեղամա լեռների արևմտյան զառիթափով*[16]։

*Կատվազգիների մյուս ներկայացուցիչը հեպարդն է, որը նույնպես բավական շատ է հանդիպում ժայռապատկերներում։ Սա ավելի բարեկազմ բարձրաոտք կենդանի է։ Գավակը քիչ ավելի բարձր է ուսերից։ Պոչը ուղիղ է, համարյա իրանի կեսի երկարության, որը նա պահում է թրաձև ներճկված և սովորաբար մեջքից վեր չի բարձրացնում։ Ոչ մեծ կլոր գլուխն ունի համեմատաբար փոքր ականջախոռոչներ։ Արտաքուստ նա ավելի նման է ասիական բարակ շան, քան թե կատվի։ Պատկերներում այս հատկանիշները այնպիսի ճշգրտությամբ են արտահայտված, որ այդ կենդանուն ճանաչելու մեջ երբեք չի կարելի սխալվել։ Եթե ընձառյուծների պատկերներում շեշտված է թաթերի փափուկ «կատվային դրվածքը» (սովորաբար թաթերը նկարների վրա կլորավուն են), ապա այս դեպքում, ընդհակառակը, ոտքերը սլացիկ են (բարեկազմ), իսկ ճանկերը՝ դուրս ցցված և դա, իհարկե, չէր կարող վրիպել որսորդների աչքից։*

*Հեպարդը ամենաարագավազ կաթնասունն է։ Համարյա բոլոր ժայռապատկերներում հեպարդները ներկայացված են շարժման մեջ, այդ է վկայում առաջ ձգված առջևի թաթի դիրքը։*

*Հեպարդը «նեղ մասնագիտացված» գիշատիչ է, որը որսում է հիմնականում փոքր և միջին չափի այծեղջյուրներ, երիտասարդ խոշոր սմբակավորներ, նապաստակներ և խոշոր թռչուններ։ Այս կենդանիների բնակության վայրերն էլ հենց հանդիսանում են հեպարդի տարածման շրջանի որոշիչ գործոնը։ Նա բաց, քիչ թե շատ հարթ, երբեմն լուլ, ոչ շատ ցցուն ժայռերի ռելիեֆային ընդհատումներով տարածությունների բնակիչ է։ Ուշագրավ է, որ հեպարդի մնացորդները, չնայած նրա լայն տարածմանը, հուշարձաններում շատ*

---

[11] Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Ռ. Իսրայելյան, նշվ. աշխ., էջ 30։

[12] Б. Г. Ерицян, К. Г. Карапетян, С. К. Межлумян, Труды IV Всесоюзного совещания по изучению четвертичного периода.

[13] Տե՛ս Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Ռ. Իսրայելյան, նշվ. աշխ.։

[14] А. А. Мартиросян, Аргиштихинили, стр. 142—144.

[15] *Ձեռք է բերված Անկալա գյուղի ոսկրաբեր լինգայից։*

[16] К. М. Гаспарян, Ф. С. Агаджанян, О барсе в Армении, Биол. журнал. Армении, т. XXXVII, № 12, 1974.

սակավաթիվ են և նկատվել են միայն Արղիշտիխինիլիի փլատակներում։ Այստեղ ևս գտնվել են հիմնականում եղնիկների (ջեյրան) ու այծյամների ոսկորներ։ «Հեպարդը, հավանաբար, պահպանվել է Քուռ-արաքսյան հարթավայրում և Արաքսի միջին հովտում մինչև 17-րդ հարյուրամյակը՝ վայրի վիճակում»[17]։

Հեպարդի որս անելու բնածին ընդունակությունները, խաղաղ բնավորությունը և դյուրին ընտելացումը հնագույն ժամանակներից սկսած շատ երկրներում որսորդներին ստիպեցին նրան օգտագործել իբրև որսի կենդանի։ Միջին դարերում հեպարդներով որս անելը շատ տարածված էր նաև Հայաստանում, Վրաստանում և Ադրբեջանում[18]։

Հայ պատմիչների տեղեկություններից հայտնի է, որ հեպաքդներին շների փոխարեն տանում էին եղնիկներ, վիթեր և այլ կենդանիներ որսալու[19]։ Հ. Ա. Օրբելին վկայակոչում է Մխիթար Գոշի այն առակը, որի մեջ ծույլ հեպարդը չի ցանկացել իջնել ձիուց և ծաց է թողել ոչխարը[20]։

Ժայռապատկերներում պատկերված է նաև կասվազգիների երրորդ գիշատիչը՝ առյուծը։ Երկու պատկերներ կասկած չեն թողում, որ մեր առջև արու առյուծներ են։ Այս գիշատիչների սեռական երկձևությունը շատ խիստ է արտահայտված։ Ի տարբերություն էգերի, արուներն ունեն մեծ բաշ, որի երկարությունը խոշոր տեսակների մոտ հասնում է մինչև 40 սմ։ Այս դիշատչի ոսկրային մնացորդները, ցավոք, բացակայում են։ Հայկական լեռնաշխարհում նրա գոյության մասին հավաստի տեղեկություններ կան, սակայն դրանց հիման վրա դժվար է հաստատել առյուծի տարածման շրջանի քիչ թե շատ ստույգ սահմանները։

Ամենամեծ զարգացման շրջանում նրա տարածման արեալը ընդգրկում էր արևելյան Անդրկովկասի հարթավայրերն ու նախալեռները։ Ձգվելով դեպի Արաքս, այդ արեալը փոքր հրվանդանով հասնում էր արևելք՝ մինչև Երևան կամ քիչ էլ այն կողմ։ Նրա հարավային սահմանը արևմուտքում հասնում էր մինչև Թուրքիա։

ՍՍՀՄ-ից դուրս առյուծներ եղել են Քրդըստանում, Արևմտյան Հայաստանում և Իրանի արևմտյան մասում[21]։

[17] Н. К. Верещагин, Млекопитающие Кавказа, М.-Л., 1959.

[18] И. Б. Шишкин, А. А. Слудский и др., Крупные хищные СССР, М., 1976.

[19] Մ. Խորենացի, Պատմություն հայոց, Երևան, 1893։

[20] И. А. Орбели, Избранные труды, т. III.

[21] В. Г. Гептнер, Н. П. Наумов, Млекопитающие Советского Союза, М., 1972, т. II

Հատուկ ուշադրության են արժանի թռչունների պատկերները։ Դրանց մեծ մասն աչքի է ընկնում նրբիրան տեսքով և գեղագիտական բարձր ճաշակով։ Զարմացնում է նաև նախնադարյան նկարչի դիտողականությունը այս կամ այն թռչունի համաչափությունների և կեցվածքների ճիշտ վերարտադրության մեջ, որի շնորհիվ հնարավոր է դառնում գրեթե անվրեպ որոշել դրանց տեսակները։ Հիմնականում պատկերված են ջրային թռչուններ, և դա պատահական չէ։ Չէ՞որ դրանցով լեցուն էին Սևանա լիճը և լեռնային լճակները։ Միայն մի քարի վրա պատկերված են ջրային թռչունների չորս տարբեր տեսակներ՝ ջրըագռավ (բակլան), սագ, ձկնկուլ և բադ (հնարավոր է ջրահավ)[22]։

Հայաստանում բուն են դնում ջրագռավների (բակլանների) երկու տեսակ՝ մեծ և փոքր։ Հավաստի կերպով կարելի է ասել, որ մատնանշված պատկերը նման է մեծ ջրագռավի, քանի որ այն կրկնակի անգամ մեծ է իր կողքին փորագրված բադի պատկերից, մինչդեռ փոքր ջրագռավն իր չափերով մոտ է բադին։ Հատկապես ուշագրավ է ջրագռավի դիրքը։ Այս թռչունները նստում են ուղիղ, գրեթե ուղղահայաց և նույնիսկ քիչ հետ ընկրկած՝ «հպարտ կեցվածքով»։

Հաջորդ թռչունը սագն է, միանգամայն ճըշգըրիտ վերարտադրված «սագային» կեցվածքով և հատկապես վերջույթներով։ Դրան հետևում է ավելի մանրամասն արտահայտված ձկնկուլը։ Այս թռչունը ցամաքի վրա տեղաշարժվում է որոշ չափով ետ թեքված վերջավորություններով, որը և նրա քայլվածքին տալիս է որոշ անճոռնիություն։ Հենց այս դիրքով էլ նա պատկերված է քարի վրա։ Ճիշտ են վերարտադրված նաև նրա կտուցն ու թևերը։

Վերջինը բադի պատկեր է, չնայած, դատելով նրա սուր և ուղիղ կտուցից, գուցե և ջրահավ լինի։

Թվարկված թռչունների մնացորդները հանդիպում են թե՛ Սևանի մերձափնյա նստվածքներում, թե՛ մի շարք դամբարաններում։ Բադերի և ջրագռավների որոշ տեսակների մնացորդներ հայտնաբերվել են Արգիշտիխինիլիի նյութերում։ Առանձին քարի վրա պատկերված է կարապների մի զույգ, մեզ ծանոթ՝ վեր թռչելու դիրքով։ Թըռչունները առաջ մղվելով՝ վեր են ձգվել, բարձրացնելով թևերն ու երկարացնելով վզերը (աղ. X, նկ. 16)։

Քիչ չեն մանր բադերի և ջրահավերի պատկերները նաև մեծ կոմպոզիցիաներում՝ ուրիշ կենդանիների հետ միասին։

[22] Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Ռ. Իսրայելյան, նշվ. աշխ., նկ. 253։

Ուշագրավ է արոսի միակ պատկերը։ Արոսն այժմ վերացել է կենդանական աշխարհից, սակայն հնում էլ սակավաթիվ է եղել։ Պետք է նշել, որ արոսի մնացորդներ հայտնաբերվել են միայն Արդիշտիխինիլիում[23]։

Ինչպես հայտնի է, այս թռչունը շատ խոշոր է, նրա միջին քաշը հասնում է 15—17 կգ-ի, խոշոր արոսների քաշը երբեմն 24 կգ է։ Արգիշտիխինիլիի և մոտակա շրջանների համար նա ցանկալի որս է եղել և, հետևաբար, այդ թռչունի կերպարը կարող էր տպավորվել նրանց հիշողության մեջ, թույլ տալով ավելի ուշ՝ ամռանը, նկարելու նրան լեռնային արոտավայրերի ժայռերի վրա։

Այլ կենդանիների հետ՝ ծիսական տեսարաններում պատկերված է կռունկը։ Կռունկը մեր ժողովրդի պաշտած թռչուններից է։ Կռունկի պատկերները հաճախ են հանդիպում վիշապաքարերի վրա, այն սիրված թեմա է նաև հայկական մանրանկարչության մեջ, նրա հետ են կապված բարի նախանշաններ և բաղձանքներ, նրա մասին ստեղծվել են առասպելներ ու լեգենդներ։

Գեղամա լեռների ժայռանկարիչների կյանքում որսը մեծ տեղ էր գրավում։ Այդ իսկ պատճառով ժայռապատկերների՝ որսի կոնկրետ տեսարաններով հնարավոր է հետևել որսորդական արտագրության ղարգացմանը, սկսած կենդանու պարզունակ «ծածկումից», մինչև փարախի բարդ սիստեմը։

Մեր նախնիների հայտնի որսի բոլոր միջոցները կիրառվել են դարերի ընթացքում և պահպանվել մինչև մեր օրերը։ Դրանք շարունակում են իրենց գոյությունը աշխարհի շատ ժողովուրդների կենցաղում։

Հատուկ ուշադրության են արժանի որսի իշխող «խաղաղ» ձևերը, որոնց վերջնական նպատակը կենդանուն սպանելը չէր։ Բոլորովին սխալ կլիներ պնդել, որ որսով հրապուրված մարդիկ բնության զարգացման նկատմամբ մնում էին անտարբեր։ Նրանցից շատերը հաճույք էին ստանում կենդանիների կյանքի ընթացքին հետևելուց և, որքան էլ արտասովոր թվա, կարող էին իրենց իսկ որսած կենդանու նկատմամբ շատ բարի լինել։

Բեղոարյան այծերի և մուֆլոնների որսը պարաններով, ծուղակներով և նրանց ժամանակավոր արգելափակումը փարախներում կարելի է բացատրել նաև իբրև կենդանիների արյունը թարմացնելու և հոտը բարվոքելու (զորացնելու) անհրաժեշտություն։

Կենդանիների մնացորդների և ժայռանկարների ուսումնասիրությունը կարող է հուսալի հիմք համարվել պալեոկլիմայական պայմանների բացահայտման համար։

Ջրային կլիմա սիրող կենդանիների առկայությունը (ինչպիսիք են արոսը, բեղոարյան այծը, եղնիկը և հեպարդը) թույլ է տալիս հավաստելու արիդային լանդշաֆտի տարածումը Հայաստանում։ Մինչդեռ ազնիվ եղջերուի, այծյամի, վարազի, զուբրի և ուրիշների գոյությունը ենթադրել են տալիս համեմատաբար խոնավ անտառային բիոտոպների առկայությունը, որոնք, անկասկած, գոյություն են ունեցել նախալեռնային գոտում և գետահովիտներում։

[23] Н. И. Бурчак-Абрамович, С. К. Межлумян, Ископаемыс и полуnскопаемые птицы Армении (рукопись).

### ԳԼՈՒԽ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ԼՈՒՍԱՏՈՒՆԵՐԻ ԵՐԿՐԱՉԱՓԱԿԱՆ ԵՎ ԿԵՆԴԱՆԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐԸ ԵՎ ԼՈՒՍՆԱԱՐԵԳԱԿՆԱՅԻՆ ՏՈՄԱՐԸ

### ԼՈՒՍԱՏՈՒ–ԹՌՉՈՒՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ ԵՎ ԿԵՆԴԱՆԱՊԱՏԿԵՐՆԵՐ

*Գեղամա լեռների ժայռապատկերներում և այլուրեք լուսատուների երկրաչափական սիմվոլային պատկերները հաճախ հանդիպում են թռչունների հետ, որոնցով խորհրդանշվում էր հիմնականում արևը։ Թռչունի ու արևի սիմվոլային կապը անցնում է նախնադարի բոլոր փուլերով, ներթափանցում անտիկ, միջնադարյան ժամանակաշրջանը և հայ. բանահյուսության միջոցով հասել մեր օրերը*[1]։

*Թռչունի և արևի գաղափարական կապը, բացի ժայռապատկերներից, հստակորեն դիտվում է նաև մ.թ.ա. II հազ. գունազարդ խեցեղենի վրա պատկերված ջրային թռչունների և արև ներկայացնող շրջանակների, մ.թ.ա. II—I հազ. բրոնզե սկավառակների և նրանցից շղթաներով կախված կամ սկավառակների վրա բազմած թռչունների մեջ։*

**Աղ. 61, եկ. 1** *(մ.թ.ա. III հազ.)—Պատկերված է ճառագայթավոր արևի սկավառակ և կողքին կանգնած մի թռչուն, որն իր երկար վզով հիշեցնում է Սամարայի և Շենգավթի խեցանոթների վրա պատկերված վիշապների դեմ մարտնչող թռչուններին։ Ներքևում տեղադրված են այծի, եղջերուի, մեկ այլ այծի և նրա կողմը շտապող մարդու պատկերներ։ Այծի եղջյուրների | մոտ գծված են երկու կիսալուսնաձև իրար հանդիպակաց պատկերներ։*

**Աղ. 61, եկ. 2**—*Շրջանագծով և յոթ ճառագայթներով արևապատկերը զետեղված է թռչուն արտահայտող գաղափարանշանների, այծի և երկու շների (կամ գիշատիչների) միջավայրում։*

*Արևի և թռչունի՝ մեկը մյուսին խորհրդանշող պատկերները հանդիպում են մ.թ.ա. III հազ. վերջին և II հաղ. սկզբին պատկանող մի այլ տեսարանում։*

**Աղ. 61, եկ. 3**—*Անհավասար ճառագայթներ ունեցող արևի սկավառակը գտնվում է կենդանիների միջավայրում։ Սրանց մեջ հնարավոր է տարբերել վեց այծ, մի ցուլ, երկու գիշատիչ, որոնցից մեկը՝ բաց արած երախով փորձում է բռնել այծերից մեկին։ Մյուս գիշատչի վրա որսորդը պարան է նետել։ Վերջինս ներքևից զետեղված է տեսարանի կենտրոնում և ունի չափազանց ընդհանրացված ձև՝ իրանը և ոտքերը կազմված են երեք գծերով։ Վերին մասում իրանը վեր է ածվում պարան նետող թևի, որը արտակարգ արտահայտչություն և դինամիկա է հաղորդում ողջ տեսարանին։ Երկու կենդանիների միջև պատկերված է արևի խաչաձև գաղափարանշանը և նրա ներքո՝ երկարավիզ թռչուն, որը նույնությամբ կրկնում է նախորդ տեսարանի թևավորին։ Ավելի արտահայտիչ է արևի ճառագայթավոր սկավառակից ձախ պատկերված ճախրող թռչունը, որն, անկասկած, նույնպես կրում է արևի գաղափարը։ Նա բավական խոշոր է, ունի արծվի ուժեղ ու սուր կտուց։ Նրա ողջ պատկերը ուժ է արտահայտում։ Արծիվը դարեր ի վեր արև է խորհրդանշել աշխարհի շատ երկրներում։*

**Աղ. 62, եկ. 1**—*Արևի սկավառակն իր կիսակլոր վեց ճառագայթներով գտնվում է թռչունի կտուցի մոտ, առաջացնելով, ինչպես նշվել է այլ առիթներով, «Խավք ըմ ընցավ էրկնուց, ոսկի լական կեր կտուց» հայ ժողովրդական հանելուկի նկարազարդման տպավորությունը։ Իսկ հանելուկի գաղափարական իմաստը հենց թռչունի և արևի սերտ կապն է, թռչունի՝ արևի գաղափարակիր լինելը։ Բրոնզեդարյան նյութերում այս պատկերը կարելի է համեմատել վերոհիշյալ բրոնզե*

---

[1] *Այս թեմայի վերաբերյալ տե՛ս Ռ. Հ. Իսրայելյան, Պաշտամունքն ու հավատալիքը ուշբրոնզեդարյան Հայաստանում, Երևան, 1973, էջ 70—86, նկ. 36—43։*

սկավառակներին նստած թռչունների արձանիկների հետ։ Թռչունից ցած կա մի այծ (ոճական համկանիշներով բնորոշ մ.թ.ա. II հազարամյակին), այնուհետև անհասկանալի մի պատկեր։ Սա կոր գծերով կազմված ուղղանկյունի է՝ լցված հորիզոնական և խաչվող ուղղահայաց գծերի վանդակաձև ցանցով։ Այծի և թռչունի միջև զետեղված է մարդու պատկերագրական մի գաղափարանշան, կազմված ուղղահայաց՝ ծայրից երկճեղքվող գծով։

**Աղ. 62, Նկ. 2**—*Թռչուն, որի պատկերի վերևից և ներքևից գծագրված են լուսատուներին բնորոշ նշաններ, ներքևի գիծը կիսակլոր է, հավանաբար խորհրդանշում է լուսինը։ Լուսնի այսպիսի պատկերներ Գեղամա լեռներում գտնվել են նաև մեկուսի։ Թռչունի իրանից վեր գտնվող կլոր գիծը կարող է ունենալ բացված թևի կամ գարձյալ լուսնի իմաստ։*

Նեոլիթ-երկաթեդարյան Հայաստանի արվեստում ու կրոնագաղափարական պատկերացումների մեջ երկնակամարը, երկնային մարմինները ներկայացվում են ոչ միայն թռչնի, այլև բազում այլ կենդանիների պատկերներով։ Այս մտայնությունը տիպական էր ողջ նախնադարին և առայսօր էլ պահպանել է զգալի հետքեր։

**Աղ. 62, Նկ. 3**—*Պատկերված է մ.թ.ա. III հազ. բնորոշ մի այծ և նրա փորի տակ՝ արևի խաչամիջուկ սկավառակը։ Աջակողմյան զիշատչի պատկերը ուղեկցվում է վեցաթև աստղանշանով։*

**Աղ. 62, Նկ. 4**—*Սա մի հոյակապ կոմպոզիցիա է, որի դեմ-դիմաց եղջերակոիվ տվող զույգ հզոր այծերի փարթամ, կամարաձև եղջյուրների ներքին կիսաշրջանների մեջ խաչեր են պատկերված՝ մի դեպքում ուղիղ, մյուսում՝ թեք գծերից կազմված։ Խաչերն ամփոփող կիսաշրջաններն հանգչում են այծերի մեջքին և դառնում արևի շրջանակ։ Բացի այս խաչամիջուկ սկավառակներից, այծերից մեկի եղջյուրի ծայրին բազմած է այն նույն գիշատիչը, որը նախորդ կոմպոզիցիայում ուղեկցվում էր վեցաթև աստղանշանով։ Լուսատուի (արևի) մյուս նշանը՝ խաչը, կրում է այծը։ Սրա շուրջը պատկերված են ևս մի քանի այծեր։ Այս բոլորից զատ կոմպոզիցիայում կան երկու մարդու և կենդանու պատկերներ։*

**Աղ. 63, Նկ. 1**—*Այս կոմպոզիցիայում խոշոր այծը հարում է արևի ճառագայթին, նրանից աջ երեք փոքրիկ այծեր կան, իսկ վերևում երկար ու գալարավուն, օձակերպ մի պատկեր։*

**Աղ. 63, Նկ. 2**—*Այս կոմպոզիցիայում վերից վար պատկերված են ճանկախաչը (արևի սիմվոլ), օձ-կայծակ, խաչ-աստղանշան և մի այծ։*

**Աղ. 63, Նկ. 3**—*Գոգավոր շրջանակներից կազմված երկնային մարմինների շրջագծային պատկերներ են, որոնցից ստորիններին ուղեկցում են այծի և մարդու պատկերները, իսկ վերինին՝ կատվացեղ գիշատիչները։*

Բացի թռչնակերպ ու կենդանակերպ լուսատուներից, Գեղամա լեռներում, մասնավորապես «Շեյխի չինգիլ» կոչված պատկերախմբում, որ լի է լուսատուների երկրաչափական պատկերներով, երկնային մարմինների հետ հանդիպում են նաև խիստ ոճավորված մարդկային պատկերներ։

**Աղ. 63, Նկ. 4**—*Դրանք փորագրված են մեկուսի, առանձին ժայռաբեկորների վրա, զբաղեցնում են 40—90 քառ. սմ տարածություն, կենտրոնում ունեն գլխով կամ առանց գլխի, տարածած կամ կանթած թևերով մարդակերպ էակի ստվերանկարի ձև, որի իրանը պատկերված է մի գծով, առանց անգամ ոտնամասում ճյուղավորվելու։ Երբեմն կանթած թևերը լայն կրծքավանդակի տպավորություն են թողնում։ Ահա այս էակների թևերի մոտ, ոտքերի տակ և գլխավերևում, իբրև կանոն փորագրված են երեք, հինգ կամ յոթ երկնային մարմիններ՝ մեջը ծեծած շրջանակներով։* «Շեյխի չինգիլում» և Գեղամա սարերում ամենուրեք շատ հաճախ են հանդիպում յոթ ոլորտային գոգավորություններից կազմված շրջաններ, որոնք, ինչպես ստորև կտեսնենք, առանձնահատուկ նշանակություն ունեին այդ տեղերի անասնապահ-երկրագործների համար։

## ԵՐԿՆԱՅԻՆ ՄԱՐՄԻՆՆԵՐԻ ԵՐԿՐԱՉԱՓԱԿԱՆ ՊԱՏԿԵՐՆԵՐ, ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԵՎ ՏՈՄԱՐԱՅԻՆ ՀԱՇԻՎ

Գեղամա լեռներում մեծ խումբ են կազմում լուսատուներ խորհրդանշող երկրաչափական պատկերները։ Դրանք հանդիպում են թե մեկուսի, թե զանազան կոմպոզիցիաներում (խաչեր, սվաստիկաներ, իրար մեջ ներգծված շրջանագծեր, կետշրջանագիծ, աստղաձև պատկերներ և այլն)։ (աղ. 64)։

Այդ նշանները բազմիցս հանդիպում են նաև վերը քննարկված կոմպոզիցիոն նկարներում, որսի տեսարաններում։ Դրանց գերազանց մեծամասնությունը տեղադրված է «Շեյխի չինգիլի» ժայռանկարներում, որոնք իրենց բնույթով ավելի հիշեցնում են նախնադարյան երկնադիտորդների կայան-գուշակարան, քան սովորական պատկերախումբ։ Քննարկվող նյութի տեսակետից մեծ հետաքրքրություն են ներկայացնում «Շեյխի չինգիլի» երկու լուսնապատկերները, որոնք փորագրված են առանձին քարերի վրա, մեկուսի, խոր ակոսներով և մեծ չափերով (աղ. 65, նկ. 1, 2)։

Աղ. 65, Նկ. 1—*Սրանցից առաջինը համեմատաբար փոքր է (մոտ 40 սմ), ունի ներքին շրջանակներ, մեծի վրա կա 28 երկարուկ ճառագայթ։ Արդ, եթե նկատի ունենանք, որ Հայաստանի տարածքից լուսինը ամսվա ընթացքում երևում է ընդամենը 28 օր, ապա ստիպված կլինենք ընդունել լուսնային ամսվա տևողության և «Շեյխի չինգիլի» լուսնապատկերների ճառագայթների քանակի լրիվ համապատասխանությունը։ Եթե ճառագայթների այդ քանակը բաժանենք լուսնապատկերի 2 հավասար շրջանակների վրա՝ կստանանք 2×14=28, այսինքն՝ նորալուսնից մինչև կիսալուսին և կիսալուսնից մինչև լիալուսին ընկած ժամանակաշրջանը։ Այս երկու կիսամսյակներն էլ երկուսի բաժանելով, կստանանք նվիրական 7 թիվը։*

*Այստեղ մենք գործ ունենք չորս շաբաթներից բաղկացած լուսնային ամսվա հաշվումների հետ։ Ինչպես ճիշտ նկատել են մասնագետները, մեր նախնիներն էլ հին բաբելացիների և հրեաների նման լեռնային բարձունքների վրա, դաշտավայրերի բարձրադիր կետերում հատուկ հերթապահներ են ունեցել, որոնք հսկել և ազդարարել են նորալուսնի երևալը։*

Աղ. 65, Նկ. 2—*«Շեյխի չինգիլի» երկրորդ լուսնապատկերը զգալի չափով տարբերվում է վերը նկարագրածից։ Այն ունի ավելի խոշոր չափեր (80 սմ), ձվածիր գծագրություն, արտաքին շրջանակի վրա՝ ճառագայթների կրկնվող 28 թիվը, որոնցից մեկը մեծ է ու նորալուսնի նման։ Այս մեծ մահիկով, ըստ երևույթին, նշվում էր ամսվա սկիզբը, և պատկերը տարբերակվում էր արևի սովորական սկավառակից։ Լուսնի՝ վերը նկարագրած առաջին սկավառակի միջին օղակի վրա պատկերված են ձվածիր դասավորված 18 ճառագայթներ և, այսպիսով, երկրորդ պատկերի մեջ լուսնամասի 28 օրերից բացի, ավելացվում է ևս 18-ը, և ճառագայթների ընդհանուր թիվը հասնում է 46-ի։ Սրա կրկնապատիկը գարնանային օրահավասարից մինչև ամառային արևադարձն ընկնող օրերի քանակից պակաս է միայն մեկով (92 օր՝ 93-ի փոխարեն), իսկ ութապատիկը արևադարձային տարվա տևողությունից ավելի է ընդամենը 2,5 օրով (368)։ Այս պատկերների հիման վրա կարելի է ենթադրել, որ «Շեյխի չինգիլը»՝ Գեղամա լեռների ամենաբարձրադիր վայրերից մեկը (ծովի մակերևույթից 3500 մ բարձրության վրա) եղել է նախնադարյան խաշնարածների տաճար-աստղադիտարան, որտեղից հսկել են լուսատուներին, հաշվել օրերի ու ամիսների քանակը և լուսատուների շարժումներով գուշակություններ արել։ Եթե ճիշտ է այս ենթադրությունը, ապա նման տաճար-աստղադիտարաններ մենք պետք է ունենանք նաև Հայաստանի այլ բարձրադիր վայրերում, պետք է ունենանք նաև երկնային մարմինների համանըման պատկերներ, որոնց քանակական հարաբերությունները հիմնված լինեն վերը բերված 7—14—28 թվերի հաշիվների կամ սրանց համապատասխան արևադարձային տարվա օրերի քանակի վրա։*

*Այդ տեսակետից հսկայական նշանակություն ունի Սև սարի (Վարդենիսի լեռներ) վերը հիշատակած ժայռապատկերների խումբը*[2]*, որը աշխարհի եզակի հուշարձաններից է թե՛ իր ձևով և թե՛ իր բովանդակությամբ։ Սև սարի տոմարական կոթողները շարունակում և զարգացնում են «Շեյխի չինգիլի» «աստղագետների» հաշիվները։ Դրանցից ամենահետաքրքիրները երեքն են։*

Աղ. 66, Նկ. 1—*Առաջինը փորագրված է որձաքարի հարթ մակերեսի վրա խոշոր նշաններով և զբաղեցնում է մոտ 120 քառ. սմ տարածություն։ Պատկերված մարմինների մեջ մեծ քանակով աչքի են ընկնում կիսասֆերային գոգավորություններ մի քանի խմբեր, որոնց պայմանականորեն կարելի է աստղախմբեր անվանել։ Սրանց երկու խմբերը կազմված են յոթական միավորից, երրորդ խումբը՝ եռաշար դասավորված 38 միավորից, չորրորդի կիսասֆերային մարմինները փորագըրված են առանձին-առանձին։ Քարի վրա կա ընդամենը 56 միավոր։ Բացի սրանցից կան նաև չորս այլ պատկերներ, որոնցից երկուսը կեռ ակոսներ են, մեկը՝ հիդրայի խոշոր մարմին և վերջինը՝ մարդակերպ սխեմատիկ ստվերանկար։ Այստեղ հեշտ է նկատել, որ աստղախմբի 56 միավորի մեջ օրինաչափորեն կրկնվում է «Շեյխի չինգիլից» ծանոթ 7, 14, 28 թվերը և հավելվում է դարձյալ 28։ Այս թվի մեջ մտնում են 8 նորալուսին կամ չորս կիսալուսին և կամ 2 լիալուսին, այսինքն՝ լուսնային երկու ամսվա օրերի քանակ։ Պարզ նկատվում է նաև զույգ թվերի բազմապատկման-բարդման միտում, որը թվաբանորեն արտահայտում է երկնային մարմինների կրկնվող պտույտը և լուսնի փուլերի միապաղաղ կրկնությունները ժամանակի որոշակի միավորների մեջ։ Այս հանգամանքը հնարավորություն է տալիս նշված 28 թիվը բազմապատկելու 12-ով, որը նույնպես ի սկզբանե անտի գործածվող սրբազան թիվ է և 12 շրջանակների ձևով հանդիպում է Հայաստանի բոլոր ժայռանկարներում։ Այս թվերի բազմապատկումից ստացվում է 336, որ հավասար է 12 լուսնային ամիսների տևողությանը։ Տարին բոլորելու համար*

---

[2] *Սև սարի այս հուշարձանները հրատարակված են՝ «Գեղամա լեռների ժայռապատկերները», պրակ I, առանց մեկնաբանությունների։ Այստեղ բերվում են և մեկնաբանվում այդ պատկերները։*

*մնում էր ավելացնել լուսնային 13-րդ ամիսը (28 օրով) և կստացվեր 364 օր, որը մոտավորապես հավասար է արեգակնային տարվա տևողությանը։ Մյուս կողմից, եթե ժայռանկարի բոլոր 60 պատկերները բազմապատկենք 6-ով, կստանանք 360, որը դարձյալ մոտ է արեգակնային տարվա տևողությանը։*

Աղ. 66, նկ. 2—*Սև սարի երկրորդ հուշարձանը պարունակում է երկնային մարմինների այնպիսի քանակ, որն արտահայտում է արևադարձային ամսվա հաշվարկը, ունի առաջինի նմանությունը, նույնպես կազմված է կիսասֆերային մարմիններից, որոնք, սակայն, տարբերվում են դասավորությամբ և քանակով։ Դրանք զետեղված են երկու մեծ ձվածիրների մեջ՝ երեք շարքով և 31-ական միավորով (ընդամենը 62)։ Ձվածիրներից դուրս առկա են 3 այծանկարներ, մեկը կիսալուսնի, մյուսը պարույրիկի, երրորդը՝ մարդակերպ լակի պատկերներով (ընդամենը 6 միավոր)։ Դժվար չէ նկատել, որ 31 թիվը մոտ է արևադարձային տարվա 1 ամսվա օրերի քանակին, որ երկու ձվածիրների մեջ տեղադրված 62 միավորներն արտահայտում են երկու ամսվա օրերի հաշիվը։ Եթե այս գումարը (62) բազմապատկենք ձվածիրներից դուրս զետեղված 6 մարմինների թվով, ապա կստանանք 372, որ լուսնային 13 ամսվա գումարից մեծ է 8-ով, իսկ արեգակնային տարվա ժամանակակից հաշվից՝ 7-ով։*

Աղ. 65, նկ. 3—*Այժմ տեսնենք, թե ի՞նչ է ավելացնում այս բոլորին Սև սարի երկրորդ ամենամեծ հուշարձանը, որ փորագրված է 6 քառակուսի մետր մակերեսի վրա և նախնադարյան արվեստի ու տոմարի սքանչելի կոթող է։ Այն նման է աստղային քարտեզի, որի բազմազան մարմինները փորագրված են խոր ակոսներով ու փոսիկներով, շեշտված հստակ ու գեղեցիկ գծագրությամբ, շատ խոշոր չափերով։ Առանձին մարմինների տրամագծերը կազմում են 100, 40, 30 սմ։ «Քարտեզի» վրա հստակորեն զանազանվում են երկնային մարմինների չորս խումբ, որոնցից երեքը լցված են երկրաչափական պատկերներով, իսկ չորրորդը՝ երկրաչափական, մարդկային ու կենդանական պատկերներով։ Հուշարձանի ամենախոշոր յոթ մարմիններն արևի մետրանոց սկավառակի հետ մեկտեղ տեղադրված են քարտեզի կենտրոնում և թողնում են երկրից ամենամոտ տարածության վրա գտնվող, հասարակ աչքով տեսանելի խոշոր մոլորակների, արևի և լուսնի, այսինքն՝ արեգակնային համակարգի տպավորություն։ Կենտրոնական այս յոթ մարմիններից դուրս գտնվում են աստղային երկնքի ավելի հեռավոր, ավելի փոքր երևացող, արևից տարբեր հեռավորությունների վրա գտնվող աստղախմբեր կամ համաստեղություններ։ Դրանցից առաջինի մեջ կան 3 խաչ-աստղեր, խաչամիջուկ սկավառակ և «խոյ» նշանը (ընդամենը 5 մարմին)*[3]*, երկրորդի մեջ կա 14 մարմին՝ գալարամարմին օձ-կայծակներ, ձի, արև, լուսին, շանթաձիգ զույգ «եռկվորյակ» աստվածներ*[4]*։ Այստեղ պարզապես շեշտված են արևի տարեկան ճանապարհի վրա ընկնող 12 աստեղատներից երկուսը՝ «Խոյը» և «Երկվորյակները», որոնցով սկսվում և ավարտվում է արևի պըտույտի գարնանային ցիկլը։ Պատկերների վերջին խումբը անմիջապես կից է արևի սկավառակին և կազմված է կիսասֆերային աստղաբույլերից՝ երկու ձվածիրների մեջ առած 31-ական միավորներից, դրանցից ցած՝ 2 շարքի մեջ զետեղված 20 հավելյալ միավորներից, երկու կիսալուսնից և երկու խաչից՝ ընդամենը 86 մարմին։*

*Այժմ վերանանք «երկնային քարտեզի» բոլոր ֆիգուրներից և ներկայացնենք դրանք թվական միավորների մեջ։ Նախ նշենք, որ այստեղ ավանդաբար հանդիպում են այլ կոթողների 5, 7, 13 և 14 թվերը, որոնք կապվում են լուսնային ամսվա և տարվա հաշվումների հետ։ Կան նաև արեգակ-*

---

*[3] «Խոյ» նշանը ձևավորվել է մ.թ.ա. III հազ., ամենուրեք պատկերվել է իբրև համաստեղության նշան, փորագրվել է, ուրեմն և մտածվել չորս համակենտրոն շրջանակներից բաղկացած արևապատկերների տակ, ինչպես նաև շուրջանակի դասավորված յոթ երկնային մարմինների հետ, ինչպես այդ տեսնում ենք տվյալ դեպքում նաև Սև սարի քննարկվող կոթողի վրա։ Մ.թ.ա. III հազ. գոյություն ունեին այս համաստեղությանը նվիրված տաճարներ, և գարնանային տոնական ծեսեր էին կատարվում։ Մ.թ. VII դ. մեծ աստղագետ Շիրակացին հիշում է, որ խոյը խորհրդանշում էր մարտ ամիսը, համարվում էր ոչ միայն հոտի գլխավորը, այլև պտղաբերողը (Հ. Ա. Մարտիրոսյան, Հայաստանի նախնադարյան նշանագրերը, էջ 31—34, աղ. 8)։*

*[4] «Երկվորյակներ» պատկերող կոմպոզիցիան ներկայացնում է երկնաշխարհի կարևոր մի երևույթի առասպելական բացահայտումը։ Սրա ֆիգուրները խորհրդանշում են գարնանային շանթորոտի անհանգիստ օդերևույթը՝ արևի և կայծակի հզոր աստվածների երկնային ահեղ մարտը։*

*Վերանալով առասպելական նշված սյուժեի մեկնաբանումից, նկատենք, որ այս կոթողի կենտրոնում գտնվող շանթաձիգ աստվածները «երկվորյակները», հանդես են գալիս նույնանուն համաստեղության գլխավոր ֆունկցիայի մեջ, որն էր շանթ-որոտ-անձրևը՝ գարնանային երկրի պտղաբերումը։ Այս համաստեղությունն էլ կապվում է արևի պտույտի մայիսյան ընթացքի հետ։ Սա հաստատվում է նաև նրանով, որ «երկվորյակ» կոչված ֆիգուրները, ինչպես տեսանք, հանդես եկան նաև փոքր Պայտասարի ժայռանկարում՝ յոթ երկնային մարմինների հետ, իսկ այլուր բազմիցս հանդիպում են արևների կամ արևի ճանկախաչերի հետ։ Սրանք էլ «խոյի» նման ենթադրվում են միայն արեգակի «յոթ մոլորակների» կապակցության մեջ։ Ինչպես երևում է, Սև սարի աստղային քարտեզը կապ ուներ գարնան արեգակնային և երկրագործական ցիկլի հետ։*

նային ամսվա, ուրեմն և տարվա հետ կապված 31 և 62 թվերը։ Այս բոլորին արդեն ծանոթ ենք նախորդ հուշարձաններից, սակայն այստեղ դրանք հանդես են գալիս միասնության մեջ, միահյուսելով, ըստ երևույթին, լուսնաարեգակնային տարվա կոմպլեքս հաշիվը կայուն թվերի մեջ։ Նշված թվերից բացի, այստեղ օրինաչափորեն հանդես են գալիս 94 և 82 թվերը, որոնք նույնպես արտահայտում են լուսնաարեգակնային տոմարի հարաբերությունները։ Տեսնենք, թե ի՞նչ են այդ թվերը և ինչպիսի՞ հարաբերության մեջ են իրար հետ։

Ինչպես ասվեց, արևի համակարգը ներկայացնող խմբի մեջ կան 7 և 13 միավորները։ Եթե 13 կիսասֆերային գոգավորությունները ընդունենք իբրև 13 լիալուսին՝ յուրաքանչյուրը 28 օր տևողությամբ, ապա կստանանք 364, եթե 13 թիվը բազմապատկենք 7-ով (արև-լուսին և հինգ մոլորակներ), ապա կստանանք տարվա քառորդի (մեկ եղանակի) օրերի միջին 91 թիվը, որը քառապատկելու դեպքում նույնպես կստանանք 364 կլոր թիվը, իսկ եթե նույն 13-ը բազմապատկենք «Երկվորյակ» համաստեղության մարմինների 14 թվով, ապա կստանանք 182, որը կես տարվա օրերի միջին թիվն է (364-ի կեսը)։ Այսպիսով, ստացվում են մեկ, երկու և չորս եղանակների օրերի միջին և կայուն թվերը, որոնցից ամենախոշորը՝ (364-ը) հավասար է 13 լուսնային ամսվա գումարին կամ արևադարձային մեկ տարվա օրերի քանակին (ժամանակակից հաշվից 1 օրով պակաս)։

Տեսնենք, թե ինչպես են արտահայտվում այդ թվերը վերը նկարագրած արևի սկավառակի և նրա տակ տեղադրված աստղախմբերի մեջ, որոնք պարզապես յուրօրինակ նախնադարյան տոմարական աղյուսակներ են։ Վերը նշեցինք, որ կոթողի կենտրոնում փորագրված արևի խոշոր սկավառակը կառուցված է լուսատուի մշտնջենական պըտույտը ցույց տվող կենտրոնական պարույրի և հետզհետե մեծացող երեք համակենտրոն շրջանակների գումարով։ Արտաքին շրջանակի վրա կան երեք ճառագայթներ, որոնք ցույց են տալիս հարավը, ներքին՝ երկրորդ շրջանակի վրա կան 16 կիսաշրջան բշտիկներ, երրորդ շրջանակի վրա՝ մի կողմից՝ 34, իսկ մյուս կողմից՝ 44 թեփուկ-ճառագայթներ։ Այսպիսով, ուսումնասիրվող արևի սկավառակն իր մեջ պարունակում է չորս շրջանագիծ և 94 բշտիկ-ճառագայթ։ Արդ, եթե արևագնդի միջուկը կազմող պարույրը ցույց է տալիս մարմնի շարժումը, ապա այդ նույն պարույրը մյուս երեք անընդհատ մեծացող շրջագծերի հետ կարող է ցուցանիշ լինել նաև նրա չորս գլխավոր դիրքերի, որոնք են՝ գարնանային և աշնանային գիշերահավասարի օրերը և ամառային ու ձմեռային արևադարձի օրերը։ Արանցով նախնադարյան մեր նախնին որոշում էր տարվա չորս եղանակները, որոնք անմիջականորեն կախված էին արևի դիրքից։ Պարզ երևում է, որ արևի սկավառակը պարունակում է երկու համադրելի թվեր՝ 4-ը և 94-ը։ Ակընհայտ է նաև, որ 94 բշտիկ-ճառագայթները տեղադրված են երկու շրջանագծերի միջև, այսինքն՝ արևի երկու դիրքերի՝ ենթադրենք գարնանային օրահավասարի (մարտի 21-ը) և ամառային արևադարձի (հունիսի 22-ը) միջև։ Նշանակում է. դրանով արտահայտվում է արևի տարեկան պտույտի քառորդը։ Լրիվ պտույտն ստանալու համար պետք է այս թիվը (94-ը) բազմապատկել 4-ով, կստացվի 376, որ մոտ է արեգակնային տարվա օրերի թվին։ Մյուս կողմից՝ եթե 94-ը բաժանենք 3-ի, կստանանք 31,3 կոտորակավոր թիվը, որը գրեթե համապատասխանում է գարնան կամ ամառվա արեգակնային ամսվա օրերի քանակին։ Ուրեմն, 94 թվի մեջ պարունակվում է 3 ամիս՝ մեկ եղանակ։ Հետևելով ժամանակակից մեր օրացույցին, կտեսնենք, որ գարնանային օրահավասարից (մարտի 21-ից) մինչև ամառային արևադարձ (հունիսի 22) տևում է ուղիղ 93 օր (3 ամիս՝ 31 օրով)։ Օրերի նույն քանակը բաժին է ընկնում ամառային արևադարձից (հունիսի 22) մինչև աշնանային օրահավասարը (սեպտեմբերի 23-ը)։ Մեկ կիսամյակը մեր նախնիների արևային օրացույցով կազմում էր 188 օր, իսկ ժամանակակից օրացույցով՝ 186 օր։ Վստահորեն կարելի է ասել, որ Սև սարի աղյուսակը պարունակում է մեկ կիսամյակի օրերի գրեթե անսխալ թիվը։

Խնդիրն այն է, որ զգալով 6 ամսում առաջացած երկու օրվա տարբերությունը, հին տոմարագետները արևի սկավառակի տակ տեղագրել են մեկ այլ աղյուսակ, որտեղ երկու ձվածիրների մեջ կիսասֆերային մարմինների թիվը հասնում է 62-ի և կիսամյակինը՝ 186-ի, որը լրիվին համապատասխանում է ժամանակակից օրացույցի գարնան և ամռան օրերի 186 թվին՝ վեց ամսվա տևողությանը։ Տարվա հաջորդ կեսը նույն սկզբունքով հաշվելու դեպքում կստացվեր 372 թիվը, որը 8-ով ավելի է լուսնային 13 ամսվա (364 օր) օրերի քանակից։ Այդ պատճառով այստեղ ընդունվել է երկակի սկզբունք. տարվա առաջին երեք քառորդների համար կիրառվել է արեգակնային տոմարի (94×3=282 օր գարնանային օրահավասարից մինչև ձմեռային արևադարձ), իսկ չորրորդ քառորդի համար՝ 82 օր, որոնց գումարը կազմում է 364։ Այլ դեպքում՝ արեգակնային տարվա 2 քառորդի (93×2) և լուսնային տարվա 2 քառորդի (82×2) գումարը կկազմի 350։ Լուսնային տարվա 13 ամիսների 364 գումարը ստանալու համար անհրա-

մնում է 350-ին ավելացնել 14 օր՝ լուսնային կես ամիս։

Այս աղյուսակով օրերի հաշվարկը կարելի է կատարել նաև այլ ձևով՝ 31×12=372, 82×4=328, 372—8=364, 328+8–336-ի, այսինքն՝ 12 լուսնային ամիսների օրերի թվին։ Եթե 336-ին ավելացնենք ևս 28 օր՝ մեկ լուսնային ամիս, ապա կստանանք 12 արեգակնային և 13 լուսնային ամիսների թիվը՝ 364 օր։

Բերված բոլոր թվերի իմաստն այն է, որ նրանցով արտահայտվում են օրինաչափ փոփոխություններ, որոնց բազմազան կոմբինացիաները լիովին արտահայտում են լուսատուների տարածության ու ժամանակի մեջ կատարվող շարժման տարբերությունները՝ տարվա ընթացքում արեգակի, լուսնի, համաստեղությունների դիրքերի պարբերական վերականգնումը, նրանց մեջ ընկնող ավելի փոքր միավորների՝ օրերի, ամիսների, եղանակների միալար կրկնումը և օրինաչափ վերականգնումը։

Ի մի բերելով «Շեյխի չինգիլի» և Սև սարի հուշարձաններում պատկերված երկնային մարմինների թվերը, նրանց ֆունկցիոնալ նշանակությունը և զուտ թվաբանական հարաբերակցությունը, ավելի ևս կհամոզվենք, որ նախնադարյան Հայաստանում մ.թ.ա. II հազ. վերջերին և I հազ. սկզբներին տոմարական հաշվումները բարձրացված էին աննախադեպ մակարդակի։

Քննարկված բոլոր հուշարձաններում հանդիպող հիմնային թվերը և նրանց ֆունկցիոնալ նշանակությունները հետևյալներն են. 1) 2՝ լուսնի սկավառակի երկու օղակ, կիսալուսին, լիալուսին, լուսնամսի 2 կես, 2) 4՝ արևի սկավառակի 4 օղակներ, արևի 4 դիրքեր, տարվա 4 եղանակներ, 3) 6՝ լուսնային կամ արեգակնային կրկնակի ամիսների թիվը, 4) 7՝ նորալուսնի օրերի թիվը, արև-լուսին և աչքով տեսանելի 5 մոլորակների թիվը, 5) 13՝ 13 լիալուսինների, լուսնային տարվա տևողությունը, 6) 14՝ լուսնային կես ամսվա՝ կիսալուսնի օրերի քանակը, 7) 28՝ լուսնային ամսվա օրերի թիվը, 9) 56՝ լուսնային զույգ ամսվա օրերի թիվը, 10) 62՝ արեգակնային զույգ ամսվա օրերի թիվը, 11) 82՝ արեգակնային զույգ ամսվա և լրացուցիչ 20 օրերի թիվը, 12) 93—94՝ արեգակնային 3 ամսվա օրերի թիվը։

Այժմ դիտենք այդ թվերի հարաբերությունը գումարման, բազմապատկման կամ բաժանման դեպքում՝ 2×7=14=28 : 2, 2×28=56՝ կիսալուսնի, լուսնային ամսվա և 2 ամսվա օրերի քանակը։

2×31=62՝ արևային երկու ամսվա օրերի քանակը, 7×13=91՝ քառորդ տարվա միջին թիվը, 3×31=93՝ գարնան եղանակի երեք ամսվա տևողությունը, 14×13=182՝ կես տարվա օրերի միջին թիվը, 2×93–186՝ գարնան և աշնան կիսամյակի տևողությունը ըստ արեգակնային օրացույցի, 4×94–376՝ արեգակնային տարվա թիվը, 4×93=372՝ արեգակնային տարվա թիվը, 4×82=328՝ լուսնային տարվա 11,5 ամիսները, 6×56=336՝ 12 լուսնային ամսվա օրերի քանակը, 13×14=182՝ լուսնային 13 կիսամյակների կամ արեգակնային կես տարվա թիվը։ Արդ, եթե լուսնային 13 կիսամյակների թիվը բազմապատկենք (11×13), եթե լուսնային 12 ամիսներին գումարենք ևս մեկը (336+28) կամ լուսնային զույգ ամիսները բազմապատկենք 6-ով (56×6), կամ արեգակնային տարվա 376 օրից հանենք 12, կամ արեգակնային տարվա 372 թվից հանենք 8, բոլոր դեպքերում կստանանք 364։ Սա արեգակնային տարվա 12 ամիսների և լուսնային տարվա 12 ամիսների կայուն թիվն է, որը կստանանք նաև Սև սարի մեծ տոմարի կոմպլեքս հաշվումներից։ Այդ պատճառով էլ տարվա օրերի նույն գումարը կարող ենք ստանալ նրա երկու կեսերի համար՝ օգտագործելով և՛ արեգակնային, և՛ լուսնային հաշվումները։ Այսպես, 3×94=282, 1×82=82, 282+82=364-ի, կամ եթե 31×12=372 և 82×4=328, ապա 372—8=364, 328+8=336+28 նույնպես կլինի 364։ Եթե ստացված բոլոր մեծ թվերը (374, 372, 364, 356, 336) գումարենք և բաժանենք 5-ի, ապա կստանանք 364 միջին թիվը։ Եթե արեգակնային և լուսնային տարիների օրերի քանակը 374, 372, 364, 356, 336 բաժանենք 12 ամիսների վրա, համապատասխանաբար կստանանք ամիսների միջին տևողությունները՝ 31,1, 31, 30,4, 29,6 և 28։ Հասկանալի է, որ առաջին երկու թվերն արտահայտում են մոտավորապես արեգակնային ամսվա օրերի քանակը, իսկ վերջին երեք թվերը՝ լուսնային ամսվա։ Եթե հանենք սրանց միջին թվաբանականը, կստանանք ամսվա 30,6 օր միջին տևողությունը, որը բազմապատկելով 12-ով, կստանանք 360,72՝ տարվա օրերի միջին թիվը։ Այս դեպքում պետք է ավելացնել հայտնի 5 թիվը, որը առկա է Սև սարի «տոմարագրքի» «Խոյ» համաստեղության մեջ և դարձյալ կունենանք ժամանակակից օրացույցի 365 օրը։

Ունենալով այսպիսի կատարյալ տոմար և կարողանալով որոշել ամառային արևադարձի կեսօրվա ստույգ ժամը՝ արևի ամենակարճ ստվերի օգնությամբ, մեր հին տոմարագետները կարող էին ճշգրիտ հաշվումների միջոցով կարգավորել երկրագործական-անասնապահական տոների ու ծեսերի հերթականությունը և, որ գլխավորն է, կանխապես հաշվել եղանակները, ամիսներն ու օրերը, որոնք կենսական նշանակություն ունեին

տեխնիկապես չզինված մարդու կացութաձևում։ Եթե այսօր մեր ունեցած նյութերը քիչ են նախնադարյան «աստղագետ-տոմարագետների» իմացությունները ստույգ պարզելու համար, ապա մենք իրավունք չունենք մեղադրելու նրանց տգիտության մեջ։ Հայտնի է, որ հարևան Միջագետքում և Եգիպտոսում արդեն մ.թ.ա. III հազ. օգտվում էին ոչ միայն օրացույցից, այլև ավազի ու ջրի ժամացույցներից[5], իսկ Հայաստանի մ.թ.ա. II—I հազ. լուսնաարեգակնային ներկա օրացույցն անկասկած առաջադեմ երևույթ է Եգիպտոսի ու Բաբելոնի աստղային օրացույցների համեմատությամբ և ապրիորի ենթադրել է տալիս ավելի հին աստղային տոմարի և օրացույցի առկայությունը գոնե մ.թ.ա. III հազ. սկսած։ Չէ՞ որ Մեծամորի դիտարանների կիսորդը համընկնում է մ.թ.ա. III հազ. կեսերին վաղ առավոտյան ծագող Սիրիուս պայծառ աստղի ուղղությանը, և այդ ժխտել հնարավոր չէ[6]։ Մեր ձեռքի տակ եղած բոլոր նյութերը հաստատում են, որ մեր հեռավոր նախնին գործնականորեն լավ գիտեր երկնային մարմինների շարժման մի շարք օրինաչափություններ, գիտեր նրանց արտացոլումը զուտ երկրային բնական երևույթների փոփոխության մեջ։ Այս օրինաչափությունների ճանաչումն ու օգտագործումը նրա առաջընթացի հիմնական պայմաններից մեկն էր մանավանդ երկրագործության, անասնապահության, որսի և արհեստների մեջ։ Երկրագործական ճիշտ տոմարի և ծրացույցի առկայությամբ միայն կարելի է բացատրել նախնադարյան տնտեսության թռիչքաձև զարգացումը բրոնզի դարաշրջանում, երբ Եփրատի, Տիգրիսի, Արաքսի և Հայկական լեռնաշխարհի բազմաթիվ այլ գետերի հովիտները լցվեցին հին երկրագործների անթիվ բնակավայրերով, նրանց կից ջրովի ցանքատարածություններով, որոնց պրիմիտիվ ոռոգումն անգամ պահանջում էր ստույգ գիտենալ գետային ցանցի ռեժիմը, իսկ ցանքսն ու բերքահավաքը պահանջում էին կանխապես իմանալ ոչ թե ամիսները, այլ հողի փխրեցման, վարի, ցանքսի մշակման, ոռոգման և բերքահավաքի օրերը։ Իզուր չէ, որ Հայկական տոմարի ամսանունների մեծ մասը կապված է երկրագործական աշխատանքների հետ։

Բրոնզի դարաշրջանում վճռական թռիչք է կգացվում նաև անասնապահության մեջ, որ բացատրվում է նրա կիսաքոչվորական ձևի կիրառմամբ։ Դրա համար դարձյալ անհրաժեշտ էր իմանալ տոմարը և ունենալ գիշերվա պահին աստղերով կողմնորոշվելու ունակություն։ Մինչև հիմա էլ խաշնարածներն իրենց անասունը սարն են քշում գիշերով և շատ լավ կողմնորոշվում են տեղանքում։ Բրոնզի դարաշրջանի պատմական ընդհանուր առաջընթացը նախապատրաստեց Ուրարտական պետության առաջացումը, որն առանձնապես աչքի ընկավ թվաբանության, տոմարի, երկրաչափության զարգացման հետ կապված այնպիսի խոշոր գործերով, ինչպիսիք էին հզոր ջրանցքների բացումը, աշխարհում առաջին նշանակալից ակվեդուկի կառուցումը, քաղաքաշինությունը, հանքաշինությունը, հանքագործությունը, զորքերի տեղաշարժերը, մեծածախ առևտուրը և այլն։ Ուրարտական տոմարական հաշվումների վերաբերյալ վավերական նյութեր առայժմ հայտնի չեն։ Սակայն մենք գիտենք, որ ուրարտացիները հաշվում էին 10 000, 100 000 և ավելի մեծ թվերով, ունեին երկարության, կշռի, ծավալի, մակերեսի, դրամական համարժեքի միավորներ. Նրանք ժամանակը հաշվում էին ըստ հաջորդաբար իշխող թագավորների գահակալության տարիների, որոնք համընկնում էին ասորեստանյան էպոնիմների աստղաբաշխական եղանակով ստացված բավական ստույգ թվերին։

Նախնադարյան լուսնաարեգակնային տոմարի հայտնաբերումը առաջադրում է ուսումնասիրության մի շարք նոր խնդիրներ, որոնք երկար ժամանակ և լուրջ ջանքեր են պահանջում։

---

[5] **И. Н. Веселовский**, Египетские деканы, Историко-астрономические исследования, вып. X, М., 1969, стр. 58.

[6] **Է. Վ. Խանզադյան, Կ. Հ. Մկրտչյան, Է. Ս. Պարսամյան**, *Մեծամոր, Երևան, 1973, էջ 148—149*։

## Գ Լ Ո Ւ Խ  Վ Ե Ց Ե Ր Ո Ր Դ

# ԿՐՈՆԱԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱՑՈՒՄՆԵՐ, ՆԱԽՆԱԴԱՐՅԱՆ ԱՌԱՍՊԵԼՆԵՐԻ ՆՇԽԱՐՆԵՐ

*Քննարկված ժայռապատկերների որսորդական տեսարանները միաժամանակ ցույց են տալիս, թե որքան վտանգավոր ու դժվարին էր մարդու պայքարը գազաններին «սանձելու», ալպյան արոտավայրերը յուրացնելու, խաշնարածությունը զարգացնելու հազարամյա պրոցեսում, նախնադարյան տեխնիկայի և մարդու մտավոր զարգացման ցածր մակարդակի պայմաններում։ Չկարողանալով ըմբռնել ու բացատրել բնության երևույթները, իսկ շատ հաճախ նաև ընդդիմանալ ու հաղթահարել դրանք, նեոլիթ-երկաթեդարյան Հայաստանի բնակիչներն այդ երևույթները վերագրել են գերբնական ուժերի գոյությանն ու ներգործությանը։*

*Բնության ուժերի և երևույթների ոգեղինացումըն ու աստվածացումը արտացոլվել են Գեղամա, Սյունյաց, Արագածի լեռների ժայռանկարների ամենատարբեր տեսարաններում։ Որսորդական, անասնապահական, երկրագործական աստվածներն այստեղ ներկայացված են խոշոր, զորեղ կեցվածքով, մասամբ արտասովոր պատկերներով։ Նրանք հանդիպում են անշարժ դիրքում կամ գործողության մեջ, երկնային նշանների կամ կցորդ կենդանիների հետ միասին, վերջույթների կամ մարմնի տարբեր մասերի խոշոր ճառագայթաձև հավելումներով։*

## ՈՐՍՈՐԴՈՒԹՅԱՆ ԵՎ ԱՆԱՍՆԱՊԱՀՈՒԹՅԱՆ ԱՍՏՎԱԾՆԵՐ

*Որսի տեսարաններում հաճախ է ներկայացված որսի աստվածությունը՝ սկսած ուշ նեոլիթ-էնեոլիթյան ժամանակների ժայռապատկերներից մինչև վաղ երկաթի գարաշրջանի նկարները։ Դրանց առաջին, փոքրիկ, բայց շատ ցայտուն խումբը վերաբերում է մ.թ.ա. V—IV հազ.։ Դիտենք այդ պատկերները ժամանակագրական կարգով։*

**Աղ. 67, Եկ. 1** *(Մեծ Պայտասար)—Կոմպոզիցիան ընդգծում է որսորդական հավատալիքների կապը գերբնական ուժերի և տիեզերական պատկերացումների հետ։ Որսորդության աստծո մեծ պատկերը տեղադրված է կոմպոզիցիայի կենտրոնում։ Նրա լայն բացված ոտքերի միջև երևում է արական երկճյուղ նշանը։ Իրանի երկար ձողը հատված է հորիզոնական զուգահեռ կողագծերով, հզոր թևերն արմունկներից ուղղված են վեր, վիզը երկար է, գլուխը՝ կլոր, վզի երկու կողմերից մեծ ու փոքր երկուական շրջանակ-երկնանշաններ կան։ Աստծո կերպարը շրջափակված է խուճապահար ճողոպրող ցլի, ոճավորված անշարժ այծի և որսորդի պատկերներով։ Ինչպես արդեն նշվել է, կոմպոզիցիան ուշ շրջանի հավելումներ ունի։*

**Աղ. 67, Եկ. 2** *(Մեծ Պայտասար, մ.թ.ա. IV հազ. վերջ)—Որսի զույգ աստվածները տեղադրված են կոմպոզիցիայի կենտրոնում, ներքևից ու վերևից նրանց արանքում պատկերված է ճանկախաչ-արևանշանը։ Պատկերներն անզեն են, հզոր մարմիններով, բացված ոտքերով, ընդգծված արական նշանով ու թաթերով, կրծքավանդակն առանձնացված է իրանի ձողից և ընդլայնված, վզերը՝ երկար, գլուխները՝ կլոր։ Նրանց պատկերներն, առհասարակ, շեշտված ուժ են մարմնավորում։ Նրանցից մեկի մատները նման են եռաժանու։ Աստվածները պատկերված են երեք խոշոր այծերի միջավայրում։ Ներքևի որսորդ-աստվածը աջ ոտքով պահել է առջևի ոտքերը պարանով կապված այծերից մեկին, իսկ ձախ ձեռքով բռնել մյուսի խոշոր եղջյուրից, որի պատկերն ընդհանրապես չի երևում։ Ժայռապատկերներում հանդիպում են նման աստվածների նաև միայնակ պատկերներ, դարձյալ ճանկախաչ-արևանշանի ուղեկցությամբ, մերկանդամ, սակայն եռանիստ գլխանոցով, ձախ ձեռքում աղեղ բռնած, ուսերի վրա մահիկաձև ելուստներով, իսկ վերևում՝ դարձյալ նետ ու աղեղի նկար։*

**Աղ. 68, Եկ. 1**—*Աստվածային այս կերպարները երբեմն ներկայացվում են պարաններով զինված։ Պատկերված է մարդակերպ մի հզոր էակ, լարված մկաններով։ Նա մեծ թաթերով ամուր հենված է գետնին, ոտքերը իրարից հեռու դրված, կիսածալ ծնկներով, առնանդամը շեշտված, մեջքի վրա երկու զույգ հորիզոնական «կողոսկրեր»՝ ներքևից վերև լայնացող կրծքամասով, վիզը երկար, գլուխը կլոր, ուժեղ թևերը գլխի բարձրությամբ պահած։ Նա զույգ ձեռքին ունի արձակված պարաններ։ Պարանօղի ծայրին՝ օղի մեջ պոչից կապած մի այծ է թփրտում։ Պատկերի աջ մասում ուղղաձիգ մի մահակ է ցցված։*

*Նկարագրված ժայռանկարներին հետևում է մ.թ.ա. III հազ. հուշարձանների մի այլ խումբ, որն առանձնահատուկ արժեք է ներկայացնում թե կոմպոզիցիաների բազմազանությամբ ու հսկա չափերով, թե գաղափարական բովանդակությամբ, թե թվագրման համար ընձեռած հնարավորություններով։ Այս պատկերների մեծ մասը գտնվում է Փոքր Պայտասարի հարավ-արևելյան մասում հայտնաբերված մ.թ.ա. III հազ. ամենանշանավոր պատկերախմբերից մեկում։*

**Աղ. 68, Եկ. 2**—*ի տակ բերվում է սրանցից առաջինը, որ փորագրված է հարթ մակերեսով մի հսկա վեմի վրա, կազմված բազմաթիվ անզեն մարդկանց, այծերի, ցլի, եղջերուի, շների պատկերներից և «այծ-կայծակ-փայլակ», «արև» կամ «լուսին», «խաչ», «աստղանշան», «համասփյուռ», «աշխարհ» և անընթեռնելի մի քանի այլ նշանագրերից։ Հնարավոր է, որ երկնային բազում նշանագրերը մատնանշում են կոմպոզիցիայի ծիսակրոնական բնույթը։ Հնարավոր է նաև, որ ժայռանկարն ամբողջությամբ ներկայացնում է որսորդ-նախնիների, որոնցից ոմանք այծեր են որսում անզեն ձեռքերով, մյուսները՝ շների կամ պարանի օգնությամբ։ «Կտավի» ստորին մասում պատկերված է զույգ վերջավորությունները կապոտած մի արու այծ։ Հինգ այծի փոխարեն ներկայացված են ներճկված կողերով քառանկյունի երկրաչափական պատկերներ, որոնք փոխարինում են կից գագաթներով երկեռանկյունի այծանշաններին։ Կասկած չկա, որ դրանք մ.թ.ա. III հազ. շատ բնորոշ այծանշան սիմվոլներ են, քանի որ մի շարք այլ ժայռանկարներում այդպիսիք օժտված են եղջյուրների, գլխի, պոչի բնորոշ գծապրուկներով*[1]*։ Նկարագրվող ժայռանկարում այդ նշանները զետեղված են այծերի միջավայրում, նրանց ոտքերի տակ կամ մեջքավերևում (որտեղ սովորաբար պատկերվում են ուլիկները), և որսորդները նրանց որսում են անզեն ձեռքերով, պարանի կամ շան օգնությամբ։ Կոմպոզիցիայի կենտրոնում կա մարդակերպ մի պատկեր, արմունկներից ծալած ձեռքերն ու ոտքերը վեր մեկնած։ Սա զբաղված չէ որսով, սակայն իր կենտրոնական դիրքով և մարմնի հմայական—հանդիսավոր կեցվածքով հիշեցնում է որսի կամ կենդանիների աստվածության կերպար։ Այդպիսիք Գեղամա լեռների ժայռապատկերներում ներկայացված են բազմաթիվ ու բազմաձև կերպարներով և ավելի հստակ ու որոշակի հատկանիշներով։*

*Եթե նկարագրված ժայռանկարում այդ էակի աստվածություն լինելու հատկանիշն այնքան էլ ընդգծված չէ, ապա հաջորդ մեծ կոմպոզիցիայում այդ հանգամանքը բացահայտվում է լիովին։ Աղ. 69 որսի կամ կենդանիների աստծո պատկերը եռակի, քառակի անգամ մեծ է իր շուրջը գտնվող պատկերներից։ Այն ունի հանդիսավոր, ծիսահմայական անշարժ կեցվածք, ինչպես հնագույն մշակույթներում ներկայացվում են սովորաբար մարդակերպ կուռքերն ու աստվածությունները։ Նրա իրանը երկար է ու ճկուն, տեղ-տեղ հատվում է շրջանապատկերներով, ոտքերը կարճ են, ծնկները ճկված, դարձյալ ճկված երկար առնանդամով։ Երկար թևերը արմունկներից ծալված են, բազուկները վեր պարզած։ Նա աջ ձեռքով բռնել է փոքրիկ այծի եղջյուրից, որը պատկերված է գլխիվայր։ Հավանաբար, այդ այծը աստվածության կենդանական զուգորդն է, ինչպես հին արևելյան աստվածների կենդանակերպ կրկնակները։ Մարդու տեսք ունեցող աստծո պատկերի գլխավերևում առկա են երեք այլ այծեր, որոնցից երկուսը ներկայացված են երկրաչափական քառանկյան ձևով։ Գերագույն այդ էակը երկու կողմից շրջապատված է, ըստ երևույթին, երկրպագող անզեն մարդկանց թևատարած փոքրիկ պատկերներով։ Նրա ձախ ոտքի մոտ փորագրված է մի չորքոտանի, որն իր ոլորապտույտ եղջյուրներով հիշեցնում է խոյի։ Այս կենդանին իր աստծո նման երկնային ծագում ունի, նրան ուղեկցում է խաչամիջուկ արևի ճառագայթավոր սկավառակը և մի ավելի փոքր օղակ, որը լուսնի երկրաչափական խորհրդանիշը կարող է լինել։ Հնարավոր է, որ այս կենդանին ներկայացնում է գարնանային «խոյ» համաստեղությունը՝ արևի, լուսնի, կենդանիների և որսի աստվածության հետ միասին։ Այստեղ հարկ է նշել այն հանգամանքը, որ կենդանիների ու որսի աստվածությունները հին մտայնության ու արվեստի մեջ իբրև կանոն ներկայացվում են կենդանիների ու երկնային լուսատուների միջավայրում։ Այդպես էր հին աշխարհի երկրներում։ Նախնադարյան որսորդները օգնություն էին հայցում*

[1] Հ. Ա. Մարտիրոսյան, *Հայաստանի նախնադարյան նշանագրերը*, Երևան, 1973, աղ. V, սյուն. I։

իրենց աստվածներից, որսից առաջ և որսի պահին։ Գերագույն այդ էակներին հաճախ կենդանիներ էին զոհաբերում։ Զոհաբերությունները կատարվում էին այն ժայռանկարների մոտ, որոնց վրա փորագրված էին աստվածները։ Քննարկվող ժայռանկարների կոմպոզիցիոն ընթացքը ցույց է տալիս, որ այդ աստվածությունը հաջողություն է բերում որսկաններին։ Նրա շքեղ կերպարից ներքև պատկերված է մի հսկա արու եղջերու՝ երկար ոտքերով, սլացիկ իրանով, երկար մռութով ու փարթամ եղջյուրներով։ Կենդանու ոտքերի տակ փորագրված վիթխարահասակ որսորդը բռնել է նրա զույգ ոտքերից, իսկ մեջքին պատկերված են մի մարդուկ և ինչ-որ չորքոտանի։ Ներքևում պատկերված են ճողոպրող այծ և նրան ցածից հետապնդող որսկանի սխեմատիկ մի պատկեր, որը պարան է նետում այծի ոտքին։ Ավելի ցածում պատկերված են ճողոպրող մի վայրի ցուլ և անզեն մի մարդուկ, որը բռնել է կենդանու պոչից։ Կոմպոզիցիայի ստորին մասում կան երկու եղջերուների, թռչունի, շան պատկերներ և մի քանի անհասկանալի՝ ուղիղ, կոր և ճկված գծեր։

**Աղ. 70, Եկ. 1**—*Հաջորդ ժայռանկարում որսի աստծո ուրվանկարը նույնպես գտնվում է պատկերի վերին մասում. այն անշարժ վիճակում է, պպզած դիրքով, կախ թևերով, երկար, ճկուն իրանով և ընդգծված արական նշանով։ Նրա ուսերին կան երկնային երկու նշաններ՝ լուսնամահիկ և պարույր, որոնք հնում ընկալվում էին իբրև լուսնի, արևի ու հավերժության խորհրդանշան։ Այստեղ էլ, նախորդ պատկերի նման, աստվածությունը հանդես է գալիս երկնային իր ուղեկիցների հետ միասին, իբրև գերբնական էակ։ Սրա ողորմածությամբ չորս անզեն որսկաններ հաջողությամբ կատարում են իրենց գործը։ Նրանցից յուրաքանչյուրը պատկերված է որևէ կենդանու մոտ՝ որսի պահին։ Կոմպոզիցիան թեպետ լիովին անընթեռնելի չէ, սակայն ոճական առանձնահատկություններով վերաբերում է, անկասկած, մ.թ.ա. III հազ.։*

**Աղ. 70, Եկ. 2**—*Մ.թ.ա. III հազ. ծիսահմայական լավագույն պատկերներից է, որտեղ դարձյալ առաջին պլանում, խոր լայնակոս փորագրությամբ ներկայացված է գերբնական մի էակ, հավանաբար աստվածություն՝ կենդանիների ու որսկանների միջավայրում։ Նրա կեցվածքը ստատիկ է, հանդիսավոր, ոտքերն ու թևերը կամարաձև վեր ծալած, ուսերին՝ ճառագայթավոր ելուստներ, գլխավերևում՝ շրջանակներով պսակ, գոտկատեղում՝ ինչ-որ ելուստ, իրանի երկու կողմից՝ հասա գծեր։ Ձախից և ներքևից նրան ուղեկցում են երկու զույգ շքեղ զգեստավորված, մարդակերպ պատկերներ, որոնց գլխամասում (բացառությամբ մեկի) փորագրված են երկնային լուսատուների երկուական, երեքական կամ չորսական նշաններ։ Սրանք կրկնակի փոքր են կենտրոնական պատկերից, բայց իրենց երկնային հատկանիշներով, ըստ երևույթին, ծագումնաբանորեն առնչվում են նրան։ Հորինվածքի երկու կողմերում պատկերված են երկու այծ, որոնք կարող են լինել նշված աստվածությունների կենդանական կցորդներ, կամ էլ պարզապես զոհաբերության կենդանիներ, որպիսիք հաճախ են հանդիպում Հայաստանի ուրարտական գլիպտիկայի հուշարձաններում։*

**Աղ. 71, Եկ. 1**—*Գերբնական երկու-երեք էակների պատկերներ են փորագրված նաև հաջորդ ժայռանկարում, որոնց ինչ լինելը որոշակիորեն չի բացահայտվում։ Կարելի է սոսկ ենթադրել, որ դրանք էլ կապ ունեն կենդանիների հետ, քանի որ ժայռանկարի վերին անկյունում առկա է մի չորքոտանի։ Կերպարներից միայն մեկն է պարզորոշ զանազանվում։ Դա ստատիկ, հանդիսավոր կեցվածքով կանգուն մարդակերպ մի էակ է՝ խիստ զգեստավորված, եղջերավոր դիմակով և գլխարկի ուռուցիկ ելուստով։ Նրա ուսերը նույնպես ելուստավոր են, ոտքերը ճկված, ընդգծված արական նշանով, կախ թևերն արմունկներից վեր ծալված։ Երկրորդ խոշոր մարդակերպ էակը կից է առաջինին, պատկերված՝ պպզած վիճակում, արական նշանով, որովայնի շրջանագծով, ձողաձև իրանով ու խաչաձև տարածած թևերով։ Երրորդ էակի պատկերն ավելի փոքր է, հակիրճ։ Հուշարձանի ժամանակագրությունը պարզելու հնարավորություն չկա. հավանական է, որ այն վերաբերում է ուշ բրոնզի կամ վաղ երկաթի դարաշրջանին։*

**Աղ. 71, Եկ. 2**—*Մ.թ.ա. II հազ. պատկերներից արտակարգ հետաքրքրություն է ներկայացնում այս կոմպոզիցիան։ Պատկերը բաժանվում է ժամանակագրական և կոմպոզիցիոն երկու խմբի։ Նրա ստորին մասում առկա են մ.թ.ա. III հազ. մի այծ և նրա դիմաց մի մարդ։ Ժայռանկարի վերին մասում փորագրված է մ.թ.ա. II հազ. մի հոյակապ ամբողջական տեսարան, որ արտաքուստ որս է հիշեցնում, մինչդեռ ներքուստ ունի կրոնապաշտամունքային իմաստ։ Կենտրոնական մասի պարույր-արևապատկերը կոմպոզիցիան բաժանում է երկու մասի. արևից ձախ փորագրված են մի քանի այծ և մի շուն. արևից աջ՝ զետեղված են փոքր աղեղներով զինված երկու խոշոր մարդակերպ էակ. աջակողմյան անձի ոտքերի մոտ պատկերված են երկնային նշան-սկավառակ, իսկ երկուսի արանքում՝ մի կեռապոչ շնիկ։ Մարդակերպ պատկերներն ավելի ոգիների կամ որսորդական աստվածության տեսք ունեն, քան իրական*

որսորդների, մանավանդ, որ նրանք երկուսն էլ պատկերված են երկնային մարմինների սիմվոլների հետ։ Նրանց նետերն ու աղեղները սիմվոլիկ նշանակություն ունեն և չեն գործադրվում, իսկ իրենք օժտված են գերբնական արտաքինով։ Նրանցից առաջինն ունի ձիգ իրան, շեշտված առնանդամ՝ ճառագայթաձև վերջույթներով, գոտկատեղին դաշույնանման իր և ձևավոր բարձր գլխանոց։ Աջակողմյան էակի պատկերը ներկայացված է դարձյալ սկավառակի հետ, ունի ճիշտ նույն կերտվածքն ու ձիգ մարմինը, սակայն ի տարբերություն նախորդի, զուրկ է ոտքերի ճառագայթաձև ճիրաններից, թևերն ավարտվում են երեք ճառագայթային մատներով և չունի գլխանոց։ Գերբնական այս էակների պատկերներն Անդրկովկասի ուշ բրոնզեդարյան արվեստի հուշարձաններում հաճախ հանդիպում են կենդանիների միջավայրում կամ որսի տեսարաններում՝ արտաքին տարբեր ձևավորմամբ։ Մ.թ.ա. I հազ. սկզբներին Դվինի ծիսական խեցեղենի զարդապատկերներում նրանք հանդես են գալիս կենդանիների միջավայրում՝ լուսատու-սիմվոլների և արևի մեծ սկավառակի հետ. զինված են երկար մահակներով, կրծքամասում ունեն արևանշաններ, ճառագայթաձև գլխանոց կամ մազեր[2]։ Սակայն պատկերագրական ու կոմպոզիցիոն առումներով քննարկվող ժայռանկարներին ավելի մերձենում են մ.թ.ա. XI—X դդ. սպիտակ ինկրուստացված խեցեղենի որսորդական տեսարաններին, խեցեղեն, որ տարածվում է Սևանի ավազանից[3] մինչև ժամանակակից Խանլար-Կիրովաբադի շրջանը[4]։ Այդ տեսարաններից մեկում, Ռեսլերի պեղած նշանավոր կավանոթի ուսերին պատկերված են որսորդի տեսքով նույն երկու աղեղնավորներն ու վայրի այծերը՝ արևի սկավառակին փոխարինող զույգ ճանկախաչերով[5]։ Ճանկախաչերը շատ բարդ են, մեանդրատիպ, ուղեկցվում են չորս շրջանակներով, իսկ երկու քարայծերը՝ դարձյալ երկնային մարմինների բազմաթիվ սիմվոլներով։ Ոգիները խիստ զգեստավորված են ու զարդարված եռանկյունաձև գլխանոցով, մի ձեռքում պահած փոքր նետ ու աղեղ, նետասլաքը՝ շատ բնորոշ XI—X դդ. զինատեսակներին, ճառագայթավոր վերջույթներով թևերը արմունկներից ծալած՝ նման քննարկվող էակներին։ Սա, իհարկե, իրական որսի տեսարան չէ։ Նույն մշակույթին պատկանող խեցեղենի զարդամոտիվներում շատ են հանդիպում շներով որսի, կենդանիներին հմայելու տեսարաններ, որոնք կրոնահմայական իրենց էությամբ շատ են մերձենում Սևանի ավազանի շրջակայքում հայտնաբերված «որսորդական» ժայռանկարներին։ Այդ խմբի թասերից մեկի վրա պատկերված է խիստ ոճավորված, եռանկյունի գլխանոցով եռամատն մի ոգի և մի այծ՝ երկնային նշանների ու ալիքավոր գծի տակ։ Մարգակերպ այս ֆիգուրը իրական որսորդի պատկեր չէ։ Մեր ժայռանկարների ոգիների նման նա մի ձեռքով է բռնել նետ-աղեղը, որը թեև ուղղված է դեպի կենդանին, սակայն նետարձակման պատրաստ չէ։ Այստեղ ևս, մեր ժայռանկարների նման, առկա է որսի աստվածություն կամ ոգի։ Որսի ոգիները կամ աստվածությունները Կովկասում պահպանում էին իրենց հատուկ նշանակությունն ու նախնադարյան գծերը նույնիսկ մինչև XIX դարը։

**Աղ. 72, նկ. 1**—Այստեղ նույնպես պատկերված է որսի աստված, թեև նրա մոտ չկան երկնային նշաններ։ Նրա մարդակերպ պատկերը գրավում է կոմպոզիցիայի կենտրոնական մասը։ «Որսորդը» որևէ կենդանու չի նետահարում, թեև աջից ներքև առկա են մեկ, իսկ վերևում՝ երկու այծ։ Սրանցից վերև փորագրված է մի նշան, որ շատ տարածված է նախնադարյան ժայռագրերում և հայկական նշանագրաց ցուցակներում բացատրվում է որպես «աշխարհ» գաղափարագիր։

Երբ աստվածությունները ներկայացված չեն իրենց բուն գործունեության մեջ, մեծ դժվարությամբ ու հարցականով միայն կարելի է պարզել նրանց բնույթը։ Շատ դեպքերում, ոճական նույն առանձնահատկություններով ներկայացված միևնույն պատկերը հանդես է գալիս մերթ իբրև որսի, մերթ էլ իբրև կենդանիներին հովանավորող աստվածություն։

**Աղ. 72, նկ. 2**—Այստեղ աստվածակերպ երկու պատկեր են ներկայացված՝ այծի, եղջերուի և երկու գիշատիչների հետ միասին։ Մարդկային կերպարներից մեկը փոքր է, ունի պոպոզավոր գլխարկ, երկրորդը գրեթե կրկնակի խոշոր է, հզոր առնանդամով, կողային ելուստներով, կողքի տարածած հնգմատնյա թևերով։ Երկու գիշատիչները հարձակվել են այծի վրա։ Հասկանալի չէ՝ մարդկային խոշոր էակն իր հմայական կեցվածքով սանձազերծե՞լ է գիշատիչներին, թե՞ պաշտպանում է այծին։ Սակայն մի քանի դեպքերում, սրանք հստակորեն տարբերվում են մի-

---

[2] Դվինի այս նյութերը պահպանվում են Հայաստանի պետական պատմական թանգարանի հնագիտական ֆոնդերում և հրատարակության են պատրաստված Կ. Խ. Քուշնարյովայի կողմից։

[3] **А. А. Ивановский**, По Закавказью, МАК, VI, М., 1911, стр. 190—191, табл. XIII—XIV.

[4] **Я. И. Гуммель**, Археологические очерки, Баку, 1940.

[5] Археологические отчеты за 1899 г., **Б. Б. Пиотровский**, Археология Закавказья, Л-д, 1949, стр. 91—92.

մյանցից։ Գեղամա լեռների նախկինում հրատարակված ժայռապատկերներում առկա են այնպիսի տեսարաններ, որոնք աչքի են ընկնում աստվածների կողմից կենդանիներին հովանավորելու և պահպանելու դերով։ Աստվածներից մեկն իր երկար-ճառագայթաձև նիզակով վանում է կենդանիների խաղաղ հոտի մեջ ընկած գիշատչին[6], մյուսներն իրենց առկայությամբ պարզապես պահպանում են հոտերը[7], երրորդները՝ հովանավորում են անասունների բեղմնավորումը[8]։ Կան նաև տեսարաններ, որտեղ կենդանիների միջավայրում հանդես են գալիս այր ու կին էակներ, կանանց շեշտված կրծքերով[9] կամ սեռամոլ կեցվածքով[10]։ Սրանք, անկասկած, կապ ունեն թե մարդկանց, թե կենդանիների պտղաբերման գաղափարի հետ։

Մի քանի այդպիսի տեսարաններ կան նաև Գեղամա լեռների նորահայտ ժայռանկարներում։ Դրանք դերաղանց ստեղծագործություններ են, սակայն ֆունկցիոնալ իմաստով ոչ այնքան պարզ։

**Աղ. 73, Եկ. 1**—Դրանցից մեկը հայտնի է Փոքր Պայտասարից, խիստ ընդգծված կրոնահմայական բնույթով։ Կոմպոզիցիայի կենտրոնում խոր ակոսներով քանդակված է հսկայամարմին (բարձր. 3 սմ.), պպզած, թևերը կողքի տարածած մի աստվածանկար, որի առնանդամը գրեթե հասնում է գետին։ Երկու կողմերից դեպի այդ էակն են վազում մի ուժեղ վայրի ցուլ և մի խոշոր շուն։ Սրանցից բացի, անշարժ կեցվածքով պատկերված են երկու այծ, իսկ աստծո գլխավերևում՝ խորաքանդակ մեծ խաչ, որը արևի խորհրդանիշն է, ամենայն բարիքի հիմքն ու սկիզբը։

**Աղ. 73, Եկ. 2**—Մի հոյակապ կոմպոզիցիա է, կազմված ուղղաձիգ մի քանի շարքերով դասավորված խաչագլուխ ութ վիշապ օձերի, մարդու, իսկ ստորին շարքում՝ երեք այծի և կենտրոնում մարդակերպ էակների մերկանդամ պատկերներից։ Օձերից երկուսը շրջափակել են այծին ու մարդուն, որը, կարծես, վեր մեկնած թևերի հմայական շարժումով ուզում է վանել սողուններին ու փրկել չորքոտանուն։ Աջակողմյան երեք օձերը, թվում է, սուրում են դեպի մնացյալ չորքոտանիները։ Կոմպոզիցիան շատ նման է վիշապապան աստվածներ պատկերող անդրկովկասյան բրոնզե տապարների սյուժեներին։ Նկարագրված տեսարաններով ավարտվում է այն փոքրիկ պատկերախումբը, ուր, մեր կարծիքով, ներկայացված են որսի և կենդանիներին հովանավորող աստվածներ։ Ըստ երևույթին հնում էլ նրանց գործողությունները հստակորեն տարանջատված չեն եղել և դրանք մշտապես ներթափանցել են միմյանց մեջ, ինչպես այդ դիտվում է Հին Արևելքի բազմաֆունկցիա աստվածությունների՝ շումերական, բաբելական, ասորեստանյան, խուրրիական, եգիպտական և բազում այլ դիցարաններում։

## ՈՐՍՈՐԴԱՆԱՍՆԱՊԱՀԱԿԱՆ ԵՎ ԵՐԿՐԱԳՈՐԾԱԿԱՆ ԾԻՍԱԿԱՆ ՊԱՐԵՐ ՈՒ ԱՐԱՐՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐ

Հայաստանի ժայռանկարներում առանձնապես հաճախադեպ ու որոշակի ձևերով են ներկայացված ծիսական պարերը, որոնք անքակտելիորեն կապված են որսորդանասնապահական և երկրագործական կրոնական պատկերացումներին և համապատասխան աստվածությունների պաշտամունքին։ Այդ պատկերների տեսարանները կապվում են գերազանցապես որսի, զոհաբերվող կենդանու հետ և ունեն, ըստ երևույթին, հմայական նշանակություն։ Գեղամա լեռների և Սյունյաց ժայռապատկերների արդեն հրատարակված նյութերի մեջ ծիսական պարերի տեսարանները մեծ խումբ են կազմում[11]։ Նորահայտ նյութերում ներկայացված են յոթ ուշագրավ տեսարաններ։ Դրանցից առաջինը.

**Աղ. 74, Եկ. 1**—Նման է հոտաղների կամ որսորդների ծիսական պարի։ Որսորդները ներկայացված են մի շարքով, արմունկները ծալած, վեր պարզած, երբեմն միակցած թևերով։ Չորս որսորդներից երեքը զինված են վեր մեկնած մահակներով։ Կենտրոնում տապալված, հավանաբար զոհաբերվող այծի գլխավերևում կանգնած է որսորդներից մեկը՝ շան հետ։ Ժայռանկարը դրվում է մ.թ.ա. III հազ. հուշարձանների շարքում և թվագրվում է նույն ժամանակաշրջանով։

**Աղ. 74, Եկ. 2**—Նույն ժամանակաշրջանին է պատկանում նաև հաջորդ հուշարձանը, որը ներկայացնում է վեց որսորդի շուրջպար։ Կոմպոզիցիայի կենտրոնում, նախորդ պատկերի նման, ներկայացված է զոհաբերվող այծ։ Վերևի երեք որսորդները զգեստավորված են ու դիմակավոր-

[6] «Գեղամա լեռների ժայռապատկերները», պրակ I, նկ. 324։

[7] Նույն տեղում, նկ. 311—312, 317։

[8] Նույն տեղում, նկ. 253։

[9] Նույն տեղում, նկ. 251։

[10] Նույն տեղում, նկ. 250։

[11] Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Ռ. Իսրայելյան, Գեղամա լեռների ժայռապատկերները, Հայաստանի հնագիտական հուշարձաններ, գիրք 6, պրակ I, Երևան, 1971, նկ. 273, 276։ Գր. Կարախանյան, Պ. Սաֆյան, Սյունիքի ժայռապատկերները, Հայաստանի հնագիտական հուշարձաններ, գիրք 4, պրակ I, Երևան, 1970, աղ. 51, նկ. 1, աղ. 86, նկ. 1, աղ. 87, նկ. 3, աղ. 122, նկ. 1, աղ. 212, նկ. 2, աղ. 279, նկ. 1։

ված, ձեռք-ձեռքի տված կամ «ձեռք-ոտքի» մի շղթա կազմած։ Մնացած երեք որսորդները ներքևում աջ ու ձախից բոլորում են պարը։ Դրանցից մեկը ճառագայթաձև մատներ ունի և հմայական կեցվածք։ Իր այս ձևով նա նման է որսորդական ոդու կամ աստծու։

Աղ. 74, նկ. 3—Ծիսական պարի տպավորություն է թողնում նաև հաջորդ պատկերը, որը, սակայն, շուրջկալով որսի արարողության է նմանեցված։ Որսորդներն այստեղ հինգն են՝ բոլորն էլ ըզգեստավորված, ոմանք՝ թևերի եռաքառամատն ճառագայթներով և ձևավոր գլխանոցով, ոմանք՝ դիմակով։ Նրանք շրջապատել են մի արու այծի, որին նետահարում է կենտրոնական դիմակավոր որսորդը։

Աղ. 75, նկ. 1—Թվում է, թե նույնպիսի բովանդակություն ունի վեց որսորդ և երկու այծ պատկերող հաջորդ կոմպոզիցիան։ Սրա մեջ կան որսորդների խաչաձև, ինչպես նաև ճառագայթավոր վերջույթների և վգամասում շրջանակներ ունեցող պատկերներ։ Ի տարբերություն նախորդ կոմպոզիցիայի, որսորդներից մեկն այստեղ պարանով բռնել է կենտրոնական այծին։ Կենդանու պատկերը թերավարտ է։

Աղ. 75, նկ. 2—Գեղամա լեռների երկրորդ պատկերը նույնպես թև-թևի տված մարդկանց ձգված շարք է ներկայացնում։ Ի տարբերություն վերը նկարագրածների, այստեղ բացակայում է այծը կամ զոհաբերվող կենդանին, մինչդեռ կենտրոնում զետեղված մարդկային պատկերները դարձյալ զգեստավորված կամ դիմակավորված են։ Նրանցից երկուսը կանայք են՝ կարճ զգեստով, լայն կոնքով, բարակ մեջքով, լայն ուսերով. կանանցից մեկը բռնել է արևի մեծ շրջանակ կամ նրա խորհրդանիշ մոդելը, որի կողքին առկա է ձվածիր մեկ այլ երկնային պատկեր։ Կանացի այդ պատկերից աջ նկարված է փետրավոր կամ եղջերավոր ծիսական գլխարկով մի խոշոր տղամարդ, որից վեր փորագրված է դարձյալ մի շրջանակ։ Պետք է ենթադրել, որ պար բռնած մարդկանց այս ծիսական արարողությունը նըվիրված է արևին և լուսնին, և կոմպոզիցիայում պատկերված այդ երկնանշանները ոչ թե իրական արևն ու լուսինն են, այլ մարդկանց կողմից հատուկ տոնախմբության համար պատրաստված լուսատուների մոդելներ, որ ծիսակատարության ժամանակ կրել են իրենց ձեռքերին։ Այս խմբից աջ, հավանաբար դարձյալ ծիսական այգ արարողությանը նվիրված մի տեսարան էլ կա, որ ներկայացնում է նախնադարյան դերասան-ակրոբատների մի խաղ։ Լայն բացված ոտքերով ղեանին ամուր հենված մարդկային մի խոշոր պատկեր՝ պարզած աջ թևի վրա պահում է փոքրամարմին մարդու կամ երեխայի սխեմատիկ մի կերպար։ Երեխան գլխով պահել է մի մեծ ձող։ Երեխային պահող մարդը մյուս ձեռքով բռնել է մեկ այլ ձող, առաջինից քիչ հաստ, հավանաբար, հավասարակշռությունը պահելու համար։ Պատկերում նախնադարյան նկարչին հաջողվել է արտահայտել նրա մկանուտ, լարված ուժեղ մարմինը։

Ակրոբատների կամ դերասանների երևույթը պաշտամունքային այս ժայռանկարում չի կարող տարակուսանք կամ կասկած հարուցել։ Խնդիրն այն է, որ ամբողջ Հին Արևելքում պտղաբերության և այլ արարողություններին մասնակցում էին նաև ակրոբատ ձեռնածուներ, աճպարարներ և մեծ քանակությամբ երաժիշտներ։ Այս արարողություններն ուղեկցվում էին պաշտամունքային երգերով ու ծիսական պարերով։ Նման արարողություններ կատարվում էին նաև խեթական աշխարհում, նրա հարևան՝ Հայկական լեռնաշխարհի հետ անմիջականորեն կապված մարզերում։ Այդ վայրերից մեկը Ալաջա-Հույուքն է իր նշանավոր դամբարանային հուշարձաններով և բարձրաքանդակներով։ Կրոնական մոտիվներ կրող բարձրաքանդակներից երկուսը վերաբերում են մ.թ.ա. XIV դարին և ժամանակագրորեն մոտենում են քըննարկվող ժայռանկարին։ Նրանցից մեկի վրա քանդակված են զանազան գործողություններ կատարող ակրոբատներ և ձեռնածու[12]։ Մինչև վերջերս էլ հայ ժողովրդական տոնախմբությունների ժամանակ երգը, պարն ու խրախճանքը ուղեկցվում էին նվագածու-գուսանների, ակրոբատլարախաղացների ելույթներով։

Աղ. 76, նկ. 1—Պատկերված են իրար վրա փորագրված երկու խոշոր ծառ։ Վերին ծառի մոտ կան երկշարք փորագրություններ. առաջինում մարդը բռնել է ծառի ճյուղից՝ մեծ այծի եղջյուրների հետ միասին, երկրորդ մարդը բռնել է մեկ ուրիշ այծ. կենդանիներին քարշ են տալիս ծառի մոտ գուցե և զոհաբերության համար։ Երկրորդ շարքում, ծառի արմատի մոտ, կողք-կողքի կանգնած են մի հսկա այծ, նրա եղջյուրներից բռնած մի խոշոր մարդ և երկու փոքրիկ մարդկային կերպարներ, հավանաբար՝ երեխաներ։ Ըստ երևույթին այստեղ ներկայացված է կենաց ծառը և պտղաբերության գաղափարն ընդհանրապես՝ ծառ, այծ, ուլ, մարդու և երեխաների պատկերներով։ Այծը, որ հին հավատալիքներում կապվում էր օդերևույթի, ամպրոպ-կայծակի, ուրեմն և սյաղաբեր անձրևի ու երկնային օվկիանոսի հետ, վաղնջական ժամանակներից հայտնի է իբրև պտղաբերող և կաթ-

[12] E. und H. Klengel, Die Hithiter, 1976, Leipzig, էջ 152—165, աղ. 44—45։

նատու կենդանի։ Այս տեսարանը երկրագործական պաշտամունքի ծիսական արարողության բնույթ ունի։

Նկ. 15—Ծիսական արարողության վերջին կոմպոզիցիան գտնվում է Ջիրաբաթ գագաթի դիմաց։ Պատկերներն այստեղ փորագրված են սրածայր նուրբ գործիքով, նշանագրային սխեմայի ձևով։ Պատկերված են ցանցեր, սանդղաձև արգելափակոցներ։ Սակայն կոմպոզիցիայի կենտրոնն ու առանցքն է կազմում սլացիկ կենաց ծառը՝ ներքև թեքված «մշտադալար» ճյուղերով։ Պատկերի մեծությունն, ըստ երևույթին, շեշտում է նրա ֆունկցիան և նշանակությունը։ Ծառից աջ, ձիու վրա կանգնած է մի մարդ, նրանից վերև ուղղահայաց դասավորությամբ կանգնած են երկու հետիոտն և մի աղոտ պատկեր, որ նման է չավարտված աղեղնավորի։ Ծառի ձախ կողմում կանգնած է մի ուլ, հավանաբար՝ զոհվող կենդանին։ Ժայռանկարն, ըստ երևույթին, կապված է որսորդաանասնապահական և երկրագործական պտղաբերության պաշտամունքի հետ։ Այնուհետև կենաց ծառի պաշտամունքի, նրան անասուն զոհաբերելու կամ երկրպագելու մոտիվը զարմանալի հետևողականությամբ կրկնվում է միջին, ուշ բրոնզեդարյան (Թալաքենդի գոտի) ուրարտական արվեստի հուշարձաններում և դառնում համատարած։ Ուրարտական արվեստի մեջ ծառի և արևգակնային աստծո պատկերները հաճախ հանդես են գալիս ասորեստանյան շղարշով։ Ուրարտական կրոնական պատկերներում այծեր են զոհաբերվում հաճախ նաև պտղաբերության աստվածուհուն։ Նոր հրատարակված նյութերի մեջ կա մի բրոնզյա թիթեղ՝ հիասքանչ փորագրությամբ։ Գեղեցիկ գահի վրա շքեղ, զարդարուն, երկար արտահագուստով նստած է պտղաբերության աստվածուհին՝ անմահության թասը ձեռքին։ Նրա դիմաց պատկերված է ճախրող արծիվը, որ Իշտար-Անահիտի թռչունն էր հին դիցաբանության մեջ։ Կենտրոնում գեղեցիկ զոհասեղան կա՝ հեղման լուսնաձև երեք թասերով։ Սրանից աջ պատկերված են երկու քուրմ՝ զոհաբերվող այծի հետ[13]։

## ՄԱՅՐ-ԱՍՏՎԱԾՈՒՀՈՒ ԺԱՅՌԱՆԿԱՐԱՅԻՆ ՊԱՏԿԵՐՆԵՐԸ

Գեղամա, Վարդենիսի, Սյունիքի, Արագածի ժայռանկարները պահպանել են նաև մեծ քանակությամբ այնպիսի պատկերներ, որոնք իրենց ծագումով, ներքին իմաստով ու տրամադրությամբ անքակտելիորեն կապված են վաղ երկրագործական պատկերացումների հետ։

Այդ հուշարձանների մեջ առանձնապես հետաքրքիր են այն կոմպոզիցիաները, որտեղ հստակորեն զանազանվում են կանացի կուռքերի ոճավորված պատկերները։

Աղ. 66, նկ. 1 *(Վարդենիսի լեռներ)*—Ընդգրկում է պայմանական, առանձին աստղախմբեր ներկայացնող 56 կիսասֆերային գոգավորություններ, հսկա օձավիշապ, երկու գծիկներ ու ստվերանկարային չորս մարդակերպ ֆիգուրներ։ Մարդակերպ ստվերանկարը վերջնականապես ընդհանրացված պատկեր է, որը իրանի և գլխի երկարուկ, իրար վրա դրված քառանկյունաձև գծերից բացի, չունի և ոչ մի մանրամասնություն։ Պատկերի մարդակերպությունը ընդգծվում է իրանի մեծ քառանկյունու վերին մասի փոքր-ինչ թեք գծերով (որ արտահայտում են ուսերը), գլխի փոքր քառանկյունու ներճկվածությունը (վզի մասում) և գագաթի արտաքինից սրված ելուստը (գլխանոց)։ Եզրագծի վերին կոնտուրում վիզն ու գլուխը բավականաչափ տարբերվում են, դիտվում է որոշ ներճկում (ոտքերի բացվածք) նաև ներքին մասում։

Աղ. 66, նկ. 2—Նախորդ մարդանման պատկերն ավելի պարզունակ ձևով ներկայացված է նաև հաջորդ կոմպոզիցիայում, որն ունի նույն կիսասֆերային գոգավորությունները։ Սակայն այստեղ հսկա օձավիշապի փոխարեն առկա են այլ պատկերներ ու նշաններ։ Մարդկերպ «ըստվերապատկերների» գլխին դրված է հավերժության պարուրաձև նշան, իսկ նրա դիմացի չորքոտանու զավակին՝ լուսնամահիկ։ «Աստղաբույլերի» հարևանությամբ պատկերված են երկու կենդանի, որոնցից մեկը բեզոարյան այծ է, իսկ մյուսը՝ ինչ-որ գիշատիչ։

Աղ. 77, նկ. 1—Իրան և գլուխ ներկայացնող քառանկյունաձև այս կռքապատկերները նույնությամբ կրկնվում են Արագածի մի ժայռանկարում։ Դրանք իրենց կանացի մարմնի որոշակի մանրամասներով համոզում են, որ Վարդենիսի «կտավներում» ներկայացված «աստվածապատկերները» ևս կանացի կուռքեր են։ Արագածի ժայռանկարում դրանք չորսն են։ Երկուսն ունեն սլորտանշաններ, մեկը՝ գոտի, մյուսը՝ իգական եռանկյունաձև հատկանիշ։ Կանացի կուռքերը տեղադրված են պատկերի վերին մասում։ Նրանց տակ պատկերված են առյուծակերպ մի կենդանի և չորս այծ, որոնցից մեկի եղջյուրներին կան կայծակնիզպապանշան, իսկ փորի տակ՝ երեք աստղանշանշրջանակներ։ Կենդանիներից մեկի մեջքին լատինական T տառը հիշեցնող նշան է արված, որը Հայաստանի նախնական նշանագրերի համակարգում խորհրդանշում է իբրև «Գավազան» համաստեղություն։

[13] Urartu, Katalog der Ausstellung. München, 1976. 52.

Այսպիսով, Հայաստանի ժայռանկարներում կանացի պաշտամունքային պատկերները ներկայացվում են լուսնանշանի և արևանշանի, պարույր-հավերժանշանի, աստղեր կամ աստղաբույլեր խորհրդանշող շրջանակների, այծերի, առյուծների և օձավիշապների հետ, որոնք բոլորն էլ ներկայացնում էին երկնային աշխարհը՝ երկնային օվկիանոսը, հավերժական այն միջավայրը, որտեղ, ըստ հնագույն պատկերացումների, հարատևում էին աստվածները։

Ժայռանկարներում ներկայացված այս կուռքերն իրենց տիպական ձևերով առկա են նաև Հայաստանի մ.թ.ա. III—II հազ. բնակավայրերից պեղված սրբատեղիների ընդարձակ սրահներում։ Ամենահետաքրքիրը Փոքր Հայքում Խարբերդի դաշտի Պուլուր բնակավայրի սրբատեղիներն են, որ վերաբերում են մոտավորապես մ.թ.ա. III հազ. կեսին։ Ժայռապատկերների փոխարեն Պուլուրի կանացի կուռքերը մարմնավորված են կավե արձանիկների կերպարանքով՝ զոհասեղանին նստած։ Այստեղ դարձյալ զանազանվում են միայն կանացի քառանկյուն գլուխները և մի դեպքում՝ մայր աստվածուհու ուսերի թեքությունը։ Դեմքի վրա վերադիր կլորագծերով նշված են աչքերն ու բերանը, իսկ ուղղաձիգ վերադիր գծով՝ քիթը։ Կանացի կուռքերը, Արագածի ժայռանկարի նման, հանդես են գալիս խմբով՝ կուռքերից մեկը գլխավորն է՝ պտղաբերության մայր-աստվածուհին, մյուսները՝ երկրորդական[14]։

Կանացի կուռքերի ավելի ուշ ժամանակի համանման արձաններ գտնվել են նաև Մեծամորում և վերաբերում են մ.թ.ա. II—I հազ. եզրագծին[15]։ Այս սրբատեղիներից մեկի կավե կուռքերն իրենց տիպաբանական հատկանիշներով բնավ չեն տարբերվում ժայռանկարներում պատկերվածներից։ Դրանք ունեն լայն, քառանկյուն իրան, փոքր քառանկյունով կազմված վերադիր գլուխ, և միակ տարբերությունն այն է, որ արձանների դեմքին արված են մի զույգ խոշոր աչքեր, որոնք ինքյան վկայում են նրանց աստվածային բնույթը։ Թե Պուլուրի, թե Մեծամորի սրբապատկերներն ունեն որոշակի, կրկնվող կարևոր մանրամասներ, որոնք պայմանավորված են կուռքերի ծիսական պաշտամունքով։ Կուռքերը դրվում էին հատուկ հարթակների վրա, որոնց առջև տեղադրված էին բարձրադիր կրակարան զոհասեղաններ, անկյուններից որևէ մեկում ունենալով բաց ու փակ օջախներ. հարևան սենյակները լցված էին հատուկ ծիսական խեցեղենով, որոնց զարդամոտիվները կրոնական բնույթ ունեին։ Պուլուրի պաշտամունքային անոթների մարդկային ու կենդանական ռելիեֆ զարդամոտիվները ոճաձևաբանական առումով միանգամայն համապատասխանում են III հազ. մեր ժայռանկարներին։ Սրբատեղիների մեծ սրահները կարող էին տեղավորել մարդկանց մի ամբողջ բազմություն։ Կրոնածիսական արարողությունների ժամանակ զոհասեղանների վրա այրվում էր սրբազան հուրը, իբրև երկնային կրակ, փակ տիպի վառարաններում թխվում էր սրբազան հացը՝ «նշխարը», իսկ զոհաբերված անասունների արյունն ու հեղված գինին հոսում էին, հեռացվում առվակների միջոցով։ Այս ամենը ցույց է տալիս, որ կանացի կուռքերով ներկայացված մայր-աստվածությանը վերագրվում էր առանձնահատուկ նշանակություն, անգամ գերագույն աստվածության միանգամայն հնարավոր ֆունկցիայով։

Այս աստվածությունների նշանակությունը գեթ մոտավորապես պատկերացնելու համար, անհրաժեշտ է դիմել շումերական և խուրրիական զուգահեռներին, այսինքն՝ հին արևելյան այն միջավայրին, որն աշխարհագրական, մշակութային և էթնիկական առումներով սերտորեն կապված էր Հայաստանի հետ, սկսած նեոլիթյան ժամանակներից մինչև Ուրարտուն ներառյալ։

Ժայռանկարների, Պուլուրի և Մեծամորի կանացի կուռքերը ձևաբանորեն կրկնվում են շումերական տաճարներից մեկում գտնված նախամայր Նամմու աստվածուհու քարե արձանիկների մեջ[16]։ Տաճարում, ինչպես մեր սրբատեղիներում, Նամմու աստվածուհին ներկայացված էր երեք արձանիկով։ Առաջին արձանիկը նման է Մեծամորի կուռքերին, ունի մեծ աչքեր։ Որովայնի վրա գծագրված է մարդկային երկու պատկեր։ Երկրորդ արձանիկը ներկայացնում է առաջինի մեջ պատկերված կերպարների միակցված տարբերակը, իսկ երրորդի «որովայնում» երկվորյակների փոխարեն պատկերված է այծանկար։ Ուրեմն, շումերական այս ֆիգուրները կապվում են մեր ժայռապատկերներին ոչ միայն ձևաբանական հատկանիշներով, այլև այծանկարի առկայությամբ։ Այս կենդանապատկերն, ըստ երևույթին, արտահայտում է մայր-աստվածուհու հիմնական գործողություններից մեկը, նրա կապը շանթ-որոտի, երկնային տարերքի հետ։ Իրենք՝ այծերն էլ խիստ պտղաբերող էակներ են և բուն իսկ էությամբ հնուց

---

[14] H. Kosay, Pulur Excavations, *1968—1970*, *էջ 133—134, աղ. 19, 36, 39, 85, կառ. № 69—70, աղ. 84, № 49, 85։*

[15] Է. Խանզադյան, Կ. Մկրտչյան, Է. Պարսամյան, *Մեծամոր, Երևան, 1973, նկ. 110, 113, էջ 112։ Մեծամորի նշված կուռքերը դեռևս չեն հրատարակված։*

[16] M. E. Mallowan, Early Mesopotamia and Irau, London, p. 123, fig. 137a, p. 125, fig. 139—140.

անաի կապվում էին երկրագործական պտղաբերման պատկերացումներին, մարմնավորում ամպրոպ-կայծակի երևույթն ու երկնային ջուրը։

Թեև նախամայր Նամմուի արձանիկները գտնված են շումերական ամենահարավային Էրիդու քաղաքում, Պարսից ծոցի ափին, այնուամենայնիվ, նրա արձանիկների տարբեր տեսակները, հետևաբար և պաշտամունքը լայնորեն տարածված են եղել Հին Արևելքի ժողովուրդների մեջ, Պարսից ծոցից մինչև Վերին ծովը (Վանա լիճը), Եփրատ ու Տիգրիս գետերի վերին ակունքները։ Կասկածից դուրս է, որ շումերական կրոնական պատկերացումները լայն տարածում ունեին Հայաստանում։ Հետևաբար, շատ ընդհանրություններ կարող էին ունենալ նաև նույնատիպ կուռքերի միջոցով, նույնատիպ ծիսական արարողություններով պաշտվող կանացի գերագույն աստվածությունները Շումերում և Հայկական լեռնաշխարհում։ Տեսնենք, թե ինչ են պատմում շումերական գրավոր աղբյուրները Նամմու աստվածուհու մասին արարչության առասպելում[17]։ Ի սկզբանե անտի, ասում է առասպելը, տիեզերքը լցված էր երկնային օվկիանոսի ջրով, որը սկիզբ ու վերջ չուներ։ Մեծ օվկիանոսի մեջ ապրում էր նախամայր-Նամմուն, ամենայն ինչի սկիզբը։ Նամմուն կույս էր, սակայն ժամանակի ընթացքում ծնեց երկվորյակ աստվածներ Անին (երկինք) և Կիին (երկիր)՝ եղբորն ու քրոջը, որոնք սկզբնապես կպած էին իրար։ Հետագայում նրանք բաժանվելով՝ դարձան ամուսիններ և ծնեցին Էնլիլ և Էնկի եղբայրներին, որոնցից վերջինը իմաստության և գետերի աստվածն էր։ Նա ստեղծեց բույսն ու ծառը, կենդանիներին ու մարդկանց, երկրագործության-անասնապահության աստվածներին և շենացրեց աշխարհը ամեն տեսակ բարիքներով։

Այս առասպելի խուրրիական տարբերակն ավելի սերտ առնչություն ունի հայկական Վահագնի և Սանասարի ու եղբոր ծննդյան և հերոսական արարքների մասին ավանդված առասպելական երգին ու զրույցներին։ Խուրրիական առասպելում Նամմու նախամայրը փոխարինված է այլ կերպ հորջորջվող գերագույն աստվածությամբ։ Խուրրիական այդ աստվածուհին հատուկ անուն չունի, խուրրիներն իրենց լեզվով նրան «Մեծ ծով» են կոչում (հմմտ. Ծովինար)։ Նա կույս է, չունի արական զուգակից, սակայն զավակներ է ծնում, ինչպես հայ հեթանոսական առասպելի «Ծով ծիրանին» է երկնում վիշապամարտիկ Վահագնին։ «Մեծ ծովի» ժառանգներից են ամպրոպամարտիկ Թեշուբը (ուրարտական Թեյշեբան) և Իշտար դիցուհին՝ պտղաբերության հզոր աստվածները։ Թեշուբը ծնվում է հոր բերանից, իսկ հրաշածին Սանասարն ու Բաղդասարը սերվում են Ծովինարի՝ ծովի աստվածուհու ծովի աղբյուրից խմած ջրից։ Թեշուբը զորանում է ժամերով, դառնում հզոր ու հանդուգն, ինչպես մեր վեպի հերոս-կիսաստվածները։ Թեշուբը կատաղի կռիվ է մղում ծովավիշապի դեմ՝ երկնային աշտարակում փակված իր քրոջը կամ կնոջն ազատելու համար, ինչպես Սանասարն է կռվում «Պղնձե քաղաքում» փակված իր հարսնացուին ազատելու համար։ Երբ Թեշուբը պարտվում էր, հեռանում մարդկանցից ու աշխարհից, չորանում էին գետերը, վրա էր հասնում երաշտը, մարդիկ զրկվում էին հանապազօրյա գինուց, գարեջրից ու հացից[18]։ Երբ նա հաղթում էր, երկրի վրա առատություն էր թափվում՝ ճիշտ այնպես, ինչպես լուսավորվում էր «Պղնձե քաղաքը»՝ վիշապի նկատմամբ Սանասարի տարած հաղթանակից հետո։

Խուրրիական Թեշուբ աստվածն իր բոլոր ֆունկցիաներով որդեգրվեց ուրարտացիների կողմից, դարձավ ուրարտական դիցարանի գերագույն աստվածներից մեկը և ծայր տվեց Վահագն-Սանասար հայկական աստվածների սերնդին։ Երևի ուրարտացիների մոտ էլ Թեյշեբան լճերի (ծովի) աստվածուհու որդին էր, թեպետ այդ մասին գրավոր աղբյուրներ առայժմ չկան։ Սակայն ծովի (լճերի) աստվածուհու առկայությունը փաստարկված է և՛ գրավոր աղբյուրի մեջ, և՛ կիրառական արվեստի մի հուշարձանում՝ Բեռլինի թանգարանում պահպանվող ուրարտական գոտու մի մեծ բեկորի վրա, թռչունի, անգղառյուծների, ուրարտական մեծ շինության հետ միասին, որն իր ձեռքում բռնած սափորից հավերժական ջուր է հեղում մի գեղեցիկ անոթի մեջ։ Անոթի մյուս կողմից երևում են մի զույգ ձեռքեր[19]։

Հնարավոր է, որ նախնադարյան և ուրարտական մայր-աստվածություններից Հայաստանում էլ ծայր առան մնացած բոլոր աստվածները, որոնք «ղեկավարում էին» թե՛ որսորդությունն ու անասնապահությունը, թե՛ երկնային տարերքն ու արեգակի ուժը։ Հնարավոր է, որ ժայռապատկերներում գիտվող կայծակ-արևի աստվածները, խուրրիական Թեշուբի, մեր Սանասար-Բաղդասարի նման ծովային մայր-աստվածուհու մոտավոր ժառանգները լինեն։ Գրավոր աղբյուրների բացակայության պատճառով իրողությունը երբեք էլ չի հաստատվի, սակայն այսպիսի ենթադրությունը

[17] Д. Г. Редер, Мифы и легенды Древнего Двуречья, М., 1965, стр. 23—24, 39, 40, 53—55.

[18] С. Крамер, История начинается в Шумере, М., 1965.

[19] Urartu, Katalog der Ausstellung, München, 1976, նկ. 42, էջ 79, կատ. № 155.

միանգամայն օրինաչափ է։ Գեղամա լեռների ժայռանկարներում արդեն II հազ. հանդես են գալիս ուրարտական աստվածներ Թեյշեբայի և Խալդի նախատիպերը, իրենց բնորոշ կենդանական կցորդների՝ ցուլի և առյուծի վրա կանգնած, ինչպես այդ գիտվում է միայն ու միայն ուրարտական արվեստում։ Հանդիպում են նաև այլ պատկերներ, որոնք Թեյշեբայի հետ առնչվում են սրաշավոր գլխանոցով։

## ԿԱՅԾԱԿ-ԱՐԵԳԱԿՆԱՅԻՆ ԱՍՏՎԱԾՆԵՐ

Գեղամա լեռների ժայռապատկերներում սրանք ներկայացված են հոծ բազմությամբ, բավական որոշակի ֆունկցիաներով և ընդգծված երկրագործական բնույթով։ Ժայռապատկերների նախորդ հրատարակության մեջ արդեն ցույց են տրված կայծակնային աստվածների մի քանի տիպական պատկերներ։ Սրանցից ամենաբնորոշները հանդես են գալիս մարդակերպ, խոշոր, ուժեղ պատկերներով, մեկուսի կամ այծի (այծերի) հետ, լայն տարածած թևերով, ոտքերի ու թևերի չռված երկար ու ճկուն, ճառագայթաձև մատներով, հաճախ երկնային տարբեր տիպի երկրաչափական սիմվոլների ուղեկցությամբ[20]։ Այծերի և նշանագրերի հետ պատկերված որոշ աստվածություններ պարզապես լուսավոր ճառագայթ-կայծակների փնջերից կազմված մարդակերպ էակներ են, կայծակի տարրերը կամ պարզապես հրացոլքի երևույթները[21] մարմնավորող։ Սրանցից ամենախոշորները, ամենահներն ու տիպականները ներկայացվում են Մեծ Պայտասարի ու Ջիարաթի նորահայտ նյութերի մեջ։

**Աղ. 78, Եկ. 1—2**—Հզոր, մեկուսի, ճառագայթաձև վերջավորությունով, շեշտված առնանդամով դիցապատկերներ են, գլխավերևում կամ ոտքերի տակ պատկերված խոշոր այծերով, բնորոշ մ.թ.ա. V—IV հազ.։

Հայտնի են սրանց արական զույգ պատկերները՝ գլխավերևում, ոտքերի տակ կամ երկուսի արանքում պատկերված այծերով։

**Աղ. 78, Եկ. 3**—Նորահայտ նյութերի մեջ առկա է նաև կայծակնային աստվածների ընտանիք պատկերող մ.թ.ա. V—IV հազ. մի հիասքանչ կոմպոզիցիա։

Կենտրոնում աստված հայրն է, աջից ու ձախից՝ կինը և երեխան։ Երեքի վրա էլ շեշտված են «ճառագայթավոր» մատները։ Արական պատկերի գլխավերևում փորագրված է հնագույն Ա ռճի այծապատկեր։ Այս կոմպոզիցիան ենթադրել է տալիս, որ Հայաստանի անասնապահ-երկրագործ նախաբնակը երկրպագում է այդ աստծուն, իբրև սերունդների հարատևումը հովանավորող գերբնական ուժի։

Դատելով պատկերների ճառագայթաձև վերջույթներից, իրանի ճառագայթավոր կառուցվածքից, առնանդամի մեծությունից և վերջինից դուրս ժայթքող կաթիլներից, ինչպես նաև նրանց ուղեկցող այծապատկերներից, կարելի է պնդել, որ այդ դիցաբանական կերպարները կապված էին երկնային տարերքի, շանթ-որոտի ու անձրևի հետ, և նրանց գերագույն ֆունկցիան անձրև բերելն էր։ Սա վաղ երկրագործի առաջին կենսական պահանջն էր, որից և բխում էր կայծակնային աստծո պատկերումն ու պաշտամունքը։ Պատահական չէ, որ այդ աստվածությանն ուղեկցում է այծը, որը հին առասպելաբանության մեջ միշտ էլ կապվում է շանթ-որոտի երևույթին և միջնադարյան նշանագրերում մեկնաբանվում իբրև «փայլակն»։ Կայծակնային այս աստվածությունը Գեղամա լեռների ժայռապատկերներից մեկում ներկայացված է ցլի վրա կանգնած, հավերժանշանը գլխին (աղ. 77, նկ. 2)։ Ցլի վրա կանգնած պատկերն հետագայում տիպական է դառնում ուրարտական շանթ-որոտի աստված Թեյշեբային։ Այս պատկերը ևս բնորոշ է հին ամպրոպային առասպելաբանական պատկերացումներին, որոնց համաձայն ցուլը ևս մարմնավորում էր ամպրոպ-կայծակի երևույթը։

## ԱՐԵՎ ԱՍՏՎԱԾՈՒԹՅՈՒՆ

Քանակով առավել մեծ են ու բազմազան արեգակնային մարդակերպ աստվածները, որոնք պատկերված են զանազան կենդանիների ու թռչունների (առյուծ, ձի, ջրային թռչուն, այծ և այլն), արևի սկավառակի, լուսնամահիկի, խաչի, ճանկախաչի և այլ տիեզերական մարմինների երկրաչափական պատկերների հետ։ Սակայն արեգակնային աստծո ամենաբնորոշ ու տիպական կերպարներն իրենց պատկերագրական հատկանիշներով քիչ են տարբերվում կայծակնային աստվածներից, ճիշտ այնպես, ինչպես ողջ հին առասպելաբանության մեջ միևնույն աստվածը կրում էր և՛ արեգակնային, և՛ ամպրոպային երևույթի հատկանիշներ։ Բայց և միաժամանակ բացառվում էր ամպրոպային աստծո հետ առյուծի պատկերումը, մինչդեռ արևի աստծո համար խիստ բնորոշ էր կենդանական այդ կցորդի առկայությունը։

**Աղ. 77, Եկ. 3**—Վերն արդեն նշեցինք, որ Գեղամա լեռներում պահպանված ժայռապատկերներից մեկում արեգակնային աստվածը պատկեր-

[20] «Գեղամա լեռների ժայռապատկերները», պրակ I, նկ. 307, 308, 310, 312։

[21] Նույն տեղում, նկ. 310, 312, 321։

ված է առյուծի վրա կանգնած։ Սա ուրարտական խալդի աստծո և իր առյուծի հնագույն նախատիպն է։ Առյուծի վրա կանգնած աստվածը ժայռանկարում պատկերված է շատ սխեմատիկ, առանց գլխի, վեր մեկնած թևերով և իրանի երկար ու բարակ ձողով։ Նրա մի ձեռքը ավարտվում է ճառագայթաձև վերջավորություններով։ Նախնադարյան և վաղ գասակարգային հեթանոսական կրոններում երկնային էակներին կամ աստվածություններին մշտապես պատկերում էին առյուծի, հովազի, ցուլի վրա կանգնած։ Հայաստանում այդ պատկերացումն արտացոլված է մի ավանդության մեջ, որտեղ արևը առյուծի մեջքին նստած շրջում է երկնակամարում։

Քննարկվող կոմպոզիցիայի առյուծին ևս պետք է դիտել իբրև արևի կցորդ կենդանի, որն իր մեջքի վրա տանում է մարդակերպ զուգակցին։ Առյուծն այստեղ ունի կլոր, մեծ գլուխ ի տարբերություն նեղ, բարակ գծով արտահայտված իրանի և վեր ոլորվող պոչի։ Նա ունի շեշտված արական նշան, որը բնորոշ է ժայռապատկերներում հանդես եկող արևի աստվածներին։

Առյուծի և արևի աստվածության կապը մեզ հասել է նաև «Սասնա ծռեր» ժողովրդական վեպի միջոցով, որի պատումներում պահպանվել են հազարամյա լեգենդների ու առասպելների գողտրիկ նշխարներ։

Մեծ Մհերն այստեղ կոչվում է «Առյուծաձև», այսինքն՝ առյուծի ձև, առյուծի տեսք ունեցող։ Հետագայում «Առյուծաձև» մակդիրը կորցրել է իր նախնական իմաստը և ձեռք բերել առյուծ ձևողի, այսինքն՝ առյուծ պատառողի, առյուծ սպանողի իմաստ[22]։

Առյուծի և արևի փոխադարձ կապը արտահայտիչ են դրսևորված II հազ. վերջերին և I հազ. սկզբին պատկանող Հայկական լեռնաշխարհի տարբեր վայրերում գտնված բրոնզե գոտիների վրա։

Այսուհանդերձ Հայաստանի նեոլիթ-երկաթեդարյան ժայռանկարային արվեստին բնորոշ են ու տիպական մարդակերպ ու «հետիոտն» արեգակնային աստվածները։

**Աղ. 79, Նկ. 1**—Մեծ Պայտասարի նորահայտ նյութերի մեջ ներկայացված մ.թ.ա. V—IV հազ. մի ժայռանկարում պատկերված է արեգակնային աստծո ընտանիքը, վերևից ներքև զետեղված երեք հզոր պատկերներով, որոնց ոտքերը բացված են, թևերը վեր մեկնած։ Նրանց գլխավերևում «փայլփլում» է արևգակ-ճանկախաչի նկարը։ Պատկերներից երկուսը խոշոր են, կենտրոնականն ունի արական նշան (հայր աստված), աջակողմյանը զուրկ է այդ նշանից (աստվածուհի), ունի հզոր ճառագայթաձև թևեր, իսկ ձախակողմյան պատկերը փոքր է (որդի աստված) և կապվում է նախորդների հետ կոմպոզիցիոն ու ոճական առումներով։ Կոմպոզիցիայի վերևից և աջից հավելագրված է մ.թ.ա. III հազ. որսորդական տեսարան։

Չենք կասկածում, որ այստեղ ներկայացված է աստվածային մի ընտանիք, որովհետև լուսնաստվածների (արևային աստվածների) այդպիսի մի ընտանիք էլ հայտնի էր նախկին պատկերների մեջ[23]։ Այնտեղ ներկայացված են արական, իգական և փոքրիկ մանկան պատկերներ՝ լուսնամահիկների մեջ պարփակված և այծանկարի ուղեկցությամբ։ Բոլոր պատկերներն էլ ունեն մ.թ.ա. IV հազ. բնորոշ ոճական գծեր։ Այս տիպի «ընտանեկան» պատկերները արմատավորվում են հոգևոր մշակույթի մեջ և հարատևելով հասնում մինչև միջնադար։ Միջնադարյան կարարսների դաջազարդ գոտիների վրա հաճախ են հանդիպում հոր, մոր ու մանկան ռելիեֆ պատկերներ, որոնք պահպանել են հնագույն ոճն ու կոմպոզիցիոն կառուցվածքը։

Պատկերագրական նույն գծերով օժտված արեգակնային աստվածները շարունակում են հանդես գալ և ավելի ուշ ժամանակներում։ Դրանց մեջ արեգակնային պատկերն ունի փոքր չափեր։ «Ճառագայթվող» վերջույթներն այստեղ կարճանում են և մարմնի մնացած մասերի համեմատ ավելի համաչափ դառնում։ Բոլոր դեպքերում այդ աստվածների արական հատկանիշը մնում է խիստ շեշտված։ Այս հանգամանքը կապված է նրա արական սկզբունքի՝ հողի, կենդանիների ու մարդկանց արգասավորման գաղափարի հետ։

**Աղ. 79, Նկ. 2**—Գեղամա լեռների վաղ ժայռապատկերներից մեկում (մ.թ.ա. IV հազ. վերջ III-ի սկիզբ) արևի աստվածները պատկերված են հողը բեղմնավորելու հմայական գործողության մեջ[24]։ Իբրև արեգակնային աստվածություններ նրանց ուղեկցում են առյուծի և ճանկախաչի (սվաստիկա) պատկերներ։ Նրանց շրջապատում են նաև այծերի և թռչնանման պատկերներ և ինչոր գաղափարանշաններ։ Արեգակնային աստվածները պատկերված են ճառագայթավոր վերջույթ-

---

[22] Կ. Մելիք-Օհանջանյան, Միթրա-Միհրի արքանյակներն ու գործակալները «Սասնա ծռերում», «Գրական-բանասիրական հետախուզումներ», Երևան, 1946։ Հ. Ռ. Իսրայելյան, Բնապաշտության հետքերով, «Գիտություն և տեխնիկա», 1975, № 4։

[23] «Գեղամա լեռների ժայռապատկերները», նկ. 319։

[24] Հ. Ա. Մարտիրոսյան, Հայաստանի նախնադարյան նշանագրերը, աղ. 11, Հ. Ռ. Իսրայելյան, Բնապաշտության հետքերով, «Գիտություն և տեխնիկա», 1975, № 4։

ները դեպի վեր մեկնած դիրքով, երկրին շփվող խոշոր առնանդամներով, իբրև հողը բեղմնավորելու գործողություն։

Կոմպոզիցիայում պատկերված սվաստիկա արևանշանը, որ ավելի է հաստատում «ճառագայթվող» մասներ ունեցող աստվածությունների արեգակնային բնույթը, ի հայտ է գալիս նաև «Սասնա ծռերում»։ Դա էպոսի հերոսների թևերին եղած բնածին խաչապատկեր «խաչ պատրազինն» է, «մսե-խաչը», որը նրանք կրում էին իբրև արևի խորհրդանիշ։ Ժամանակի ընթացքում քրիստոնեության ազդեցության տակ, արևանշան խաչը կորցրեց իր բուն իմաստը և ստացավ տարբեր անուններ և հերոսներին նեղ դրությունից փրկող, նրանց հաջողություններ, հաղթանակներ ապահովող թալիսմանի, պահպանակի նշանակություն։ Մինչդեռ նախնադարյան արվեստում խաչը կամ սվաստիկան կարելի է տեսնել բրոնզի գոտիների վրա հանդիպող արևը մարմնավորող առյուծների պատկերների, քարե կուռքերի, բրոնզե դաշույնների ու խեցեղենի վրա, իբրև արևի խորհրդանիշ։

Աղ. 80—Երկրի բեղմնավորման նույն իմաստը փոքր-ինչ այլ ձևով արտահայտված է Գեղամա լեռների նորահայտ պատկերներից մեկում և ունի մի որոշակի նշանագիր՝ զետեղված կոմպոզիցիայի ստորին մասում, որ մեկնաբանվում է իբրև «երկիր» գաղափարագիր։ Այս նշանը կասկած չի թողնում, որ պատկերն արտացոլում է հողի առասպելաբանական բեղմնավորումը։ Երկրանշանից վերև տեղադրված է մի դիցական պատկեր, պպզած դիրքով, լուսնամահիկը գլխին. գուցե դա հենց լուսնի անձնավորումն է, որ հնում կապված էր երկրի հետ իբրև խոնավաբեր էակ և հայերի առասպելաբանական պատկերացումներում մշտապես հանդես էր գալիս իբրև արևի քույր։ Ըստ այսմ, այս երկու լուսատուները գիշեր ու ցերեկ փոխարինում էին մեկմեկու։ Նախնադարյան նկարիչը պատկերել է նաև ցերեկային լուսատուի մարդակերպ պատկերը, նույն դիրքում՝ հսկա առնանդամով, ոտքերի ու ձեռքերի ճառագայթաձև վերջույթներով։ Աստվածային այս պատկերին ուղեկցում է երեք կենտրոնաձիգ շրջանագծերով կազմված արևապատկերը, որոնց ստորին երկար ճառագայթները հասնում են «գետին»։ Լուսնապսակով զարդարված էակի մոտ մի պարույրանշան կա, որ արտահայտում է հավերժության գաղափարը։ Պատկերն ունի նաև մարդու, այծի և այլ ֆիգուրներ, որոնց իմաստաբանական կապակցությունները առայժմ դժվար է բացահայտել։

Ուշագրավ է այն հանգամանքը, որ նախնադարյան ժողովուրդների համոզմամբ՝ արևը հողը բեղմնավորում էր նաև բույսերի միջոցով։ Հետաքրքիր է, օրինակ, այն փաստը, որ Նոր գվինեացիք արևին և հողին արարչական մեծ զորություն վերագրելով, արևի նմանությամբ պատրաստում էին կոկոսյան արմավենուց ճրագներ և կախում թզենու ծառից կամ տներում։ Ծառի տակ գտնվում էր զոհաբերությունների տափակ քարը։ Ամեն տարի, անձրևները սկսվելու ժամանակ, ըստ նրանց պատկերացումների, «պարոն արևը իջնում է ծառի վրա, որպեսզի բեղմնավորի հողը... Այս տոնի ժամանակ զոհաբերվում են մեծ քանակությամբ խոզեր և շներ, իսկ կանայք և տղամարդիկ իրենց սեռական գործողությամբ պատկերում են արևի և հողի բեղմնավորումը այդ նույն ծառի տակ՝ մարդկանց ահռելի բազմության առաջ, պարի ու երգերի ուղեկցությամբ։ Այս ամենը արվում էր արևից անձրև, ուտելիք (մթերք ու ջուր), ինչպես նաև անասունի և երեխաների առատ սերունդներ ստանալու նպատակով»[25]։

Այդ նույն տոնի ժամանակ Բարաբյան կղզիներում արևր պատրաստվում էր սպիտակ բամբակե գործվածքից, տղամարդու կերպարանքով, 3 մ բարձրությամբ, համապատասխան կեցվածքով, ճիշտ այնպես, ինչպես հանդիպում են արևի աստվածները մեր ժայռապատկերներում։

Հայաստանի հնագիտական նյութերը նույնպես ի հայտ են բերում արևի և բույսի, հետևապես նաև հողի իմաստաբանական փոխադարձ կապը։

Նկ. 40ա—Մ.թ.ա. III հազ.-ի ժայռանկար է, ուր պատկերված են ծառերի մի խումբ, մարդ, այծ, թռչուն և սրանց միջավայրում հսկայամարմին աստվածություն՝ կանթած թևերով, երկիրը բեղմնավորելու հմայական գործողության մեջ։ Նրա կողքին պատկերված է թռչուն, որ, հավանաբար, արևի կցորդն է և իր ոճով միանգամայն տիպական մ.թ.ա. III հազ.։

Նկ. 40բ—Այս նույն աստվածությունը, ճիշտ նույն դիրքով, հանդես է գալիս մի այլ կոմպոզիցիայում՝ մարդու և, որ ամենաուշագրավն է, խոյերի գաղափարանշանների միջավայրում։ Պետք է մտածել, որ վերջիններս ցույց են տալիս հողի բեղմնավորման ժամանակը՝ գարունը (ըստ Շիրակացու՝ կենդանակամարում խոյը, ցուլը և երկրավորը խորհրդանշում են գարունը)[26]։

Արևի և բույսերի փոխադարձ կապերի վերաբերյալ Հայկական լեռնաշխարհի վաղ երկրագործների ունեցած պատկերացումները, կարելի է ասել, նույն ձևով շարունակվում են նաև ուրարտական ժամանակներում։ Ուրարտական կնիքնե-

[25] Фрезер, Золотая ветвь, I, М.-Л., 1931, стр. 162.

[26] Հ. Ա. Մարտիրոսյան, Հայաստանի նախնադարյան նշանագրերը, էջ 33, աղ. 8, նկ. 12, 14։

րի վրա պահպանված մոտիվներում իբրև արևի խորհրդանիշ հանդես են գալիս երկգլխանի և թևավոր ձիերը՝ ջուրը խորհրդանշող ալիքի և ծառի ուղեկցությամբ։ Դրանցից մեկում՝ ծառի մի կողմից լուսնի, մյուս կողմից՝ արևի նշաններն են պատկերված[27]։

Արև-բույս-հող կապի հարաբերության գաղափարաբանությունը երևան է գալիս նաև վաղ հայկական ժամանակաշրջանում՝ հեթանոս հայերի միջավայրում։ Հնագետ Ս. Եսայանը Իջևանում հայտնաբերել է քարե աղորիք, որի վրա երկու արևի խորհրդանիշ-սվաստիկա է փորված, որ դարձյալ վկայում է արևի հմայական ազդեցությունը բույսի և հողի վրա, որի արդյունքը հացահատիկի առատ բերքն է։

Այս մտայնությունը տարածված է եղել նախապատմական ժամանակաշրջանում, իշխող է եղել շատ ժողովուրդների հոգեբանության մեջ։ Օրինակ՝ հին հնդիկների մոտ Ագնին, որն իր ծընունդով չափազանց նման է մեր Վահագնին, ուղղակիորեն օգնում է բույսերի հասունացմանը։ Վեդայական հիմներից մեկում ասվում է, թե նա իր բոցով ջերմացրեց հողը։ Նա էլ մեր Վահագնի նման կապված է ջրի, հողի ու երկնքի հետ, և քանի որ այս երեք աշխարհներն ամենուրեք պատկերացվում էին միասնաբար, նա էլ, ըստ այդ պատկերացումների, իր լույսով ձգվում էր երկրի, երկնքի ու օդային տարածության մեջ։ Երկրի վրա նա հանդես էր գալիս օջախի ձևով։ Կրակը, ըստ Ագնիին նվիրված վեդայական մի հիմնի, համարվում էր երկրի գիշերային տերը, որից էլ վաղ առավոտյան ծնվում էր ծագող Սուրիան, այսինքն նույն արևը[28]։ Հավանաբար այս նույն գաղափարի արտահայտությունն են Հայաստանում մ.թ.ա. III հազ. կացարաններում մշտապես հանդիպող պաշտամունքային օջախները։

Ավելի ուշ ժամանակներում աշխարհի շատ ժողովուրդների երկրագործական կենցաղում տարածված էր հերկած դաշտով իբրև արև՝ այրվող օղ կամ պարզապես օղ գլորելու սովորությունը, հողը բեղմնավորելու, ջերմացնելու և բույսերի աճն արագացնելու նպատակով։ Այս սովորությունը, անկասկած, վերը նշված նախնադարյան գաղափարաբանության ու պատկերացումների ավանդական շարունակությունն էր։

Հայ ազգագրության մեջ նման սովորություն թեպետ չի գրանցվել, սակայն «Սասնա ծռերի» պատումներից մեկում կարելի է տեսնել նման սովորույթների և պատկերացումների արձագանքները։ Երբ Սանասարն ու Բաղդասարը փախչում են Մսրա Մելիքի երկրից և գալիս մոր մոտ, նա իր որդիներին ասում է.

«Որդիք, եկեք, ձե էրկու-իրեք բոլոր հաց թխըմ,
Տարեք էնա տարի գլոխ գլորեք, ասեք.
Ճնճռախոտիկ, պաս գանա, արի զատիկ։
Արի, մտի իմ խոր, մոր թանի թասիկ»...[29]։

Առաջին երկտողում պահպանված են արևի խորհրդանիշը (այստեղ՝ կլոր հաց, նոր թխած տաք հաց) հողի վրա գլորելու հնավանդ սովորույթի հետքերը, իսկ երկրորդ երկտողում՝ այդ ծիսական արարողության բուն նպատակը, երբ պասի (մեծ պասի) վտարման և զատկի կանչով վանվում է ձմեռն ու հրավիրվում է նոր գարունը, այսինքն՝ վերածնված բույսը՝ հացահատիկը։ Եվ պատահական չէ, որ կլոր հաց-արևները գլորողները երկվորյակներ են, որոնք իրենց մեջ կրում են ամպրոպ-կայծակի աստվածության հատկանիշներ։

Իբրև վաղ երկրագործների կողմից երկրպագվող աստվածություն, արևը մեր ժայռանկարներում հանդես է գալիս նաև երկրագործության, մարդկանց և կենդանիների հետ առնչվող այլ աստվածությունների զուգորդությամբ։

Այս ժայռանկարները համոզում են, որ արևի աստվածը Հայկական լեռնաշխարհի նախնադարյան երկրագործների կողմից երկրպագվում էր նաև իբրև հողագործության աստված։ Արևի աստվածությանը այսպիսի դեր էին վերագրում նաև այլ երկրներում։ Օրինակ՝ Ալպյան ժայռապատկերներում արևի աստվածները պատկերվում էին նաև գերանդին ձեռքներին բռնած։ Իսկ մեր «Սասնա ծռերում» Մհերը, Դավիթը պարզապես իրենք էին լծվում գութանին և գերբնական ուժով միանգամից վարում հսկայական հողատարածություններ։

Մեր ժայռանկարներում արևը հաճախ պատկերվում է օձի հետ միասին։ Ելնելով դրանց կոմպոզիցիոն սյուժեներից, հնարավոր է ենթադրել, որ Հայկական լեռնաշխարհի մեր նախնիները, դեռևս նեոլիթ-էնեոլիթյան ժամանակներից սկսած, ունեցել են առասպել, որի համաձայն վիշապը (—օձը) կլանել է կամ կուլ տվել արևը։

Այսպես, Գեղամա լեռներում մ.թ.ա. III հազ. պատկանող մի կոմպոզիցիայում (աղ. 73, նկ. 2) ներկայացված է խաչաձև արև, որ գտնվում է գալարվող օձի ներքո։ Վերջինս կարծես թաքցրել կամ պահել է արևը, որի կողմն են սուրում (օձե-

[27] Նույն տեղում, էջ 31, աղ. XVI, նկ. 9։

[28] «Ригведа», М., 1972, стр. 88, Гимн Сурье и Агни-Вайшванаре, 2.

[29] «Սասնա ծռեր», հատ. Ա, պատ. ԻԳ, էջ 983—984, էջ 153։



5—1050

րի շարժումը այնքան դինամիկ է, որ միանգամայն կարելի է «սուրալ» բառն օգտագործել) ևս հինգ օձ։ Այստեղ էլ հենց դրսևորվում է առասպելական թեման։ Վիշապ օձերի հետ կռվի են բռնվել երեք հերոս, մի հանգամանք, որ հիշեցնում է Սանասար-Բաղդասարի կամ հայ ժողովրդական հեքիաթներում բազմիցս հանդիպող երեք եղբայրների կռիվները վիշապների դեմ, նրանց հաղթանակը և արև-աղջիկներին վիշապի գերությունից ազատելը։ Այս կոմպոզիցիայում վիշապ-օձերի մոտ երկու այծ—կայծակ են պատկերված։

Երբեմն այս վիշապները երկգլխանի են, ինչպես Գեղամա լեռների (աղ. 81, նկ. 2) ժայռապատկերում։ Այստեղ վիշապը բացել է իր երախը՝ արևը կուլ տալու համար։ Վիշապի ներքո դարձյալ այծ-կայծակն է կանգնած։

Մի այլ (աղ. 63, նկ. 1) ժայռապատկերում ներկայացված է նման մի սյուժե։

Օձ-վիշապի գալարների ներքո պատկերված է արևը։ Նա իրենից ներկայացնում է շրջանագիծ, ցած կախված երեք ճառագայթներով։ Սա ցույց է տալիս արևամուտը, մայր մտնող արևը։ Արևն ու վիշապը ուղեկցվում են մեծ ու փոքր այծերի չորս պատկերներով։

Հնարավոր է մտածել, որ մեր նախնիները արևի մայրամուտը համեմատել են վիշապի կողմից նրան կուլ տալու հետ (կամ օձն էլ մայր մտնող արևի խորհրդանիշ էր, ինչպես հին միջագետքյան առասպելում, որտեղ մայր մտնող արևը համեմատվում է կրակե օձերի հետ)։

Նման առասպելական սյուժեների առկայությունը մեր ժայռապատկերներում և հայ բանահյուսության մեջ պահպանված առասպելների մեզ հասած փշրանքները իրավունք են տալիս մտածելու, որ հների պատկերացմամբ անձրև գալուց առաջ ամպերի կուտակվելը, երկնքի մթագնելը և արևի ծածկվելը ամպերի ետևում. դարձյալ նույնացվում էր վիշապի կողմից արևը կլանելու հետ։

## ԵՐԿՆԱՅԻՆ ԱՂԵՏԻ ՆԱԽՆԱԴԱՐՅԱՆ ԱՌԱՍՊԵԼԸ

Վերը նշված արևագունդ-օձավիշապ պատկերներից բացի, Գեղամա լեռների ժայռանկարներում կան մի շարք տեսարաններ, որոնց մեջ արևի սկավառակին փոխարինում են թռչուններ կամ մարդակերպ արեգակնային աստվածներ։ Այս տեսարանները բացառիկ ուժով ու հակիրճությամբ վերարտադրում են արևի ու վիշապի, արև-թռչնի ու վիշապի, արև-աստծո ու վիշապի պայքարը, որ հայտնի է ողջ հին աշխարհում իբրև արև-թռչունի հակամարտություն կամ «տիեզերական աղետի առասպել»։ Ահա այս կռվի բազմազան դրվագներն են արտացոլված մ.թ.ա. III—I հազ. ժայռանկարների, խեցեղենի, բրոնզե գոտիների վրա և այնուհետև հայ աղբյուրներում[30], «Սասնա ծռերի» տարբեր պատումներում, ժողովրդական հեքիաթներում և հնագիտական հուշարձաններում[31]։

Արև-թռչունի և օձավիշապի հակամարտության հնագույն դրվագները հանդիպում են Գեղամա լեռների մ.թ.ա. III հազ. մի քանի ժայռանկարներում, նույն ժամանակաշրջանի խեցեղենի զարդանախշերում[32] և մետաղե առարկաների վրա[33]։ Ծանոթանանք այդ տիպի ժայռապատկերներից մեկին (նկ. 21)[34], որ կազմված է թռչունի, օձի, այծի և երկնային մարմինների երկրաչափական պատկերներից։ Կոմպոզիցիայի կենտրոնական մասն զբաղեցնում է մի հզոր թռչուն՝ ուղիղ, հաստ ոտքերով, եռանկյունի մարմնով, կեռ պոչով, հաստ վզով ու բաղանման գլխով։ Նա ամուր կանգնած է գետնին, թաթով գամել է հսկա օձավիշապի պոչը և ձգտում է կտցահարել նրա գլուխը։ Օձը ծառս է եղել թևավորի դեմ։ Մի իսկական պայքար, որոշակի, պարզ ու հակիրճ։ Պատկերի վերին անկյունում առկա է թռիչքով մոտեցող մի այլ թռչուն՝ մի փոքրիկ սկավառակ կտցին։ Թռչուններից աջ և ներքև փորագրված են արևի սկավառակ, լուսնամահիկ և արու այծ։ Այս և նման պատկերների մանրազնին ուսումնասիրությունը ցույց է տալիս, որ բոլորն էլ կազմված են պարբերաբար կրկնվող միևնույն տարրերի՝ պատկեր-սիմվոլների համադրությամբ և աչքի են ընկնում ձևաոճաբանական, պատկերագրական ու կանոնիկ միասնությամբ։ Նշանակում է, դրանք բոլորն էլ կառուցված են առասպելական միևնույն հենքի և արվեստագիտական նույն հնարավորությունների հիման վրա։ Նման կոմպոզիցիաների հիմնական էությունը թռչունի և օձավիշապի պայքարն է, որ գրեթե մշտապես ավարտվում է թռչունի հաղթանակով: Արևի և լուսնի երկրաչափական պատկերների առկայությունն այս կոմպոզիցիաներում պարզորոշ ցույց է տալիս, որ թռչունի և օձի կռիվը սովորական երևույթ չէ, այլ այն տեղի է ունենում տիեզերքում՝ երկնային օվկիանոսում, երկնային տարբեր տարրերքների միջև։ Ըստ այդմ, եթե արևագնդով ուղեկցվող թռչունը խորհրդանշում էր

---

[30] Մովսես Խորենացի, Ա, ԼԱ։

[31] Թադ. Ավդալբեգյան, Միհրը հայոց մեջ, Վիեննա, 1929, էջ 80—86։

[32] Ս. Սարդարյան, Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, Երևան, 1967։

[33] А. Ш. Джавахишвили, Л. И. Глонти, Урбниси, I, Тбилиси, 1962, табл. XXXVI.

[34] Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Ռ. Իսրայելյան, Գեղամա լեռների ժայռապատկերները, նկ. 156։

արևի, լույսի, բարու սկզբունքը, ապա օձը, վիշապը (հաճախ դևը) ներկայացնում էր Երկնային քաոսը, խավարը, մութը, չարը: Տիեզերական այս երկու ուժերը մշտական հակամարտության մեջ էին, նրանց պայքարի ելքից էր կախված աշխարհի բարօրությունը։ Երկնային ուժերի այս անհաշտ հակամարտությունը ընկած է աշխարհի ծագման մասին գոյություն ունեցող հին շումերական, բաբելական, խուրրիական, եգիպտական գրավոր աղբյուրներում պահպանված արարչության առասպելների հիմքում և նույն գծերով արտացոլված նրանց արվեստի հնագույն հուշարձաններում։ Ըստ այդմ, հինարևելյան առասպելներում արդեն մ.թ.ա. III հազ. արևն ու օձավիշապը անձնավորվում են ոչ միայն թռչնի ու օձի, այլ նաև մարդակերպ հերոսների կամ աստվածությունների կերպարանքով։ Հայկական լեռնաշխարհի արվեստի հուշարձաններում այդ դրափոխությունը հստակորեն արտացոլվում է մ.թ.ա. II—I հազ., երբ արևի սկավառակի կամ թռչնապատկերների ուղեկցությամբ հանդես են գալիս նույն օձավիշապների դեմ մարտնչող արեգակնային կամ կայծակնային մարդակերպ աստվածներ, որոնք հաճախ ոչնչացնում են օձավիշապին սեփական ճառագայթման, այն է՝ կայծակնացայտ շանթի միջոցով։

Իրենց էության հիմնական գծերով Հայաստանի մարդակերպ արևակայծակային այս աստվածները սերտորեն առնչվում են մի կողմից հին արևելյան և առանձնապես ուրարտական, մյուս կողմից՝ հայ հեթանոսական դիցարանի աստվածությունների, ինչպես նաև «Սասնա ծռեր» դյուցազնավեպի կիսաաստված հերոսների հետ, որոնք իրենց բրոնզեդարյան նախատիպերի նման մշտապես կապված էին արևի ու կայծակի, աստղերի, երկնքի, երկնային ծովի, արծիվ կամ բազե թռչունների, ինչպես նաև վիշապամարտի հետ։ Հիշենք, որ նրանք իրենց աստղ-աբեներն ունեին երկնքում, որ նրանց մարմնի վրա արևը խորհրդանշող բնածին խաչեր կային, որ նրանք իրենց հուր-կայծակ ձիով ու կայծակե սրով հասնում էին արեգակին, սուզվում օվկիանի հատակը, մարտընչում ծովավիշապի դեմ, նրա երախից ազատում ոսկե մատանին, անգին ակը (արևը), գերությունից վերադարձնում արև-աղջկան[35]։

Գեղամա լեռներում և Սյունիքում առանձնապես շատ են հանդիպում վիշապամարտի տեսարաններ, որոնց մեջ օձավիշապների դեմ թռչունի փոխարեն հանդես են գալիս արևամարտիկ կամ կայծակնամարտիկ մարդակերպ աստվածները։ Սրանք զենքով, մարմնից արձակվող շանթ-կայծակներով, հմայական ներգործությամբ կամ այլ միջոցներով վանում, հեռացնում են արևազնգի վրա հարձակվող օձերին։

Թվարկված պատկերներից մեկում փորագրված է գալարվող հսկայամարմին մի օձավիշապ, մարմնի տարբեր մասերի անկանոն ելուստներով։ Մարդակերպ արև-կայծակի աստծո պատկերը տեղադրված է օձավիշապի պոչի գալարի տակ։ Ճողոպրող սողունը ձգտում է պոչի հարվածով վնասել արևամարդուն, իսկ վերջինս վանում է նրան թևերի կախարդական կեցվածքով և իրենից շանթող ճառագայթներով։ Նրա աջ անութի տակ ապահովաբար «պահված է» վիշապից փրկված արևի սկավառակը (աղ. 81, նկ. 1)։

Մենք ոչ մի կասկած չունենք, որ մարդակերպ այս աստվածները իրենց մեջ կրում են արև-կայծակի հատկանիշներ, ինչպես մեր «Սասնա ծռեր» վեպի հերոսները։ Սյունյաց պատկերներից մեկում արև-կայծակ աստվածը ներկայացված է լուսնաձև պսակով, արևի սկավառակով, վերջույթներից «ժայթքող» ճառագայթափնջերով։ Արևի սկավառակի վրա ձախից հարձակվում է մի հսկա օձավիշապ։

Մի այլ ժայռանկարի աջ մասում փորագրված է ծառս եղած մի հսկա օձ, իսկ նրա դիմաց հրացոլք ներկայացնող մի կայծակնամարդ՝ կանգնած դիրքում, ողնաշարի, կողերի, ոտքերի ու մարմնի այլ մանրամասների ճառագայթների տեսքով, կլոր գլխով, հսկայական ձեռքերի մատ-ճառագայթներով։ Արտաքնապես խաղաղ այս պատկերը, մեր կարծիքով, ամպրոպային կռվի տեսարան է (նկ. 24)։ Հրեղեն դյուցազնը կամ կայծակի աստվածը հալածում, վանում է օձավիշապին իր ճառագայթներով, իր հրով։ Այդպիսին էր նաև հայոց վեպի սիրելի հերոսը՝ ջրածին, կիսաաստված Սանասարը՝ իր ծովային հրեղեն ձիով, իր ծովեղեն կայծակի թրով, որոնք Աբեղյանի սուր դիտողականությամբ, միևնույն կայծակնային երևույթի տարբեր անձնավորումներն են, մեր ժայռանկարային աստվածների նման ամբողջովին բոց ու ճառագայթ ներկայացնող լուսավոր, պայծառ ու ամենահաղթ։

«Սասնա ծռեր» վեպի նման, մեր հնագույն ժայռապատկերները ներկայացնում են նաև «Հազարամյա» վիշապների, որոնց երախի մեջ պատկերված է արևի սկավառակը՝ «Սասնա ծռերի» ոսկե մատանին կամ անգին քարը (աղ. 81, նկ. 2)։

Այդպիսի վիշապ ներկայացված է Գեղամա լեռների Փոքր Պայտասարի գագաթի ժայռանկարներից մեկում և պատկանում է մ.թ.ա. III հազ.։ Օձավիշապն զբաղեցնում է ժայռաբեկորի աջ մակերեսը, բաց երախի մեջ ներգծված է օղակաձև կամ սկավառակաձև մի մարմին, որը արվեստի

[35] Մ. Աբեղյան, Երկեր, հատ. 1, Երևան, 1966, էջ 417—418։

*նախնադարյան հուշարձաններում խորհրդանշում է արևը, իսկ վիշապի խաչաձև պոչի տակ ներկայացված է մի այծ (աղ. 81, նկ. 2)։ Այս կոմպոզիցիայի ներքին իմաստը միանգամայն պարզ է։ Այստեղ ներկայացված վիշապ-ձկը նույնությամբ կրկնում է հայ ժողովրդական հավատալիքների և հեքիաթների «հազար տարեկան հսկա օձերին», որոնք կարող էին կլանել երկիրն ու արևը*[36]*։ Քննարկվող պատկերի մեջ օձավիշապը հաղթում է արևին, կլանում այն, կամ, համենայն դեպս, պահում իր երախում։ Արևը պատկերվում է իբրև սկավառակ, օղակ կամ մատանի՝ իսկ և իսկ հայ ժողովրդական վեպի ծովային վիշապի երախում պահվող ոսկե մատանու կամ անգին ակի նման։ Վեպի պատումների մեջ ծովային հրեշի թշնամին է ամպրոպամարտիկ դյուցազն Սանասարը, որ գալիս է Պղնձե քաղաք Քառսուն ճյուղ ծամ Դեղձուն Խաթուն անունով արեգակնային աղջկան ազատելու և կնության առնելու համար։ Սակայն աղջկա սիրուն կարելի էր արժանանալ միայն ոսկե մատանին կամ անգին ակը վիշապի երախից ազատելու գնով.*

«...*որդի, էնու (աղջկա) սեհրը՝ երբ ծովու* կղզին, մատնեք վիշապի բերանի մեջ է, հրեղեն մարդըմ ըլնի, որ էրթա, մտնի ծով, վիշապի բերնեն հանի, *բերի և անու սեհը բաթալ ըլնի». Սանասարը «գնաց մտավ ծովու տակ, տեսավ վիշապ գլուխ բարձրացրեր, չանգալ վերևանց էթալ, վիշապի բերնեն զմատնեք էհան, դարձավ իրի, կուշ էլավ, քնավ»։*

*Վեպի պատումներին հետևելով՝ այնուհետև իմանում ենք, որ ծովային հրեղեն դյուցազն Սանասարը ազատում է վիշապի բերանից ոսկե մատանին կամ անգին ակը, և անձրև է հորդում, ցամաքած երկիրը շենանում է, երևում է արեգակը, սմն ու մութը չքանում, լուսավորվում է քաղաքը։ Վեպում դիպուկ ու անմիջական է նկարագրվում Սանասարի հաղթանակը ծովային հրեշի դեմ. «Սանասար զձին քշեց մեջ ծովուն... վեր վիշապի գլուխն դարձավ. գուրզըմ զարկեց վեր վիշապի գլխուն, վիշապ զինք թափ էտու, ակ բերնեն թռավ, գնաց մեջ դաշտին։ Վիշապ զինք թափ էտու, ջուր էլից քաղաք, ինչպես անձրև գա, ընցգուն զքաղաք էթաց»։ Մի այլ պատումում, երբ Սանասարը կռվում է ծովային վիշապի դեմ, «ծովը կատաղում է», բարձրանում է «վիշապ-քամին»՝ ամպրոպն ու պտտահողմը, և անձրև է գալիս այն քաղաքում, ուր ջրի ու հացի պակասություն կար*[37]*։ Աբեղյանն արդարացիորեն նկատել է, որ «այս պատմությունը պարզապես ամպրոպային կռվի մի առասպել է»։ Այժմ կարելի է պնդել, որ նախնադարյան Հայաստանի մ.թ.ա.* III—I հազարամյակների հուշարձաններում առկա են ամպրոպային կռվի առասպելի հետ կապված բազում ժայռանկարային սյուժեներ, որոնք հիմք են տալիս մտածելու, որ վիշապասպան Սանասարի պատմությունը հերոսավեպում նախնադարյան կոսմիկական առասպելի հետնագույն տեղական արտահայտություններից մեկն է:

*Տեսնենք, թե ինչ է նշանակում «ամպրոպային կռիվ» կամ «տիեզերական աղետ» հասկացությունը։*

*Հինարևելյան տիեզերական առասպելի համաձայն, հնագույն ժամանակներում, երբ դեռ չէին ձևավորվել երկիրն ու տիեզերքը, գոյություն ուներ տիեզերական մի հսկա օվկիանոս, որի մեջ ապրում էր նախասկզբնական մի էակ՝ օձի կամ վիշապ-դևի կերպարանքով, ինչպես «Սասնա ծռերի» երկնածովի վիշապը։ Լինելով օվկիանի և, ընդհանրապես, ջրերի խորհրդանիշ, այս օձավիշապը մարմնավորում էր տիեզերական քաոսը, կյանքի ծագմանը նախորդող աշխարհի նախասկզբնական վիճակը*[38]*։ Հասկանալի պատճառով այս վիշապը հետագայում դարձավ նույն նախասկզբնական վիճակին վերադառնալու սիմվոլը, կյանքի ոչընչացման, կործանման, ջրհեղեղի սիմվոլը։ Բաբելական սեպագիր աղբյուրներից մեկում համաշխարհային ջրհեղեղի տարին կոչվում է «ոռնացող վիշապի տարի»։ Հնդկական առասպելում օձավիշապը ապրում է տիեզերական անդնդախոր ծովում և մեկ անգամ առևանգելով երկիրը, նրա հետ միասին սուզվում է օվկիանի հատակը, ինչպես մեր վեպի վիշապը։ Նրա դեմ մարտնչող աստվածը ազատում է երկիրը և բարձրացնում այն ջրի երեսին։ Սրվանձտյանցի գրանցած հին զրույցներից մեկում էլ «հազար տարեկան վիշապը կուլ է տալիս երկիրը»։*

*Օձն ամենուրեք հանդես է գալիս իբրև աղետի սիմվոլ, իբրև արևի աստվածությանը հակադրվող սկզբունք։ Հին Եգիպտոսում էլ աշխարհի կարգին հակադրվող սկզբունքը նույն վիշապ-օձն էր, կամ «տիեզերական օձը», որը հանդես էր գալիս մերթ խավարի կործանարար ուժը մարմնավորող Ապոպիս օձի, մերթ ջրհեղեղ հարուցող աստվածուհու կերպարով։ Սրան ամենուրեք հակադրվում է Ռա (արևի) աստվածը, կյանքի ու աշխարհի կարգի կրողը։ Հին եգիպտացիների պատկերացումների համաձայն ամեն անգամ, երբ արեգակը ծագում էր կամ մայր մտնում, Ապոպիս օձը փորձում էր խորտակել այն նավակը, որով իր*

[36] Գ. Սրվանձտյանց, *Գրոց-բրոց, էջ 92, Կ. Պոլիս, 1874։*

[37] Մ. Աբեղյան, *նշվ. աշխ., էջ 417—418։*

[38] А. Горбовский, Загадки древнейшей истории, М., 1973, стр. 19, 29 *և այլն։*

պտույտն էր կատարում երկնային օվկիանում արևի Ռա աստվածը։ Եվ ամեն անգամ, երբ արեգակը դուրս էր գալիս ամպերի ետևից, հին եգիպտացիք ասում էին՝ «Ռա աստվածը հաղթեց Ապոպիս օձին»։ Այս նույն երևույթը տարբեր երանգներով կրկնվում է հին հուդայական կրոնում, Ասորեստանում, խուրրիական աշխարհում, Չինաստանում, Հնդկաչինում, Աստրիքից մինչև հին Իտալիա և նույնիսկ ամերիկյան նախնադարյան ցեղերի շրջաններում։ Եվ անկախ առասպելների տարբեր երանգներից, նշված վայրերի արվեստի հուշարձաններում տիեզերական կռվի տեսարանը ներկայացվում էր օձավիշապի, արևազնդի և նրա խորհրդանիշ թռչնի հակամարտության միջոցով, այնպես, ինչպես մեր ժայռանկարներում։ Իհարկե, տարբեր մշակութային արեալներում այս պատկերներն ունեին իրենց ուրույն գծերն ու առանձնահատկությունները, սակայն էական կետերում նրանք համընկնում են[39]։

Տիեզերական աղետի խորհուրդն արտահայտող այս սիմվոլիկ պատկերներից զատ, հին Արևելքում արարչության առասպելի հիման վրա պատկերում էին նաև ավելի ընդարձակ տեսարաններ, որոնց մեջ հանդես էր գալիս տարբերքի հակամարտությանը մասնակցող մարդակերպ, կիսամարդակերպ աստված-աստվածուհիների մի ամբողջ խումբ։ Դրանցից առավել հետաքրքրականը խուրրիական առասպելի հիման վրա կազմըված՝ Պարսկահայքի ոսկե գավաթի տեսարանն է, որ կատարված է մ.թ.ա. II հազ. վերջերին[40]։ Խուրրիական այդ առասպելը լայնորեն տարածված էր ուրարտահայկական, իրանամարական աշխարհում և իր իսկ բուն էությամբ անքակտելիորեն կապվում էր հետնագույն հայկական առասպելի ու վեպի հետ, հանդիսանալով սրանց բուն արմատն ու ակունքը։ Արևելքի հնագույն այս առասպելը տարածված էր ոչ միայն Աքեմենյան ու Սասանյան Իրանում, այլև հազարամյակներ առաջ հազար ու մի տարբերակներով պատմվում էր հին Շումերում, Բաբելոնում և Ասորեստանում։

Նկ. 26—Այժմ ավելի մոտիկից ծանոթանանք Հասանլուի ոսկե գավաթի դրվագներին։ Այն հայտնաբերվել է Պարսկահայաստանի Կապուտան լճից ոչ հեռու գտնվող Հասանլուի պալատական շինության ավերակներում, մի շինություն, որն իր էությամբ, հնագիտական բոլոր նյութերով կապվում էր խուրրի-ուրարտական, ասորեստանյան և ուշ բրոնզեդարյան Հայաստանի մշակույթների հետ։ Ուսումնասիրելով այդ բացառիկ իրը, էդիթ Պորադան ցույց տվեց, որ նրա վրա դրվագված պատկերները ներկայացնում են կոսմիկական կռվի մի ցայտուն տեսարան։ Հակամարտի մեջ են մտել հին ու նոր աստվածների ներկայացուցիչները։ Մի կողմից՝ խուրրի-ուրարտական երիտասարդ աստված Թեշուբ-Թեյշեբան, որ մեր Սանասարի նման կռվում է «երկնային աշտարակում» («Պղնձե քաղաքում») պաշարված իր հարսնացուին ազատելու, աշխարհին կենսատու լույս, ջերմություն, ջուր ու առատություն բերելու համար, մյուս կողմից՝ հին աստվածների հրեշավոր զավակ քարե հսկա վիշապը, որ մեր վիշապների նման երկրածովային, երկկենցաղ, խառնամարմին մի հզոր էակ է։ Նրա ժայռեղեն մարմինը դուրս է ցցվել ծովի անդընդախոր հատակից և ստորին մասում եռամարմին զարհուրելի օձավիշապի տեսք ունի՝ գայլի կամ շան երեք երախաբաց գլուխներով։ Նրա մարմնի վերին մասը լիովին մարդկային է, սակայն թևերն ավարտվում են կենդանական ուժեղ մագիլներով։ Մի խոսքով՝ մարդկային չար էությամբ օժտված օձաշապկով մի էակ, որոնցով լի են հայ առասպելական զրույցները։ Կռիվն օրհասական է, երիտասարդ Թեշուբի մարմինը խիստ լարված է, մեջքը ճկված, առաջ մեկնած թևերը պաշտպանված են մետաղե վահանակներով։ Մարտնչող աստվածներն ունեն իրենց օգնականները, ինչպես Սասնա հերոսները, Տիգրանը, Գաբրիել հրեշտակը, վրաց Ամիրանը[41] և ուրիշներ։ Թեշուբը կապված է հզոր թռչնի (արծվի կամ բազեի) և կինաստվածուհու (Իշտարի կամ Անահիտի) հետ։ Վերջինս բազմած է ճախրող հսկա թռչնի մեջքին և ազատվում է մահից։ Այս խմբի դիմաց կանգնած է օձավիշապի օգնական աղեղնավորը, որի ճակատակալը պսակված է ռելիեֆ օձագլուխներով։ Այստեղ մեր զրույցների օձավիշապը բացահայտորեն մարդեղինացված է։ Նա ձգտում է պիրկ լարված նետով սպանել ճախրող թռչունին, կործանել երկինքը, վայր բերել աստվածուհուն։ Ինչպես պարզ երևում է, այս տեսարանում դարձյալ արծարծվում է թռչնի և օձավիշապի կռիվը, ավանդական մի պատկերացում, որն ընդհանուր է դառնում ողջ Արևելքի համար արդեն մեզանից հինդ հազար տարի առաջ։

Քննարկված նյութերի մեջ մեր էպոսը, առասպելը գտնում են իրենց նախնադարյան-հինարևելյան վաղեմի արմատները։

[39] А. Горбовский, նշվ. աշխ., էջ. 7—11։

[40] E. Porada, Alt Iran, Baden-Baden, 1962, s. 84—93.

[41] М. Я. Чиковани, Народный эпос о прикованном Амиране, М., 1966, стр. 11—16.

## ԳԼՈՒԽ ՅՈԹԵՐՈՐԴ

# ՆԱԽՆԱԴԱՐՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺԱՅՌԱԳՐԵՐԸ

### ՊԱՏԿԵՐԻՑ՝ ՆՇԱՆԱԳԻՐ

*Ինչպես համոզվեցինք նյութի վերլուծությունից, Հայաստանի անգիր ժամանակաշրջանի պատմության համար ժայռապատկերներն ունեն անփոխարինելի նշանակություն։ Դրանք գիր ու գրականության բացակայության պայմաններում ժամանակին կատարել են գրավոր աղբյուրների յուրատեսակ դեր և նախնական ժամանակների համար ինֆորմացիայի հարուստ տվյալներ են պարունակում։ Կարևորագույն առանձնահատկություններից մեկն էլ այն է, որ դրանք հիմք ու ակունք են նախասկզբնական գիր ու դրչության, որոնք ընդհանրապես ծայր են առնում իրերի, առարկաների, կենդանիների, մարդկանց, լուսատուների պատկերներից։ Պատահական չէ, որ նախապատմական Եգիպտոսում, վաղ Հունաստանում, հին սլավոնների մոտ, Հայաստանում, Վրաստանում և այլուր «գիր» և «նկար» հասկացությունները միշտ էլ համընկել են։ «Գրել» բառը միաժամանակ նշանակել է և գրել, և նկարել։ Մեր հեռավոր նախնիները սկսել են գրել պատկերներով, որոնք հետագայում կամ անհետ կորել են, կամ էլ հարյուրամյակների, հազարամյակների ընթացքում զարգանալով, դարձել մտքերի, գաղափարների, խոսքի հաղորդման կարևորագույն գրաֆիկ միջոցներ։ Այսպիսի նույնիսկ պարզունակ գրերի գյուտը մարդկային մտքի հանճարեղ փայլատակումներից է և զարմանալի չէ, որ հին ժողովուրդների մոտ (եգիպտացիներ, բաբելացիներ, ասորեստանցիներ, հրեաներ, հույներ, հայեր և այլն) գիրը համարվել է աստվածային պարգև, իսկ գրերի հեղինակները՝ աստվածներ կամ սրբեր։*

*Մ.թ.ա. V—IV հազ. սկսած նախնադարյան նահապետական կյանքի զարգացումը ողջ Մերձավոր Արևելքում հրամայաբար տանում էր դեպի գրի ծագումն ու զարգացումը։ Առաջացան գրչության անդրանիկ, բայց շատ կենսունակ ձևեր, որոնց վերծանված տվյալների վրա են հիմնված մեր բոլոր գիտելիքները հին աշխարհի մայր քաղաքակրթությունների վերաբերյալ։*

*Հայաստանն էլ իբրև հինարևելյան քաղաքակրթության ծայրամասային երկիր, իր վաղ զարգացած սոցիալ-տնտեսական հարաբերություններով, հոգևոր ու նյութական մշակույթի համեմատաբար բարձր մակարդակով պետք է, որ անցներ զարգացման գրավոր փուլին։ Դժվար է նշել Հայաստանում առաջին նշանագրերի ծագման ստույգ ժամանակը։ Հավանական է, որ այդպիսիք մ.թ.ա. IV հազ. առաջ են եկել իբրև ժայռանկարների իմաստային սիմվոլիկ հավելումներ՝ նրանց վիպական, առասպելական բնույթը ճշտելու կամ ավելի դիպուկ դարձնելու համար։ Համենայն դեպս, մ.թ.ա. IV հազ. ժայռանկարներում առկա են արդեն փոքրաթիվ պայմանական այնպիսի պատկերներ, որոնք բավականաչափ հեռացել են առարկայի ճշգրիտ նկարագիրը արտահայտելուց։*

*Մ.թ.ա. III հազ. այդ տիպի պատկեր-գրերը խիստ բազմանում են, հանդես են գալիս նշանագրեր ու գաղափարագրեր. ժայռապատկերների առանձին խմբերում, Ջավախքի, Պարսկահայքի ծիսական անոթների վրա երևում են առաջին պատկերային գրությունները։ Խեցեղենի վրա դրանք ներկայացված են մեկ կամ մի քանի շարքով, առանձին-առանձին տառերի ձևով շարված, երկնային սիմվոլների, անկյունիկների, թռչնապատկերների, նշանների, պարույրների, ռոմբերի, ցանցերի պատկերագրեր։ Նման գրություններ հանդիպում են նաև Գեղամա լեռների, Արագածի, Արմավիրի, Յոլակերտի, Սյունյաց մ.թ.ա. III—I հազ. հուշարձաններում, որոնց մի մասը, հավանաբար, կես-ժայռանկարային, կես-արձանագրային բնույթ ունի, իսկ մյուսը՝ լրիվ արձանագրային (Յոլակերտ, Արմավիր)։ Այդ նշանները ըստ երևույթին գոյականներ ու դրանցով կազմվող գա-*

ղափարագրեր են։ Ժամանակի ընթացքում դրանց կապակցված իմաստը որոշ չափով դյուրըմբռնելի կդառնա, սակայն վերջնականապես ընթեռնելի՝ հազիվ թե։ Սակայն պիկտոգրաֆիայի (պատկերագրության) նշանակությունը մեզ համար շատ մեծ է, քանի որ այն հաղորդման նշանագրային իմաստաբանական կարևոր միջոց է և իր մեջ կրում է գրավոր խոսքի սաղմը, պատմում է երեվույթի մասին, բացահայտում նրա բուն էությունը:

Հայաստանի ժայռապատկերների ուսումնասիրության ընթացքում հայտնաբերվել են մոտավորապես հարյուր նշանագրեր, որոնց մեջ կան պատկերագրեր, սիմվոլներ և գաղափարագրեր։ Դրանցից 50-ը գրաֆիկական, իմաստաբանական քննության են առնված առանձին աշխատությամբ[1], որտեղ ցույց են տրված գոյականների նշանագրերով կազմված գաղափարագրերի առաջացումն ու իմաստային բևեռվածությունը, ուսումնասիրված են հասարակության սոցիալական կյանքի, նյութական արտադրության, կրոնական և տիեզերական պատկերացումների ոլորտներին վերաբերող նշանագրերի խմբերը։

Հայաստանում նախնադարյան այս նշանագրությունն իր զարգացման ընթացքում մտնում է ուրարտական մշակույթի մեջ և այստեղ հասնում իր բարձրագույն զարգացմանը։ Ուրարտական պեղածո նյութերում ամենուրեք հանդիպում են կավե աղյուսիկների, մետաղե իրերի, խեցեղեն անոթների վրա փոքրաթիվ նշանների կոմբինացիաներով կազմված գրություններ, որոնք հաճախ ուղեկցվում են նաև համառոտ սեպագիր արձանագրություններով։ Եթե հետագայում պարզվի, որ զուգահեռ հիերոգլիֆային և սեպագիր տեքստերը համանիշ են, ապա կարելի կլինի ենթադրել, որ ուրարտական շրջանի նշանագրությունը անցումնային բնույթ ունի, որ նրանում, բացի պատկերանշանագրային և գաղափարագրային ձևերից, առկա են նաև ֆոնետիկ արժեքներ։ Սակայն, ըստ երևույթին, ուրարտական տերության սահմաններում հիերոգլիֆիկ գրությունը լիովին չվերածվեց վանկագրության, քանի որ նման անցումը հարատև, տանջալից պրոցես էր։ Դրա փոխարեն ուրարտացիները հեշտությամբ որդեգրեցին Միջագետքի վերջնականապես մշակված վանկագրային սեպագրական համակարգը՝ հարմարեցնելով այն իրենց լեզվի պահանջներին։

Գրավոր այս լեզուն էլ հարմար չէր հնդեվրոպացի հայերին. այդ պատճառով էլ ուրարտական թագավորության անկմանը հետևեց նաև սեպագրի անհետացումը, իսկ նախնադարում ծայր առած և ուրարտական ժամանակաշրջանում զարգացած ու տարածված նշանագրությունը շարունակեց հարատևել վաղ հայկական մշակույթի մեջ։ Պատճառն այն է, որ հիերոգլիֆ գրության իմաստային դրսևորումներն ավելի դյուրըմբռնելի էին տարալեզու ժողովուրդների համար, քան սեպագիրը։ Ըստ երևույթին, հիերոգլիֆիկ այս գրերն առանձնահատուկ նշանակություն ունեին վաղ հայկական հեթանոսական մշակույթի զարգացման մեջ, մասնավորապես իբրև մեհենական՝ կրոնահմայական, աստղագիտական-աստղագուշակային գրեր, գըրչության որևէ այլ ձևի բացակայության պայմաններում։ Այլապես նրանք չէին պահպանվի հազարամյակների ընթացքում և հին աշխարհից չէին հասնի մինչև միջնադար, մտնելով անգամ ուշ միջնադարյան ձեռագրերը՝ «նշանագիր», «նշանագիր այբուբենից», «այս է նշանագիր հայոց ազգի», «բացատրութիւն առաջնոց դրոց և նշանագրաց», «նշանգիր իմաստնոց» խորագրերով։ Ճիշտ է, այս խորագրերի տակ, հարյուրավոր տարիների ընթացքում որոշ գրիչների կողմից նախնադարյան-ուրարտական հին նշանների ցուցակների մեջ մուծվել են ետմեսրոպյան հնչյունագրերով կազմված սղումներ, հավելումներ, կապգրեր, ծածկագրեր, սակայն այս երկու տրամագծորեն հակառակ շերտերը հեշտությամբ կարելի է զատել իրարից, և հինը համադրել նախնադարյան, ուրարտական և վաղ հայկական նշանների գրաֆիկական ձևերին, նրանց իմաստային դրսևորումներին։

Շուրջ հիսուն նշանների այդպիսի համադրում արդեն կատարված է և ցույց է տրված, որ նախնադարյան, ուրարտական և վաղ հայկական նշանագրերը լիովին համապատասխանում են միմյանց թե ձևերով, թե սեմանտիկ նշանակությամբ։ Ստորև դրվում է այդ համադրումների լրիվ աղյուսակը՝ նշանների իմաստաբանական արժեքներով (աղ. XII)։

Ինչպես երևում է բերված աղյուսակից, նախնադարյան-ուրարտական և հայկական նշանագրերում մի առանձին ստվար խումբ են կազմում տիեզերական երևույթներն ու, մասնավորապես, կենդանակամարային (զոդիակային) պատկերացումներն արտահայտող հասկացությունները։ Դըրանցում առկա են 12 այն համաստեղությունների գաղափարագրերը, որոնցով հնում հաշվում էին տարին։ Բոլոր այս գաղափարագրերը հնարավոր չէ քննարկել ներկա աշխատության սահմաններում։ Դրանց բուն էությունը և հավաստիությունը ապացուցելու համար բավական է քննարկել «խոյ» և «երկվորյակներ» նշանագրերն իրենց սեմանտիկ կապակցությունների մեջ։

---

[1] Հ. Ս. Մարտիրոսյան, Հայաստանի նախնադարյան նշանագրերը և նրանց ուրարտա-հայկական կրկնակները, Երևան, 1973։

## «ԽՈՅ» ԿԵՆԴԱՆԱԿԱՄԱՐԻ ՊԱՏԿԵՐԸ ԵՎ ՆՇԱՆԱԳԻՐԸ

Գեղամա լեռների, Արագածի, Սյունյաց շատ ժայռապատկերներում մ.թ.ա. III հազ. սկսած խոյը հանդես է գալիս մեծ շղթայի մեջ արդեն նշանագրի ձևով։ Խոյանշանը ներկայացնում է ներքևից բաց մի կիսակլոր շրջանակ՝ առանցքային միջնորմով։ Կիսակլորները խոյի հզոր եղջյուրներն են, իսկ միջնորմը՝ մռութը կամ գլուխը։ Այս գաղափարագիրն էլ այլոց նման ստացվել է պատկերի առանձին տարրերի բացասման եղանակով (սյուն. 1)։ Բարեբախտաբար, Գեղամա լեռներում մ.թ.ա. III հազ. պահպանվել են կարևոր ժայռանկարներ, որոնք ցույց են տալիս ոչ միայն նշանագրի հաջորդական զարգացումը, այլև նրա ներքին իմաստն ու բովանդակությունը։

Այժմ գիտենք մեզ հետաքրքրող պատկերի փոփոխությունները տրամաբանական, գծանկարչական և իմաստային կապերի մեջ։ Գեղամա լեռների կոմպոզիցիոն պատկերներից մեկում (աղ. XII, նկ. 1) պահպանվել է խոյի միակ ամբողջական պատկերը՝ թռչունի, լուսին-արևի, ցլի և օձի պատկերների հետ։ Թռչնապատկերի տիպը շատ անգամ կրկնվում է բացառապես մ.թ.ա. III հազ. խեցեղենի վրա (աղ. XII, նկ. 7, 9)։ Արևը, լուսինը և ցուլը հայտնի են նույն շրջանի բազում ժայռապատկերներից։ Այստեղ հետաքրքիրն այն է, որ ցլապատկերն օժտված է օձագալար վերջավորություններով, որոնք խորհրդանշում են այդ կենդանու կապը ամպրոպ-կայծակի երևույթի հետ։ Խոյն այս կոմպոզիցիայում անմիջապես հետևում է ցլին։ Նրա գլուխը խաչաձև է, վիզը՝ երկար, եղջյուրները՝ պարուրաձև, մարմինը՝ երկար ու ճկուն, ոտին վերջավորություններն ավարտվում են գիշատչի ճանկերով, իսկ պոչը կեռ է։ Հնարավոր է, որ այս նշանավոր ժայռանկարը, ֆիգուրների տրամաբանական հաջորդությամբ աշխարհի արարչության գաղափարը բովանդակող առասպելաբանական ատաղձ ունենա։ Նման պատկեր պահպանվել է շատ ավելի ուշ շրջանի բաբելական առասպելի մեջ։ Այստեղ Մարդուկ աստվածը հաղթելով Թիամաթին, երկնակամարը զարդարում է 12 մեծ համաստեղություններով։ Սրանցից յուրաքանչյուրը երկնային դարպասը պետք է պահպաներ 2000 տարի։ Առաջին երկհազարամյակին նա պահապան կարգեց երկվորյակներին, այնուհետև՝ երկնային արջառին (ցլին) և հետո միայն խոյին։ Ապա Մարդուկը օրը բաժանեց Սին (լուսին) և Շամաշ (արև)՝ հայր և որդի աստվածների միջև։ Հայրը բացդեղնավուն թագ էր դնում և երկնակամար բարձրանում գիշերները։ Ցոթ օր դժվար էր տեսնել նրա թագը, մի շաբաթ հետո երևում էր թագի կեսը, այնուհետև՝ մյուս կեսը և ամսի վերջին՝ թագն ամբողջությամբ, իր գեղեցիկ փայլով։ Ամեն առավոտ Սինը թաքնվում էր երկնային դարպասների հետևը, և երկնակամարի արևելյան հորիզոնում երևում էր նրա աստվածային որդի Շամաշը, որը ցրում էր մութն ու ամպը, սարսափ ազդում բոլոր չար արարածների վրա։ Այնուհետև Մարդուկը լցրեց աշխարհը ծառ ու ծաղկով, կենդանիներով, իսկ նախահայր Անուն երկնքից բաց թողեց թևավորներին[2]։

Գեղամա լեռների երկրորդ ժայռապատկերը կարծես շարունակում է առաջին պատկերի և բաբելական առասպելի պատմությունը։ Նրա վերին մասում պատկերված է խոյի գլուխ՝ խաչաձև մռութով և պարուրաձև եղջյուրներով, սակայն մարմինն արդեն բացասված է։ Խոյի տակ կան ոտքերը կապած այծերի և պարանակապով հեպարդին պահող որսորդի պատկերներ (աղ. XII, 2)։ Երրորդ պատկերի մեջ խոյի գլուխը շեղանկյան տեսք ունի, իսկ եղջյուրները կիսաշրջան են կազմում։ Նրա հետ միասին պատկերված են ջրային թռչունների պատկերներ, որոնց զուգահեռներն հանդիպում են մ.թ.ա. II հազ. խեցեղենի զարդամոտիվներում (աղ. XII, նկ. 3)։ Չորրորդ պատկերի մեջ խոյի եղջյուրները կրկնաոլոր են, սակայն գլուխը բոլորովին տափակեցված է և նման ուղիղ ելուստի (աղ. XII, նկ. 4)։ Խոյագլուխը տեղադրված է արևի ու թռչունի կողքին, այծերի, եղջերուների և մի քանի նշանագրերի միջավայրում, որից նույնպես պարզ երևում է խոյի երկնային մարմին լինելու պարագան։ Ժայռանկարների բազում այլ կոմպոզիցիաներում խոյագլուխ նշանը բոլորովին պարզեցված է և հանգում է կիսակլոր եղջյուրների ու տափակ մռութի։ Գեղամա լեռներում և Արագածում այսպիսի նշանագրերով կազմված ամբողջական ժայռանկարային հորինվածքներ կան, որոնք ունեն բազմաթիվ այլ սիմվոլներ (աղ. XII, նկ. 16)։ Սրանք հիերոգլիֆ արձանագրությունների բնույթ ունեն, բայց, դժբախտաբար, առայժմ անընթեռնելի են։

Պարուրաձև եղջյուրներով գեղեցիկ, խոշոր խոյագլուխներ հանդես են գալիս նաև մ.թ.ա. III հազ. սև փայլեցված խեցեղենի վրա, իբրև պաշտամունքային զարդամոտիվներ (աղ. XII, նկ. 11)։ Դրանք պատկերվում են խոշոր չափերով, մեկուսի կամ ուրիշ զարդանախշերի հետ միասին՝ ամանի վերին կենտրոնական մասում, շեշտելով պատկերվածի կարևորությունը[3]։ Մի խումբ խեցեղեն ամարկների վրա խոյագլուխները հանգես են գալիս

---

[2] Д. Г. Редер, նշվ. աշխ., 34—38.

[3] Т. Н. Чубинишвили, Древнейшая культура в Двуречье Куры и Аракса, Тбилиси, 1965, рис. 13—24.

արևի կրկնվող սկավառակների տակ (աղ. XII, նկ. 5) կամ թռչունների հետ միասին (աղ. XII, նկ. 6—9)։ Այս պատկերները գրեթե նույնությամբ կրկնում են ժայռանկարների տարրերը։ Մի խեցու վրա էլ խոյի գլուխը նկարված է հսկա պարույրին կպած՝ նրա տակ (աղ. XII, նկ. 8)։ Խոյագլուխ վերագիր ղարղեր ունեն նաև Գառնիի նույն շրջանի խեցիները, որոնք, դժբախտաբար, մեզ են հասել միայն բեկորների ձևով և չեն պահպանել իմաստաբանական տեսակետից շատ հետաքրքիր իրենց կոմպոզիցիոն ամբողջությունը[4]։

Սակայն. դրա փոխարեն խոյագլխի քանդակը հանդես է գալիս Շենգավիթի[5] և այլ բնակավայրերի պաշտամունքային օջախների հենակների վրա (աղ. XII, նկ. 10), որով մի անգամ ևս շեշտվում է այդ կենդանու կապը կրակի, ուրեմն և լուսատուների հետ։ Հետաքրքիր է այն, որ խեցեղենի այս խոյագլուխները կրկնվում են նույն III հազ. շքասեղ-հուռութների ձևերում, որոնք լայնորեն տարածված են Վրաստանում և Հայաստանում։ Հատկանշական է, որ Հայաստանի խոյագլուխ շքասեղները հայտնաբերվել են Հառիճի վաղ բրոնզեդարյան սրբատեղիում՝ ցլերի, կանանց և պաշտամունքային այլ արձանիկների կոմպլեքսի մեջ[6]։

Այստեղ հարկ է նշել երկու հանգամանք ևս։ Նախ այն, որ մեզ ծանոթ բոլոր հուշարձաններում խոյը չի պատկերվում իբրև որսի կենդանի և ապա այն, որ մի շարք հուշարձաններում հանդես են գալիս խոյանշանների խմբեր, որոնք, ըստ երևույթին, լուսատուների ամբողջ համաստեղության արժեք ունեն (աղ. XII, նկ. 14—16)։ Վերը բերված տվյալները հաստատում են, որ խոյը խոր նախնադարում ներկայացնում էր տիեզերական պաշտամունքի առարկա։

Այդ է ապացուցում նաև Դվինի մ.թ.ա. IX—VIII դդ. մեհյանը, որի կրակարան-զոհասեղանների վրա կանգնեցված են կավե պաշտամունքային տախտակներ՝ տարերքի տարրերը խորհրդանշող պատկերներով ու զարդանախշերով։ Սրանցից առաջինի (աղ. XII, նկ. 21) վերին մասը զարդարված է երեք խոյագլուխներով, որոնք իրենց գծագրությամբ չեն տարբերվում ժայռապատկերայիններից և հաճախակի կրկնումներով արտահայտում են համաստեղության գաղափարն ու պաշտամունքը։ Խոյագլուխների տակ ալիքավոր բարձրաքանդակ գծերի կիսաշրջաններ կան, որոնք, հավանաբար, մարմնավորում են երկնակամարը՝ երկնային ծովը (հայկական «ծով ծիրանին»)։ Այնուհետև գալարվող օձ-կայծակների հետ պատկերված են երկու հիերոգլիֆիկ արևանշաններ[7]։ Տիեզերական տարրերի նման հերթականությունը հիշեցնում է կենդանակամարի այն նկարագիրը, որը ւաստղագիտական մեր մատենագրության մեջ հայտնի է տակավին VII դարից, Շիրակացու աշխատությունից։ Նրա նկարագրած կենդանակամարի մեջ խոյը հանդես է գալիս Ցլի (Արջառի) և Երկվորյակների համաստեղությունների հետ, որպես մի աստեղատուն, որ խորհրդանշում է գարունը[8]։ Խոյը համարվում էր կենդանիներից գլխավորը, որովհետև նա էր հոտի առաջնորդն ու սերնդի պարգևատուն։ Այս առումով ավելի հետաքրքիր է Դվինի երկրորդ տախտակը (աղ. XII, նկ. 22)՝ մարդկային չորս դիմաքանդակներով, երկու խոյագլուխներով, արևանշաններով ու երկնային ջրի ալիքներով, հորիզոնական ինչ-որ զարդանախշերով և ներքևի մասի՝ իրար մեջ ագուցված եռանկյունիներով, որոնք գուցե երկիրը մարմնավորող լեռներ են պատկերում։

Հասկանալի է, որ Դվինի նախնադարյան կրակարան-սրբատեղիներում Խոյ աստեղատան պաշտամունքին, ուրեմն և գարնանային պտղաբերման տոնին նվիրված կրոնական արարողություններ էին կատարվում; արարողություններ, որոնք դատելով մ.թ.ա. III հազ. պաշտամունքային օջախների խոյագլուխ հենակներից և ռելիեֆ խոյագլուխներով զարդարված կրոնածիսական անոթներից, ծայր էին առել տակավին վաղ բրոնզեդարյան ժամանակներում։

Վերջերս Ս. Հ. Դևեջյանը Լոռե բերդի դամբարանադաշտում պեղել է մ.թ.ա. VII—VI դդ. մի դամբարան, որն, անկասկած, պատկանելիս է եղել նման արարողություններ կատարող քրմի։ Դամբարանում հայտնաբերված են ոսկուց, արծաթից, սարդիոնից, բրոնզից պատրաստված ամենանրբին զարդատեսակներ։ Ավելի հետաքրքիր են թաղման արարողությունների հետ կապված մանրամասները. քրմի դին կիզված է՝ զոհաբերված երկնային ուժերին. գամբաբան են իջեցված երկու ձի, որոնք մշտապես արևին նվիրված կենդանիներ են համարվել։ Կրոնածիսական հեղման խեցեղենն էլ զարդարված է ռելիեֆ խոյագլուխներով։ Ինչպես տեսնում ենք, այստեղ առկա են գարնանային պտղաբերման տոնի բոլոր տարրերը։ Բնորոշ է այս

[4] Է. Վ. Խանզադյան, Գառնի, 4-րդ, Երևան, 1969, էջ 76—77, նկ. 73։

[5] Ս. Հ. Սարդարյան, Նախնադարյան հասարակությունը Հայաստանում, Երևան, 1967, աղ. 49։

[6] Տե՛ս Տ. Ս. Խաչատրյանի չհրատարակված նյութերը։

[7] Պատկերը հրատարակված է Կ. Դ. Ղաֆադարյանի «Դվին քաղաքի հիմնադրման և հեթանոսական մեհյանի մասին» հոդվածում, «Պատմա-բանասիրական հանդես», № 12, 1966, նկ. 5—6։

[8] Ա. Շիրակացի, Տիեզերագիտություն և տոմար, Երևան, 1910, էջ 20։

առումով այն, որ Գեղամա մի խումբ ժայռանկարներում խոյագլուխ նշանագրերը հանդես են գալիս պտղաբերության հետ կապված կոմպոզիցիաների մեջ։ Բերենք դրանցից գեթ երկուսը։ Առաջին կոմպոզիցիայի չորս խոյանշանի հետ երևում են մարդ, այծեր և ոգու մի խոշոր ֆիգուր, որը պատկերված է պպզած դիրքով, ընդգծված սեռական հատկանիշով՝ երկիրը պտղաբերելու այլաբանական գործողության մեջ (աղ. XII, նկ. 12)։ Երկրորդ դեպքում խոյագլուխը ներկայացված է դարձյալ նման մի ոգու՝ շատ խոշոր պատկերի հետ միասին, լուսնանշանի, այծերի ու մարդկանց միջավայրում (աղ. XII, նկ. 13)։ Ինչպես երևում է, այս պատկերները շեշտում են գարնանային խոյի և պտղաբերության պաշտամունքի միջև գոյություն ունեցող իմաստային փոխհարաբերությունը։ Կենդանակամարի այս տարրը հանդես է գալիս նաև ուշ բրոնզեդարյան (մ.թ.ա. II հազ. վերջ) գոտիներից մեկի վրա, որտեղ ժայռապատկերային նույն սկզբունքով, այծերի և եղջերուների միջավայրում պատկերված են խոյի հզոր եղջյուրները և մռութը՝ խեցեղենին բնորոշ ձևերով։ Նրանցից վերև փորագրված է ինքը՝ «Գառն աստծո»-ն, տոնականորեն զարդարված ձևով։ Այս պատկերը խիստ ընդգծված ու առանձնացված է իբրև գլխավորող և ղեկավարող։

Երկնակամարի և կենդանակերպ համաստեղությունների հետ կապված պատկերացումներն ու պատկերները լիովին պահպանվում են ուրարտական մշակույթի մեջ և ամբողջովին կապված են արվեստի պաշտամունքային հուշարձանների հետ։ Այստեղ էլ, նախնադարյանի նման, հստակորեն զանազանվում են «Խոյ» նշանագիրը և խոյակերպ պատկերը, թեև բոլոր պատկերները հանդես են գալիս ասորեստանյան շղարշով։ Բնորոշ է, որ Էրեբունիի (մ.թ.ա. VIII դ.) միջնաբերդի Խալդի աստծո տաճարի հիասքանչ որմնանկարները[9] պատկերում են մեծ ու փոքր, տարբեր գույների ու պայծառության աստղերով լեցուն երկնակամարը, իսկ նրանցից վեր՝ կենդանակամարային համաստեղությունների՝ սպիտակ խոյերի ու արջառների պատկերները, կենաց ծառերից ու բուսական այլ զարդամոտիվներից կազմված հորիզոնական գոտու հետ միասին։ Դրանք իրենց ամբողջությամբ կապված են գարնանային պտղաբերության գաղափարի հետ։ Հետաքրքիր է, որ պտղաբերման գաղափարն ու պաշտամունքը ներկայացնող կենաց ծառերի հորիզոնական շարքը տեղադրված է երկու նեղ շարքերի միջև, որոնց վրա պատկերված են սպիտակ (սուրբ) խոյեր ու ցլիկներ։ Այս համադրությունը իմաստով կրկնում է Գեղամա լեռների առաջին պատկերի՝ լուսատուներ, ցուլ, խոյ կոմպոզիցիոն միասնությունը և մի խումբ ժայռանկարային այլ սյուժեներ, որտեղ խոյագլուխ նշանները հանդես են գալիս կենաց ծառերի հետ միասին։ Պետք է այստեղ նկատել, որ Էրեբունիի քննարկվող որմնանկարների կենաց ծառերի դիմաց պատկերված են քրմեր, որոնք պաշտոն են մատուցում ծառերին՝ խոյի հետ կապված գարնանային տոների կազմակերպմանը։ Թեյշեբաինիի որմնանկարներում և ուրարտական կիրառական արվեստի այլ հուշարձաններում քրմերի փոխարեն հաճախ պատկերվում են երկնային թևավոր մարդակերպ էակներ։ Սրանք, ըստ երևույթին, ժայռապատկերների նույն արեգակնային աստվածներն են, որոնք պատկերվում էին հաճախ ծառը, բույսը, երկիրը բեղմնավորելու պրոցեսում, խոյանշանների միջավայրում։ Որ ուրարտական և նախաուրարտական արև-աստվածները նույն ֆունկցիան են կատարում, երևում է ուրարտական կնիքի վրա պատկերված ժայռանկարային ոճի կենաց ծառի և արեգակնային աստծո ֆիգուրներից։ Ճիշտ ժայռանկարային ձևով այդ աստվածն իջել է ծառի մոտ և իր ընդգծված առնանդամով բեղմնավորում է երկիրը։ Խալդիի տաճարում սրբազան որմնանկարների այս հորինվածքի մեջ առկա է նաև Խալդի աստծո՝ առյուծի վրա կանգնած խոշոր պատկերը։ Առյուծը ժայռապատկերներում կապված էր արեգակի հետ. արևի մարդակերպ աստվածության հայտնվելուց հետո դարձավ նրա կցորդը, իսկ Հին Արևելքում, Ուրարտուում և հայ վիպական ավանդության մեջ շարունակեց մնալ իբրև արեգակնային աստծո կենդանական կցորդ։ Ինչպես ստորև կտեսնենք, ուրարտական դիցաբանը լրիվ պահպանել է բրոնզե դարից եկած կրոնական ավանդները և փոխանցել դրանք ուրարտական էթնոսի ու մշակույթի հիմքի վրա ձևավորված հայ ժողովրդին։

Բացի սպիտակ, գեղեցիկ խոյապատկերներից, ուրարտացիք պահպանեցին նաև խոյանշանը, որն առկա է Թոփրախ-կալեի հիերոգլիֆիկ նշանների աղյուսակում և Արգիշտիխինիլի քաղաքի պեղումներից հայտնաբերված խեցեղենի վրա։

Ինչպես երևում է որոշ նյութերի նախնական քննարկումից, միջնադարյան հայերն էլ իրենց մոտ ու հեռու նախնիների նման «Խոյ» համաստեղությունը խորհրդանշելու համար օգտագործել են նույն պատկերն ու նշանը, պահպանել են այդ աստվածախմբի հետ կապված բոլոր պատկերացումներն ու լեգենդները։

Մեհենական գրականությունից միջնադարյան հայերին է անցնում խոյանշան գաղափարագիրը, որը հանդիպում է նշանագրաց մի քանի ցուցակ-

[9] К. Л. Оганесян, Арин-берд, I, Ереван, 1961, стр. 58—74.

ներում և լիովին կրկնում նույնիմաստ նախնադարյան ու ուրարտական նշանը։ Շիրակացու մոտ «Խոյ» և «Ցուլ» համաստեղությունները հանդես են գալիս իրար կից, ինչպես մեր ժայռանկարում և ուրարտական որմնանկարներում։ Խոյը խորհրդանշում է մարտ ամիսը՝ կապված ծառ ու ծաղկի, բուսականության, երկրի զարթոնքի, կենդանիների բեղմնավորման ու աճի գաղափարի հետ։

Շիրակացուց շատ ավելի ուշ աստղագիտական ու տոմարական բնույթի ձեռագրերում, ինչպես ցույց է տվել աստղագետ Բ. Թումանյանը[10], պահպանվել են կենդանակամարի համաստեղություններին վերաբերող գրավոր նյութեր, պատկերներ, նշաններ։ Հետաքրքիր է Մատենադարանի 2884 ձեռագրում պահպանված գունագեղ խոյանկարը՝ վրան նստած մարդու պատկերով, իբրև տարեսկզբի առաջին համաստեղություն։ Այս խոյը ոճական, գունային, պատկերագրական առումներով տարբերվում է ուրարտականից, իսկ իմաստաբանորեն նույնանում է ուրարտականին և ժայռանկարում պատկերվածին։ Այլ ձեռագրերում (№ 1970) խոյը նկարված է սպիտակ գառնուկի նման և րավական մոտ է ուրարտականին։ Մի շարք բոլորակներում էլ նրա պատկերը փոխարինվում է խոյանշանով, որը չի տարբերվում ոչ ուրարտականից, ոչ նախնադարյանից։ Ժողովրդական պատկերացումների մեջ խոյի հետ կապված մտայնությունն այնքան մնայուն էր, որ տեղ է գտել անգամ միջնադարում ձևավորված հայ գյուցազնավեպի մեջ և նրա հետ պահպանվել մինչև մեր օրերը։ Խնդիրն այն է, որ կոսմիկական բազում երևույթներ մարմնավորող Սասնա կիսաստված դյուցազունները էպոսում կոչվում են նաև «խոյ» ընդհանուր մակդիրով, որը կապ ունի ոչ այնքան սերնդի հարատևման, որքան կենդանակամարի «Խոյ» համաստեղության հետ։ Ըստ երևույթին Սասնա հերոսներն առնչակցվում էին տիեզերական երևույթների և պտղաբերման գաղափարի հետ, մասնավորապես «Խոյ», «Ցուլ», «Երկվորյակներ» համաստեղությունների միջոցով։

Հ. Ա. Օրբելին փայլուն կերպով բացահայտել է այդ հերոսների մի ճյուղի կապը երկրագործության հետ։ Դրանք են՝ Մհեր-Միհր-արևը, Ձենով Հովանը՝ կայծակ-որոտը, որ առնչակցվում էր երկնային շանթարձակ-նետաձիգի հետ, Վերգոն, որի մականունը կապ ունի ջրի՝ ջրաղացի անվացրանքի հետ, և, վերջապես, պառավը՝ Նանեն, մայր հողի կերպարը, որը դստեր հետ միասին սնվում էր իր աննշան արտի կորեկով և սիրային կապ ուներ Մհերի հետ (=արև-երկիր սեմանտիկ կապ)։

[10] Բ. Ե. Թումանյան, Հայ աստղագիտության պատմություն, Երևան, 1964, էջ 268—269։

Սեմանտիկ ուսումնասիրության նույն եղանակով է բացահայտվում նաև «Երկվորյակներ» համաստեղությունը և երկվորյակների պաշտամունքը, որ խորապես արտահայտված է թե՛ ժողովրդական վեպում, թե՛ ավանդություններում, թե՛ միջնադարյան երգերում։

## «ԵՐԿՎՈՐՅԱԿՆԵՐ» ԿԵՆԴԱՆԱԿԱՄԱՐԻ ՊԱՏԿԵՐԸ ԵՎ ՆՇԱՆԱԳԻՐԸ

Գեղամա և Սյունյաց լեռներում կան մի շարք ժայռանկարներ, որտեղ հանդիպում են իրար կողքի կանգնած նույնատիպ մարդկային զույգ պատկերներ, մեծ մասամբ կենդանիների ու լուսատուների երկրաչափական նշանների կամ պատկերների միջավայրում։ Շատ հաճախ դրանք պատկերվում են կանգնած, մի ձեռքը բարձրացված, մյուսը՝ կախ գցած, ոտքերն իրարից հեռու։ Սյունիքի ժայռանկարներից մեկում (նկ. 27) միաժամանակ փորագրված են մի զույգ նույնատիպ գաղափարագրեր, որոնք կրկնվում են ուրարտական նշանագրերում, հայկական նշանագրաց ցուցակներում (գլխիվայր շրջված) և ստանում ի վերջո «երկվորյակ» մեկնությունը[11]։ Սրանից հետևում է, որ բրոնզեդարյան մեր նախնիները մ. թ.ա. II—I հազ. իրենց բազմաթիվ աստվածների շարքում երկրպագել են նաև երկվորյակ աստվածներին։ Այսպիսի «երկվորյակներ» հանդիպում են նաև Սյունիքի № 56.1, 52.2, 115.2, 331.2, 303.2, 39.1, 41.1 ժայռափոր կոմպոզիցիաներում[12]։

Երկվորյակների պաշտամունքի առկայությունը հին ժողովուրդների կամ ժամանակակից հետամնաց ցեղերի մեջ նպաստում է պարզաբանել գաղափարագրերով հաստատված հայաստանյան բրոնզեդարի երկվորյակ աստվածների գլխավոր ֆունկցիան։ Երկվորյակներն ամենուրեք կապվում են բնության երևույթների, հատկապես օդերևույթի՝ անձրևի գաղափարի հետ։ Ամենուրեք նրանց համարել են անձրևաբեր, եղանակ կարգավորող էակներ։ Իրենց զարմանահրաշ ծննդի պատճառով ամենուրեք սրբացվել են և երկրպագվել։ Հնում հավատում էին, որ երկվորյակների ծննդի մեջ բացի սեփական հորից, մասնակից է լինում նաև որևէ աստվածություն կամ ոգի, որի հատկությունները փոխանցվում էին մանուկներին։ Երկվորյակներին թաղում էին գետերի, լճերի ափերին՝ մշտապես խոնավ լինելու համար, հանգամանք,

[11] Հ. Ա. Մարտիրոսյան, Հայաստանի նախնադարյան նշանագրերը, Երևան, 1973, էջ 31։

[12] Տե՛ս Գ. Կարախանյան, Պ. Սաֆյան, Սյունիքի ժայռապատկերները, Երևան, 1970։

որով ևս պայմանավորված էր նրանց կապը անձրևների, ջրի, խոնավության հետ։

Հայաստանի նախնադարյան ժայռապատկերների իմաստաբանական քննությունը ցույց է տալիս, որ նման ֆունկցիաներով են օժտված եղել նաև մ.թ.ա. II—I հազ. նրանցում պատկերված «երկվորյակները»։

Այսպես, Ուղտասարի մի կոմպոզիցիայում «Երկվորյակները» գտնվում են «երկնանշանի», այծերի, մարդու, երեք շրջանների կամ երկնային խորհրդանշանների միջավայրում (Նկ. 28)։ Այս տեսարանը ցույց է տալիս, որ մեր ժայռապատկերային «երկվորյակները» երկնային էակներ էին, ինչպես հնդկական աշվինները և հունական դիոսկուրները։

Նույնը կարելի է ասել նաև Ուղտասարի մի այլ կոմպոզիցիայի մասին, որտեղ «երկվորյակները» պատկերված են ցլի, մարդակերպ էակների և երկնային զանազան գաղափարանշանների հետ միասին (Նկ. 29)։ Ցլի առկայությունն այստեղ համոզում է, որ կոմպոզիցիան ընդհանուր առմամբ կապված է ամպրոպ-կայծակի, երկրագործության ու պտղաբերության պաշտամունքին։ Հասկանալի է, որ եթե երկվորյակները կապ ունեին անձրևի, խոնավության հետ, ապա նրանք անմիջականորեն առնչվում էին նաև ամպրոպ-կայծակի երևույթի և այն մարմնավորող մարդակերպ կամ կենդանակերպ աստվածությունների։ Ուստի, ժայռապատկերներում ցլի, այլ դեպքերում նաև այծերի առկայությունը «Երկվորյակների» միջավայրում, պարզապես անհրաժեշտություն էր։

Հայ բանահյուսության մեջ, հատկապես դյուցազնավեպում և միջնադարյան երգերում, պահպանվել են երկվորյակ աստվածների կերպարները և նրանց հետ կապված պատկերացումների ու հավատալիքների հետքերը։

Ժողովրդական վեպում, որի արմատները, ինչպես վկայում են մեր հնագիտական նյութերը, հասնում են նեոլիթ-էնեոլիթյան ժամանակները։ Երկվորյակ աստվածություններ Սանասարն ու Բաղդասարը սաղմնավորվում են ջրից և ծնվում ամպրոպ-կայծակի հատկություններ մարմնավորող ջրերի աստվածուհուց՝ Ծովինարից և իրենք էլ օժտվում նույն հատկություններով։

Ջրի հետ կապված են նաև հայ միջնադարյան երգերում հանդիպող «Սև թանաք» երկու կարիճները կամ «Թուխ մանուկները»։ Թե՛ Սանասար-Բազգասարը, թե՛ Թուխ մանուկները բոլոր երկվորյակների նման բնակվում են բարձր տեղերում, լեռնային գետակների մոտ։

Զույգ կարիճներին տրված «Սև թանաք» կամ մանուկին տրված «Թուխ» ածականները հաստատում են նրանց կապը անձրևի, ջրի գաղափարի հետ։ Սև գույնը, ազգագրական տվյալների համաձայն, խորհրդանշել է անձրևաբեր թուխ ամպը։ Շատ երկրներում, անձրև առաջացնելու համար, զոհաբերել են անձրևի գաղափարին առնչվող համապատասխան կենդանի, որը, սակայն անպայման պետք է սև գույն ունենար (այծ, ոչխար, գոմեշ, հորթ, թռչուն և այլն)։ Այս տեղերում անձրև առաջացնող կախարդը մինչև անձրևի պահը կրում էր ամբողջովին սև զգեստներ։ Սև թիկնոցով էր հանդես գալիս նաև Հունաստանում երկվորյակների հայր, փոթորիկների և քամու աստված Բորեասը։ Երկվորյակները կոչվում էին մանուկ այն պարզ պատճառով, որ Հայաստանում էլ, այլ երկրների նման, երկվորյակ աստվածներին պատկերացնում էին նորածին երեխաների տեսքով, չնայած որ իրենց սխրանքների մեջ նրանք ներկայանում էին իբրև պատանի կտրիճներ։

«Սասնա ծռերի» մի քանի պատումներում Սանասարն ու Բաղդասարը մարտնչում են ջրերի ակունքներին նստած վիշապների դեմ, ազատություն են տալիս ջրերին և անձրև բերում։ Հետաքրքիր է, որ երբ Սանասարն ու Բաղդասարը կռվի են բռնվում Պղնձե քաղաքը մթության մեջ պահող, արևը կուլ տվող վիշապի հետ և հաղթում նրան, քաղաքի վրա հորդ անձրև է տեղում։ Սա, անկասկած, երկվորյակների կողմից սև մթագնած ամպերից անձրև առաջացնելու նախնադարյան պատկերացումների արտացոլումն է, իսկ վիշապին սպանելուց՝ արև ազատելուց հետո, քաղաքի լուսավորումը՝ պարզ, արևոտ եղանակ ստեղծելու նրանց կարողությունը։

Երկվորյակների ջրաբեր հատկանիշը երևան է գալիս «Թուխ մանուկների» մասին միջնադարյան մի երգում.

«Ես տնեի երկու թուխ ու թամ կտրիճ,
Անչափ քաջ ու խիճ էրին,
Ինչուր հանին աղբյուրն ի սահրին»[13]։

«Սասնա ծռերի» մի քանի պատումներում երկվորյակ եղբայրները ևս քարի տակից են աղբյուր գտնում և նրա մեջ թաթախում նույն քարի տակ գտնվող ձիու սանձը և այնտեղից ձեռք բերում հրեղեն ձին։

Մեզ թվում է, որ ֆունկցիոնալ առումով թե՛ հերոսավեպի կիսաստված երկվորյակները, թե՛ Թուխ մանուկները մի հեռավոր կապի մեջ են Սևսարի հարուստ ժայռանկարներից մեկի հետ (Նկ. 30, աղ. 65,3)։

---

[13] Ա. Մնացականյան, «Թուխ-մանուկ» հուշարձանների մասին, «Պատմա-բանասիրական հանդես», 1976, № 2։

Այս կոմպոզիցիան փորված է 6 քառակուսի մետր մակերեսի վրա։

Այն նման է աստղային քարտեզի, որի բազմազան մարմինները փորագրված են խոր ակոսներով ու փոսիկներով, շեշտված հստակ ու գեղեցիկ գծագրությամբ, շատ խոշոր չափերով։ «Քարտեզի վրա հստակորեն զանազանվում են երկնային մարմինների չորս խումբ, որոնցից երեքը լցված են երկրաչափական պատկերներով, իսկ չորրորդը՝ երկրաչափական, մարդկային ու կենդանական ֆիգուրաներով»[14]։

14 պատկերից բաղկացած այս վերջին սքանչելի հորինվածքը «կարծես երկրաչափական սիմվոլիկ նշանների առասպելաբանական բացահայտումն ու մեկնաբանումը լինի։ Այստեղ տարբերքի մարդակերպ աստվածությունները հանգես են գալիս իրենց բնորոշ հատկանիշներով։ Արևի թևատարած աստծո մոտ գծագրված են անիվ, ձի, կիսալուսին։ Նրա դիմաց կանգնած են կայծակի աստվածությունները՝ հսկայամարմին օձ-կայծակները վեր պարզած ձեռքերի մեջ։ Կոմպոզիցիայի մնացած ողջ տարածությունը լի է օձ-կայծակների խառնիխուռն պատկերներով, որոնք կարծես պատկերում են կատաղի, անհանգիստ երկնակամարը՝ արև-կայծակի աստվածների կռվի պահին։ Այս թեման հավերժական ու ընդհանուր էր ողջ Արևելքի համար, և սրա առանձին տարրերն ու աստվածների ֆունկցիաները պահպանվել են Վահագն ու Միհր աստվածների, Սասնա հերոսների՝ Սանասարի, Բաղդասարի, Մհերի, Դավթի կերպարների մեջ»[15]։

Այստեղ շեշտված են արևի տարեկան ճանապարհների վրա ընկնող 12 աստեղատներից երկուսը՝ «Խոյը» և «Երկվորյակները», որոնցով սկսվում և ավարտվում է արևի պտույտի գարնանային ցիկլը, որը հարուստ է և՛ ամպրոպով ու կայծակով, և՛ առատ անձրևներով, բնության զարթոնքի և պտղաբերման երևույթներով։

Ինչպես տեսնում ենք, երկվորյակներն այս արեգակնալուսնային տոմարում պատկերված են շանթեր արձակելու և անձրև առաջացնելու իրենց հիմնական գործունեության մեջ։

Այս կոմպոզիցիայում ուշագրավ է նաև ձիու առկայությունը, որ գտնվում է երկվորյակներին շատ մոտ։ Ինչպես հայտնի է, մեր վեպում ձին երկվորյակ եղբայրների անբաժան կցորդն է և իր մեջ է մարմնավորում այգ աստվածների ամպրոպ-կայծակի հատկությունները։

Նժույգների վրա են հանդես գալիս նաև միջնադարյան հայ երգերի «Թուխ-կտրիճները» և կենդանակամարային երկվորյակները՝ բրոնզեդարյան և միջնադարյան պատկերներում։

Ուսումնասիրողները գտնում են, որ ձին եղել է երկվորյակների նախամարդկային զոոմորֆ կերպարը։ Այդպիսին են եղել հնդկական աշվինները և հունական դիոսկուրները։ Թե մեկը, թե մյուսը համարվել են Ինդրայի և Զևսի զավակնժույգները[16]։

Անդրադառնալով մեր նկարագրած ժայռապատկերների «երկվորյակներին», հարկ է նշել, որ հատկապես շեշտված են նրանց թևերը։ Դրանք երկար են, շարժուն և ուժեղ, իսկ ոտքերը համեմատաբար կարճ են կամ, առհասարակ, բացակայում են։ Ըստ երևույթին, իրենց հիմնական ֆունկցիաները «երկվորյակները» կատարում էին ձեռքերի միջոցով (նկ. 31)։

Ուշագրավ է, որ Բրիտանական Կոլումբիայի կվակիուտլ ցեղի պատկերացումներով՝ նորածին «երկվորյակները» ընդունակ են իրենց թաթիկների մի շարժումով առաջացնել քամի, անձրև կամ լավ եղանակ[17]։

Հայ միջնադարյան մի երգում ասվում է.

«Այդ վայրի լեռնէդ ի վայր
Ջուրն ի շինուդ մէջն անցանէր,
Թուխ մանուկ մի դուրս ելեր,
Ջձեռն ու զերեսն էր լուացեր»[18]։

Վերջին երկու տողում պետք է տեսնել ոչ թե սոսկ լվացվելու առօրյա սովորությունը, այլ «Թուխ-մանուկի» անձրև առաջացնելու ծիսական արարողությունը։

Ժայռապատկերներում «երկվորյակները» հաճախ ուղեկցվում են լուսատուների երկրաչափական խորհրդանիշներով։ Դա բացատրվում է նրանով, որ «երկվորյակներն» իրենք լուսատուներ էին, համաստեղություններ և շրջապատված էին այլ լուսատուներով կամ համաստեղություններով։ Այդ նշաններն էլ հենց շեշտում են աստղային ամբողջական համակարգեր, իսկ այլ ժայռապատկերներում նրանք երևում են աստղի կամ աստղանշանի ուղեկցությամբ։

Այսպես, Ուղտասարի ժայռանկարներից մեկում «երկվորյակները» իրենց բնորոշ կեցված-

---

14 Հ. Ա. Մարտիրոսյան, Նախնադարյան Հայաստանի լուսնաարեգակնային տոմարը, «Լրաբեր» (հաս. գիտ.), 1973, № 7։

15 Հ. Ա. Մարտիրոսյան, Հ. Իսրայելյան, Գեղամա լեռների ժայռապատկերները, Երևան, 1971, էջ 18, նկ. 145։

16 Л. Я. Штернберг, Первобытная религия в свете этнографии, Л., 1936, стр. 79—80.

17 Фрезер, Золотая ветвь, М.-Л., 1931, стр. 84.

18 Ա. Մնացականյան, «Թուխ-մանուկ» հուշարձանների մասին, «Պատմա-բանասիրական հանդես», 1976, № 2, էջ 201։

*քով իրարից բաժանված են խաչվող թեք գծերով սանղծած աստղանշանով (նկ. 32)։ Մեկ ուրիշ կոմպոզիցիայում «երկվորյակները» պատկերված են ավելի սխեմատիկ ձևով, ձեռքերի ծանոթ շարժումով և իրանով։ Նրանք գտնվում են կենդանիների և մարդկանց միջավայրում։ «Երկվորյակներից» մեկի գլխավերևում լուսնաձև պատկեր կա։ Դրա նշանակությունն այն է, որ «երկվորյակները» իբրև անձրևաբեր լակներ առնչվում են նաև լուսնի, իսկ վերջինս էլ՝ բնական տեղումների հետ (նկ. 33)։*

*Քանի որ «երկվորյակները» լուսատուներ են, որոշ ժայռանկարներում նրանց գլուխների մոտ պատկերված են լուսաատու-շրջանակների պսակներ։ Օրինակ՝ մի կոմպոզիցիայում «երկվորյակները» պատկերված են երկու այծի հետ միասին։ Երկուսի գլխի շուրջն էլ առկա են լուսատու շրջանակներ (նկ. 34)։*

*Վերջինիս նման է նաև նկ. 35 կոմպոզիցիան, որտեղ դարձյալ «երկվորյակների» հետ երկու այծ է պատկերված, սակայն, ի տարբերություն նախորդի, մի շրջանակը գտնվում է «երկվորյակներից» մեկի ուսի մոտ, իսկ մյուսի գլխի ու ոտքի մոտ կան մեկական շրջանակներ։ Անկասկած, լուսատուների դիրքի փոփոխությունն ունեցել է կարևոր նշանակություն նախնադարյան աստղագուշակների համար։ Դրանց դիրքի և շարժման համապատասխան արվում էին զանազան գուշակություններ՝ կապված եղանակի փոփոխման, անձրևների սկզբի և ավարտի, ցանքսերի, մահվան, մարդկանց և կենդանիների ծննդաբերության, գիշերով ճանապարհների ուղղությունը ճիշտ իմանալու, արևի, լուսնի խավարումների և այլ երևույթների հետ։*

*Կարծում ենք «երկվորյակներ» են պատկերում նաև Սյունիքի մի կոմպոզիցիայում հորիզոնաձև տարածած թևերով, իրանները օղակով ավարտվող մարդկային զույգ ֆիգուրները, որոնց արանքում առկա է այծ, իրանի մոտ իրար կպած երկու խաչերով (նկ. 36)։ Այծը խորհրդանշում է ամպրոպ-կայծակը, իսկ զույգ խաչերը համընկնում են Շիրակացու այն տեղեկությանը, որ երկվորյակներն ունեն երկու աստղ[19]։ Նրանց ոտքերին փոխարինող շրջանակները դարձյալ խոսում են նրանց լուսատու լինելու մասին։*

*Գեղամա լեռների և Սյունիքի ժայռապատկերներում առկա «երկվորյակներն» իրենց ոճական տարբերությամբ հանդերձ ունեն այն ընդհանրությունը, որ պատկերվում են կա՛մ իբրև լուսատու, կա՛մ լուսատու ուղեկիցներով։ Մյուս կողմից, նրանք մշտապես գտնվում են ջրի գաղափարը խորհրդանշող կենդանիների միջավայրում և, վերջապես, բոլոր դեպքերում էլ կապվում են երկրագործության և պտղաբերության գաղափարին։*

*Այս նույն գաղափարն է արտահայտված նաև մ.թ.ա. II հազ. վերջի և I հազ. սկզբների մի քանի բրոնզե գոտիների պատկերներում։ Դրանցից հատկապես ուշագրավ են Սամթավրոյի № 276 և 211 դամբարաններից պեղված գոտիները[20]։*

*Դրանք ունեն պարույրներից, ռոմբերից հյուսված և զիգզագ գծերից կազմված զարդեր, մարդկային և կենդանական պատկերների զույգ շարքեր։*

*Առաջին գոտու վրա պատկերված են ձուկ, եղջերուներ, ձի, առյուծ, ջրասամույր (նկ. 37), խոզ, թռչուն, այծ։*

*Մարդկային կերպարներ են՝ «երկվորյակները» և աղեղնավորը։ Բոլոր պատկերները ուղեկցվում են լուսատուների երկրաչափական խորհրդանիշներով, որոնք ցույց են տալիս նրանց աստղայիներկնային էությունը։*

*Գոտու վրա իրար պոզահարող եղջերուները իրենց վրա կրում են «փայլակ» գաղափարանշանը, որ խորհրդանշում է ամպրոպ-կայծակը։ Եղջերուների միջև պատկերված է ձուկ, որն արտահայտում է կայծակից ու ամպրոպից հետո տեղացող անձրևի գաղափարը։ Շիրակացին հենց այդպես էլ գրում է ձկան մասին. «Ձուկն՝ աստեղք հինգ, մին յորդ անձրևաց նշանակիչ...»։ Հնդկական ամպրոպ-կայծակի աստվածներին ուղեկցող երկվորյակների նման՝ մեր զույգերն էլ ամենուրեք հետևում են կամ կայծակնաբեր եղջերուներին, կամ աղեղնավորին, որի մասին Շիրակացին գրում է. «Աղեղնավորը, յորում են աստեղք վեց, եթէ տեսանիցես զնոսա ի թրթռմանց, գիտասջիր, թէ առաքին ի նոցանէ աստեղք հանգոյնք, ծովք խռովին, և ամպքն զուարճանան»[21]։ Շիրակացու մի այլ վկայությամբ «Շնաստղը, Խողովակը, Վաքըն, Ծիծառն, սայլն, միւս սայլն, մարղոնն, կարճընգեաց, ճոկանոտնն, ջրբաշխն, խոզն, Անդիակն, Արկաւղն։ Սրանք աստեղք են, որ ցուցանեն զանձրևաց սաստկութիւն»[22]։ Սրանցից մեր գոտու վրա առկա են արջը, թռչունը, խոզը, ձուկը և կարճոտնը (գավազան)։ Ջրասամույրները նույն-*

---

[19] Ա. Աբրահամյան. *Շիրակացու մատենագրությունը, էջ 331։*

[20] *Տե՛ս Ն. Ուռուշաձե, Բրոնզե գոտիներ Սամթավրոյից, «Սաքճոթա խելովնեբա» («Սովետական արվեստ»,) Թբիլիսի, 1969, № 12 (վրացերեն)։*

[21] Ա. Աբրահամյան, *Շիրակացու մատենագրությունը, էջ 331—332։*

[22] *Նույն տեղում։*

պես ջրային կենդանիներ են և, անկասկած, նույն գաղափարն են արտահայտում։

«Երկվորյակների» ձեռքին գտնվող կուժն ու գավաթը, որոնք, անկասկած, լցված են սրբազան գինով, հավանաբար, միևնույն ժամանակ հանդիսանում են կենդանակամարի ջրհոսի խորհրդանիշը։ Ձիերն այս գոտիների վրա հանդիսանում են իբրև «երկվորյակների» հատկանիշը, կցորդը, ինչպես Քուռկիկ Ջալալին «Սասնա ծռերում» կամ «Սև թանաք» կտրիճների ձիերը՝ միջնադարյան հայ երգերում։

Այս պատկերները խորհրդանշելով անձրևը, միաժամանակ արտահայտում են պտղաբերության գաղափարը։ Դա հաստատվում է նաև գոտու վրա ներկայացված այծեղջյուրի պատկերով, որի ոտքերից կախված են երեքական շրջանակ։ Այս կենդանին ամենայն հավանականությամբ խորհրդանշել է ծննդյան և մահվան գաղափարը։ Այս հետևությունը հիմնվում է Շիրակացու հետևյալ վկայության վրա. «Այծեղջիւրն, յորում են աստեղք երեք, մի քանի զմի ծիգ, եթէ տեսանիցես զնոսա զկարճն և զերկայնն զուգեալ առ իրեարս՝ գիտես թէ քեզ գնալ պիտի յերկրէս, և բազում այլ սիրելեաց ընդ քեզ, ապա թե այլ լուսով տեսանէս՝ գիտես թէ բազում ծնունդք ի տան քո լինին»[23]։

Ամենայն հավանականությամբ, այծեղջյուրը կրել է մեռնող և հարություն առնող աստվածության հատկանիշներ։

Անձրևի, հետևաբար և պտղաբերության հետ կապված լինելով, երկվորյակները նախնադարյան պատկերացումներով համարվել են նաև լիության, առատության հարուցիչներ։ Շիրակացին այդ առիթով գրում է. «Երկաւորին յորում են աստեղք երկու, եթէ տեսանիցես զնոսա ի լուծ ուղղորդ, գիտես թէ մեծամեծաց կորուստ գայ և տղայոց յախտից մահ, բայց տարին լի և պտղաբեր լինի»։ Այս նույն գաղափարն են մարմնավորում և Թուխ մանուկները.

«Մեռնիմ քըզի սըբ Թուխ-մանուկ,
Ծուղ-ծուղ կորեկ թորկես կայնուկ...»[24]։

Սամթավրոյի երկրորդ գոտու վրա (Նկ. 38) պատկերված են գրեթե նույն կենդանիները, ավելացրած նաև ցուլը (արջառը), որի կերպարը նախնադարյան մտայնության մեջ կապված էր թե ամպրոպ-կայծակի, թե ջրի, թե պտղաբերության հետ։ Առկա են նաև ֆանտաստիկ տեսքով երկու կենդանի, որոնց գլուխները արջի են նման (թերևս Մեծ ու Փոքր արջերի համաստեղությունները)։ «Երկվորյակները» այստեղ ևս հետևում են աղեղնավորին, մի դեպքում էլ հետապնդում են եղջերուներին։ Այստեղ դարձյալ նրանց ֆունկցիան նույնն է՝ անձրև առաջացնելը։ Երկրորդ գոտին իր սյուժեով շատ նման է առաջինին, հետևաբար նույնպես արտահայտում է պտղաբերություն, առատություն հարուցելու գաղափարը։

Հավանաբար, այս գոտիները նախնադարյան քրմերը կամ կախարդները կրել են անձրև բերելու ծիսական արարողությունների ժամանակ։

«Երկվորյակները» քանի որ համարվում էին անձրևաբեր, եղանակ կարգավորող էակներ, կենդանակամարում համալրում էին գարնան մայիս ամիսը՝ առատ անձրևներով հողը սնելու ժամանակաշրջանը։

Հռոմեական և հնդկական երկվորյակների զոոմորֆ կերպարներից հայտնի են նաև գայլերը։

Ըստ ամենայնի դրանք եղել են երկվորյակների խորհրդանիշը նաև Հայկական լեռնաշխարհում։ Սամթավրոյի № 281 դամբարանից գտնված բրոնզե գոտու վրա (Նկ. 39) ներկայացված են նետ ու աղեղով զինված «երկվորյակները» եղջերուներին և այծերին նետահարելիս։ Գոտու վրա քանիցս հանդես եկող գայլերից բացի, պատկերված են նույնպես կրկնվող ձուկ-անձրևի ֆիգուրը, թռչուն, օձ և լոտոսի երկրաչափական պատկերներ։ Բոլոր պատկերների ուշադրությունն ուղղված է մի փոքր շրջանակի վրա, որը գուցե և անձրևաբեր ուժերի կողմից ծածկվող արևն է, որով, անկասկած, պայմանավորված էր անձրևի առաջացումը։

Երկվորյակ-գայլերի պատկեր են ներկայացված նաև Լոռի-բերդի X—VIII դդ. դամբարաններից Ս. Դևեջյանի հայտնաբերած հախճապակյա տուփի կողերի վրա։ Գայլերից մեկը տեղավորված է յուրաքանչյուր կողի վերին մասում, մյուսը՝ ստորին։ Նրանց միջև նկարված են պտղաբերության, արգասավորման գաղափարն արտահայտող երկրաչափական պատկերներ։ Հայտնի է, որ արկղիկը համարվել է երկվորյակների ատրիբուտը և խորհրդանշել է հարստություն և առատություն[25]։

Հայկական լեռնաշխարհում «երկվորյակների» պաշտամունքը շարունակվել է նաև հայ հեթանոսական ժամանակներում։ Այդ են վկայում «Թուխ-մանուկ» հուշարձանները, որոնք ըստ ամենայնի սկզբնապես եղել են երկվորյակների գերեզմաններ։ Հայաստանում դրանք գտնվում են ջրերի՝ աղբյուրների, առվակների, ջրհորների մոտ,

---

23 Նույն տեղում։

24 Ա. Մնացականյան, «Թուխ-մանուկ» հուշարձանների մասին, էջ 199։

25 Л. Я. Штернберг, Культ близнецов в Китае и индийские влияния, Сборник Музея антропологии и этнографии, VI, Л., 1927, стр. 3—4.

մշտապես խոնավ լինելու և դրանով իսկ անձրևներն ապահովելու նպատակով։ Ժամանակի ընթացքում, քրիստոնեության ազդեցությամբ, երկվորյակ Թուխ-մանուկները աստիճանաբար մոռացության են տրվել, և նրանց ֆունկցիաները վերագրվել են այդ հուշարձանների մոտ գտնվող ջրերին ու բույսերին։ Իսկ «Թուխ-մանուկ» անունը պահպանվել է, կորցնելով իր «երկվորյակ» աստվածություն լինելու իմաստը և ձեռք է բերել սրբի իմաստ։ Ժողովուրդը ժամանակի ընթացքում, ինչպես իրավացիորեն նշվել է ուսումնասիրողների կողմից, ինքն ստեղծել է նորանոր «Թուխ-մանուկ» հուշարձաններ՝ փոքրիկ մատուռներ, իբրև սրբատեղիներ, ուխտատեղիներ[26]։

---

[26] Ա. Մնացականյան, նշվ. հոդվածը։

# НАСКАЛЬНЫЕ ИЗОБРАЖЕНИЯ ГЕГАМСКИХ ГОР

Наскальные изображения Гегамских гор, как и все другие аналогичные памятники Армении, были вызваны к жизни бурными процессами неолитической революции, последующим становлением и развитием производящего хозяйства, оформлением соответствующей системы раннескотоводческого земледельческого мировоззрения. В качестве закономерного продукта своего времени (V—I тыс. до н. э.), в своей кажущейся простоте и примитивности, сюжетно-композиционном построении и повествовательном характере они сохраняют и доносят до нас весьма разнообразную и обширную информацию о жизнедеятельности наших отдаленных предков в сферах развития экономики, социальных отношений, раннеземледельческой скотоводческой идеологии, об оформлении первозданных легенд и мифов. Помимо всего этого, они достаточно адекватно отображают пути познания и использования первобытным скотоводом и земледельцем важнейших явлений и закономерностей природы, составлявших основу основ биологического и социального развития общества. В качестве таковых они способствуют установлению истинного уровня развития определенных стадий культурного прогресса.

Наиболее важным производным искусства наскального рисунка в Армении явилось оформление символических знаков, иероглифов идеограмм, вылившихся в эпоху раннего железа и Урарту в систему слогового, по-видимому, фонетического письма и сыгравшего определенную роль в раннеармянской действительности вплоть до появления Месроповского алфавитного письма.

Вышеизложенными обстоятельствами обусловлен все углубляющийся научный интерес к искусству наскальных изображений Армении—первоклассных памятников в масштабе первобытности всей Передней Азии.

Предварительные результаты исследования этих памятников были опубликованы в 1972 г. (Археологические памятники Армении, № 6, «Наскальные изображения Гегамских гор», вып. I. Ереван, 1972) и содержали результаты работ 1966—1968 гг. Настоящее издание посвящено публикации и более углубленному осмыслению богатейших рисунков. вновь выявленных, скопированных и тщательно исследованных сотрудниками экспедиции[1] в период с 1969 по 1971 гг. в окрестностях вулканических конусов Гегамских гор—Малого и Большого Пайтасара, Зиарата, Шейхи Чингила и др. (рис. 1—2).

В отдельных главах публикации рассматриваются вопросы техники выполнения рисунков и стилей, вопросы классификации, хронологии, сюжетного содержания, адекватности их в качестве источников истории, вопросы, связанные с космическими—идеологическими представлениями, древнеземледельческим календарем и письменами.

## ГЛАВА ПЕРВАЯ

## ТЕХНИКА ВЫПОЛНЕНИЯ НАСКАЛЬНЫХ ИЗОБРАЖЕНИЙ И ОСНОВНЫЕ СТИЛИСТИЧЕСКИЕ ИХ ОСОБЕННОСТИ

На путях своего четырехтысячелетнего существования искусство наскальных изображений в вечном, эволюционном движении и изменении отображало развитие многообразных технико-стилистических приемов, индивидуальные навыки, умение, мастерство и талант первобытных рисовальщиков, образуя единое и, в то же самое время, взаимно переплетенное, бесконечно разнообразное явление, олицетворяющее, в конечном счете, тончайшие особенности исторического развития на протяжении десятков веков.

[1] В работе экспедиции 1969—1971 гг. принимали участие археологи А. А. Мартиросян (нач. экспедиции), Р. М. Торосян (зам. нач.), А. Р. Исраелян (научн. сотр.), палеозоолог С. К. Межлумян и художник Аветик Асатрян (Авет Асатур).



6—1050

Разобраться в этом вечно движущемся и самоизменяющемся феномене можно лишь путем разбора хотя бы самых основных и общих технических, стилистических, хронологических их особенностей. Только в этом случае они могут стать подлинно историческими источниками.

Наиболее существенной особенностью наскальных изображений рассматриваемого позднепервобытного этапа является исчезновение реалистического, натуралистического, порою гениального рисунка палеолита, замена его изображениями условно-геометрического стиля, появление композиционного рисунка с сюжетным подчинением образов, повествовательный их характер. Во всех этих изображениях центральная роль отведена человеку с его многогранной деятельностью. Главная тема этого искусства—человек.

В соответствии с этим наскальные изображения Гегамских гор выполнены с помощью одиночных, групповых фигур различных животных, людей и богов, с предметами их вооружения, снаряжения, ряжения и т. д и т. п. «Полотном» для рисунков служат сравнительно гладкие, блестящие поверхности разной величины и форм (от 0,5 до 6 кв. м. площадью) необработанных глыб базальта.

Наиболее древняя группа (V—IV тыс. до н. э.) этих изображений обнаружена у подножия Большого Пайтасара. В этой группе представлены чаще всего одиночные, очень крупные фигуры безоаровых козлов и малочисленные, немногофигурные примитивные композиции, выполненные широкими, грубыми бороздками-желобками, которые высекались на поверхности камня нанесением бесконечного числа методичных ударов каменными ручными топорами, образующих множество ямочек и точек, сливающихся в цельные бороздки или желобки, которыми образовались нынешние контуры изображаемой фигуры. Глубина этих контуров вполне обеспечивала сохранность рисунка и создавала весьма характерный световой эффект между темным, блестящим фоном поверхности камня и более светлым, матовым контуром изображения. Эта техника окончательной обработки фигур, условно названная «ударно-точечной», продолжала применяться на протяжении тысячелетий. В работе на конкретных примерах (рис. 3—7) показано усовершенствование ударно-точечной техники в III—II тыс. до н. э. и соответствующие изменения в «инструментарии» древних рисовальщиков.

Однако на основе применения одного лишь указанного технического способа, пусть даже совершенного и виртуозного, невозможно было бы достичь уровня композиционного построения, динамизма, экспрессии большей выразительности, а также многих других тонкостей, наблюдаемых при изучении петроглифов.

К счастью, в ходе изучения материала удалось обнаружить целый ряд недоконченных ударно-точечной обработкой изображений, в которых зафиксированы гравировки—эскизы фигур, выполненные остроребёрными обсидиановыми или металлическими ножами. Выяснилось, что эти контурно-линейные рисунки-эскизы предшествовали ударно-точечной обработке, будучи в основе и композиционного построения, и стилистических особенностей изображаемых фигур. Такие петроглифы, относящиеся к III—II—I тыс. до н. э., были обнаружены в скоплениях рисунков у вершин Малого, Большого Пайтасара (рис. 7—9) и Зиарата. Одно из таких изображений (рис. II) Малого Пайтасара (конец II и начало I тыс. до н. э.) представляет собой сцену охоты, в которой охотник преследует хищника. Обе фигуры выполнены ударно-точечной техникой. Охотник, ряженый и в маске, вооружен широким луком и стрелой. Ударно-точечной техникой не обработаны охотничьи лук и стрела, наконечник которой имеет треугольную форму, очень характерную для металлических наконечников Х в. до н. э. Не довершены также когти хищника, обозначенные лишь прямыми, острыми линиями. Присутствующая в сцене фигура второго охотника обработана ударно-точечной техникой лишь по пояс, лук его также очерчен. За спиной второго охотника тоже очерчены луки. Таким образом, подавляющее большинство наскальных изображений Гегамских гор (и всей Армении), начиная с V тыс. до н. э. вплоть до начала I тыс., было выполнено совместным применением линейно-эскизной и ударно-точечной техники.

Применение чисто линейной техники, более характерное в эпоху раннего железа, не стало, однако, распространенным. К юго-западу от вершины Зиарата зафиксировано более двадцати изображений, выполненных обсидиановым резцом тонкими, едва заметными линиями, иногда напоминающими шахматные доски, иногда план стойбищ (рис. 13—14). Вместе с этими геометрическими фигурами, на том же Зиарате, встречаются интересные сцены, выполненные той же техникой. В одной из них еле заметно очерчены пешие и конные люди, крайне стилизованные (рис. 15), носящие условно-пиктографический характер фигуры животных и большое древо жизни. Применение линейно-эскизной и ударно-точечной техники надолго распространилось по всему Армянскому нагорью. По-видимому, эта техника повсеместно применялась в ранне-историческое время. Однако четко выявить и доказать это явление удается не всегда, даже на хорошо изученных памятниках.

Мы представили технику выполнения наскальных изображений в самых общих и основных чертах. Но кажущаяся ее простота таит в себе множество тонкостей, требует не-

